# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՀՈԿՏԵՄԲԵՐ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





**Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ**

**ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ) ՆԱԽԱԳԾԻ ԵՎ ՆՐԱ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ զեկուցումը**

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում**

1977 թվականի հոկտեմբերի 4-ին

*Հարգելի ընկեր դեպուտատնե՛ր։*

*Գերագույն սովետի այժմյան նստաշրջանի առջև կանգնած է բառիս լիակատար իմաստով պատմական խնդիր՝ ընդունել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության նոր Սահմանադրությունը։*

*Մենք նոր Սահմանադրությունն ընդունում ենք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի նախօրեին։ Դա երկրի կյանքի երկու խոշորագույն իրադարձությունների ժամանակային պարզ զուգադիպություն չէ։ Դրանց միջև եղած կապը շատ ավելի խորն է։ Նոր Սահմանադրությունը, կարելի է ասել, սովետական պետության ամբողջ վաթսունամյա զարգացման խտացված արդյունքն է։ Նա վառ կերպով վկայում է, որ Հոկտեմբերի հռչակած գաղափարները, Լենինի պատգամները հաջողությամբ կենսագործվում են։* (Ծափահարություններ)։

*Գերագույն սովետի քննարկմանը ներկայացված Սահմանադրության նախագիծը մարդկանց մի մեծ կոլեկտիվի բազմամյա լարված աշխատանքի արգասիքն է։ ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից ստեղծված՝ սահմանադրական հանձնաժողովի կազմի մեջ մտել էին կուսակցական և պետական փորձված աշխատողներ, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության, մեր երկրի բազմաթիվ ազգերի ներկայացուցիչներ։ Նախագծի մշակմանը ներգրավվում էին աչքի ընկնող գիտնականներ, մասնագետներ, պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների աշխատողներ։ Նախագիծը երկու անգամ քննարկվել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումներում։*

*Կարծում եմ, մենք իրավունք ունենք համարելու, որ Սահմանադրության նախապատրաստման, քննարկման և ընդունման կապակցությամբ մեր առջև ծագած կարևոր խնդիրները լուծվել են ամենաբարեխիղճ կերպով և սոցիալիստական դեմոկրատիայի բոլոր սկզբունքների ամենահետևողական պահպանմամբ։*

# 1.

Ամբողջ նախապատրաստական աշխատանքի որակի վճռական ստուգումը եղավ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը: Այն շարունակվեց գրեթե չորս ամիս և բառիս բուն իմաստով համաժողովրդական էր: Քննարկմանը ընդամենը մասնակցեց ավելի քան հարյուր քառասուն միլիոն մարդ, այսինքն՝ մեր երկրի չափահաս բնակչության ավելի քան չորս հինգերորդը: Ժողովրդական ակտիվության այդպիսի թափ մեր երկիրը դեռ չի իմացել:

Համաժողովրդական քննարկման գլխավոր քաղաքական արդյունքն այն է, որ սովետական մարդիկ ասացին՝ այո՛, սա այն հիմնական օրենքն է, որը մենք սպասում էինք: (Ծափահարություններ): Նա ճիշտ է արտացոլում մեր նվաճումները, մեր իղձերն ու հույսերը, ճիշտ է որոշում մեր իրավունքներն ու պարտականությունները: Վավերագրելով նվաճվածը, նա բացում է կոմունիստական շինարարության հետագա ծավալման հեռանկար:

Նախագծի քննարկմանը նվիրվել են աշխատավորների մոտավորապես մեկուկես միլիոն ժողովներ ձեռնարկություններում և կոլտնտեսություններում, զորամասերում և բնակության վայրում: Այն քննարկվել է արհմիությունների, կոմերիտմիության, կոոպերատիվ միավորումների, ստեղծագործական կազմակերպությունների պլենումներում, ակտիվներում և ժողովներում: Նրա քննարկմանը մասնակցում էր մեր ամբողջ կուսակցությունը: Տեղի են ունեցել ավելի քան չորս հարյուր հիսուն հազար դռնբաց կուսակցական ժողովներ, որտեղ ելույթ է ունեցել ավելի քան երեք միլիոն մարդ: Նախագիծը քննարկվել է բոլոր սովետների կողմից՝ սկսած գյուղական սովետներից և վերջացրած միութենական հանրապետությունների գերագույն սովետներով, այսինքն՝ մեր ամբողջ ժողովուրդը ներկայացնող ավելի քան երկու միլիոն դեպուտատների կողմից: Այդ համաժողովներից յուրաքանչյուրում հավանություն է տրվել Սահմանադրության նախագծին:

Վերջապես, անվերջանալի հոսանքով գալիս էին սովետական մարդկանց նամակները:

Հայրենասիրություն, մեր կուսակցության և սովետական իշխանության քաղաքականության ջերմ հավանություն, մտահորիզոնի լայնություն և դատողությունների հասունություն, բարձր պահանջկոտություն իր և ընկերների նկատմամբ՝ ահա թե ինչն է բնորոշ այդ նամակների հսկայական մեծամասնության համար: Դրանց հեղինակները, ինչպես որ ժողովներում քննարկումների մասնակիցները՝ ամենատարբեր պրոֆեսիաների և տարիքի, տարբեր ազգերի և ազգությունների մարդիկ, կոմունիստներ և անկուսակցականներ, հոգացողությամբ, մանրակրկիտ կերպով վերլուծում են Սահմանադրության նախագիծը, արտահայտում իրենց առաջարկությունները տեքստի բարելավման մասին, միաժամանակ արտահայտում մեր հասարակության կյանքի տարբեր կողմերին վերաբերող այլ նկատառումներ:

Խորհում ես այդպիսի ելույթների ու նամակների մասին և հանգում այսպիսի հետևության՝ չէ՞ որ դրանցում արտացոլված է սոցիալիզմի հսկայական հաղթանակը՝ նոր մարդը, որը իրեն չի բաժանում պետությունից, պետական, համաժողովրդական շահերը համարում իր հարազատ գործը: (Ծափահարություններ):

Վերհիշենք, թե ինչպես Հոկտեմբերի հաղթանակից քիչ անց Վ. Ի. Լենինը նշում էր, որ շահագործողական հասարակարգը մեզ ժառանգություն է թողնում մասսաների սուր անվստահությունը դեպի այն ամենը, ինչ պետական է: «Դրա հաղթահարումը,— ասել է Վլադիմիր Իլյիչը,— շատ դժվարին խնդիր է, որը ի վիճակի է անելու միայն սովետական իշխանությունը, բայց որը նրանից ևս պահանջում է երկարատև ժամանակ և հսկայական տոկունություն»: (Երկեր, հ. 27, էջ 302):

Եվ սովետական իշխանությունը լուծեց այդ խնդիրը: Դրա ամենավառ հաստատումն է աշխատավորների հսկայական ակտիվությունը նոր Սահմա-



նադրության նախագծի քննարկման ժամանակ: Մենք վստահությամբ ու հպարտությամբ կարող ենք ասել՝ հենց ամբողջ սովետական ժողովուրդը դարձավ իր պետության հիմնական օրենքի իսկական կերտողը: (Երկարատև ծափահարություններ):

Թույլ տվեք, ընկերներ, ՍՍՀՄ Գերագույն սովետի անունից ի սրտե շնորհակալություն հայտնել Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման յուրաքանչյուր մասնակցի և նրանց բոլորին նոր հաջողություններ մաղթել աշխատանքում ի բարօրություն մեր մեծ հայրենիքի, ցանկանալ հետագա է՛լ ավելի ակտիվ մասնակցություն մեր սոցիալիստական պետության գործերին: (Երկարատև ծափահարություններ):

Սահմանադրական հանձնաժողովը զեկուցում է, որ համաժողովրդական քննարկումը հնարավորություն տվեց նկատելիորեն բարելավել Սահմանադրության նախագիծը, նրա մեջ մտցնել մի շարք օգտակար լրացումներ, ճշգրտումներ և ուղղումներ:

Ընդամենը ստացվել է առանձին հոդվածների ուղղումների վերաբերյալ մոտավորապես չորս հարյուր հազար առաջարկություն, որոնք նպատակ ունեն ճշգրտել, բարելավել և լրացնել նախագծի ձևակերպումները: Ուշադիր ուսումնասիրելով այդ ուղղումները, որոնցից շատերը, բնականաբար, կրկնվում են, սահմանադրական հանձնաժողովը հանձնարարում է փոփոխություններ մտցնել նախագծի 110 հոդվածների մեջ և ավելացնել մի նոր հոդված: Հանձնաժողովի հանձնարարականները բոլոր դեպուտատներն ունեն: Իմ խնդիրն է հիմնավորել հանձնաժողովի առաջարկությունները առավել էական հարցերի վերաբերյալ:

Նախ և առաջ նշեմ, որ ստացված առաջարկությունների առավել մեծ թիվը վերաբերում է այնպիսի արմատական հարցի, ինչպիսին է աշխատանքի դերը սոցիալիզմի օրոք: Ընկերներն առաջարկում են Սահմանադրության մեջ ավելի վառ կերպով ցուցադրել մեր հասարակության, որպես աշխատավորների հասարակության, բնույթը:

Կարծում եմ, որ այդ առաջարկությունը խոր իմաստ ունի: Սովետական հասարակությունը բաղկացած է միայն աշխատավոր դասակարգերից և սոցիալական խմբերից: Հաշվի առնելով այդ, առաջարկվում է Սահմանադրության առաջին հոդվածի մեջ գրել, որ սովետական համաժողովրդական պետությունն արտահայտում է երկրի բանվորների, գյուղացիների և մտավորականության, բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների կամքն ու շահերը: Միաժամանակ հարկ կլիներ, ըստ երևույթին, ընդունել ևս մի առաջարկություն՝ Սահմանադրության մեջ որոշել ոչ միայն ՍՍՀՄ քաղաքական հիմքը, ոչ միայն մեր տնտեսական սիստեմի հիմքը, այլև մեր պետության սոցիալական հիմքը: Այժմ մեզանում այդ հիմքը բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անխախտ դաշինքն է, և այս մասին հարկավոր է պարզորոշ ասել: (Ծափահարություններ):

Ընկերներն առաջարկել են նաև ճշգրտել ձևակերպումը ՍՍՀՄ տնտեսական սիստեմի հիմքի վերաբերյալ հոդվածում, ավելի պարզ ընդգծել, որ այդ հիմքը պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն է: Դա ճիշտ է: Չէ՞ որ արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության հենց այդ երկու ձևերն են որոշում մեր ժողովրդական տնտեսության բնույթը և սովետական հասարակության բաժանումը երկու բարեկամ դասակարգերի՝ բանվորների և գյուղացիների: Այսպիսի ճշգրտում նախատեսված է:

Մի քանի հազար առաջարկություն է ստացվել աշխատավորական կոլեկտիվների դերի ու նշանակության վերաբերյալ հոդվածի առթիվ: Դրանց հեղինակները ցանկություն են հայտնում Սահմանադրության մեջ ավելի լայնորեն արտացոլել աշխատավորական կոլեկտիվի խնդիրներն ու իրավունքները հատկապես այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են արտադրության և սոցիալական զարգացման պլանավորումը, կադրերի պատրաստումն ու տեղաբաշխումը, աշխատողների աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավումը,

նրանց որակավորման բարձրացումը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումը: Դրան պետք է համաձայնել:

Աշխատավորական կոլեկտիվում, նրա կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում արտացոլվում է հասարակության ամբողջ կյանքը՝ թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական, թե՛ հոգևոր: Ըստ էության, դա մեր ամբողջ ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական օրգանիզմի սկզբնական բջիջն է: Ուստի իրավացի են նաև նրանք, ովքեր գտնում են, որ ավելի լավ կլինի աշխատավորական կոլեկտիվի մասին հոդվածը զետեղել Սահմանադրության առաջին գլխում, որ նվիրված է մեր քաղաքական սիստեմին:

Հազարավոր առաջարկություններ են ստացվել Սահմանադրության մեջ ասելու, որ հանրօգուտ աշխատանքից ամեն մի խուսափում անհամատեղելի է սոցիալիստական հասարակության սկզբունքների հետ: Մարդիկ պահանջում են ավելի խստորեն պատժել գործալիքներին, անաշխատ եկամուտների սիրահարներին: Չի կարելի չպաշտպանել այս արդարացի նկատառումները:

Շատ ու շատ ընկերներ գրում են այն մասին, որ Սահմանադրության մեջ հարկավոր է հատկապես ընդգծել քաղաքացիների պարտականությունը՝ պահպանելու ժողովրդական բարիքը, պահպանելու մեր սոցիալիստական սեփականությունը, որը ժողովրդի կոլեկտիվ աշխատանքի արգասիքն է, ամբողջ հասարակության զարգացման հիմքը: Համաձայնելով այդ հարցի վերաբերյալ աշխատավորների կարծիքին, սահմանադրական հանձնաժողովը առաջարկում է լրացում մտցնել հիմնական օրենքի համապատասխան հոդվածի մեջ:

Հաշվի առնելով ստացված դիտողությունները, առաջարկվում է ճշգրտել ևս մի քանի հոդվածներ «Պետությունը և անհատը» հատվածում: Այսպես, բնակարանի իրավունքի վերաբերյալ հոդվածում, բազմաթիվ ցանկություններին համապատասխան, ասվում է, որ քաղաքացիները պարտավոր են հոգատարությամբ վերաբերվել հատկացված բնակարանին: Երեխաների դաստիարակության մասին հոգ տանելու՝ քաղաքացու պարտքին նվիրված հոդվածի մեջ այժմ նշված է նաև, որ զավակները ևս պարտավոր են հոգ տանել ծնողների մասին և նրանց օգնություն ցույց տալ: Ուզում եմ նշել, որ նման լրացման վերաբերյալ առաջարկություններ են ստացվել ոչ միայն զառամյալ տարիքի անձանցից, այլև, որ առանձնապես ուրախալի է, բազմաթիվ երիտասարդներից:

Համաժողովրդական քննարկումը թույլ տվեց կատարելագործել նախագծի մի շարք դրույթներ, որոնք նպատակամղված են սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմանը:

Շատ ընկերներ, այդ թվում՝ տեղական սովետների դեպուտատներ, առաջարկում են Սահմանադրության մեջ մտցնել նոր հոդված՝ ընտրողների պատվիրանների մասին: Պատվիրաններն արտահայտում են բնակչության ամենաբազմազան կարիքները, արտացոլում աշխատավորների առանձին խմբերի և, ամբողջությամբ վերցրած, հասարակության կոնկրետ շահերը: Ուստի պատվիրանների կատարումը սովետների և նրանց դեպուտատների աշխատանքի կարևոր մասն է: Բավական է ասել, որ միայն վերջին երկու տարում կատարվել է ընտրողների ավելի քան 700 հազար պատվիրան: Դա սոցիալիստական դեմոկրատիայի ռեալ դրսևորումներից մեկն է: Եվ հարկավոր է, որ պատվիրանների իրականացմանը պատշաճ ուշադրություն նվիրեն ոչ միայն դեպուտատները, այլև ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, կառույցների, հիմնարկների ղեկավարները:

Նախատեսվում է հաշվի առնել մեր պետության կյանքի դեմոկրատական հիմքերի հետագա զարգացման վերաբերյալ աշխատավորների նաև մի շարք ուրիշ խելացի և ճիշտ առաջարկություններ: Այսպես, ինչպես առաջարկում են շատերը, հարկ կլիներ, ըստ երևույթին, արձանագրել, որ քաղաքացին, որպես կանոն, չի կարող միաժամանակ ընտրվել ավելի քան երկու սովետում: Դա կօգնի մեր պետական մարմիններում թարմ ուժերի ներհոսին, պետության գործերի կառավարմանը մասնակցող անձանց շրջանակի ընդլայնմանը:



Ինչպես դուք գիտեք մամուլից, համաժողովրդական քննարկման ժամանակ աշխույժ դիսկուսիա առաջացավ այն մասին, թե քաղաքացիները որ տարիքից սկսած պետք է իրավունք ունենան ընտրվելու սովետներում: Լայն պաշտպանություն ստացավ նախագծի այն հոդվածը, որի համաձայն բոլոր սովետներում ընտրվելու իրավունք պետք է ունենան 18 տարեկան դարձած քաղաքացիները: Բայց եղան նաև առաջարկություններ այդ տարիքը սահմանել 21, 23 և նույնիսկ 30:

Սահմանադրական հանձնաժողովը, քննության առնելով այդ հարցը, ելնում էր այն բանից, որ դեպուտատության թեկնածուներ առաջադրող աշխատավորական կոլեկտիվները, հասարակական կազմակերպությունները համակողմանիորեն քննարկում են նրանց հատկությունները, նրանց ներկայացնում բարձր պահանջներ: Դա հուսալի երաշխիք է տալիս, որ սովետների մեջ կընտրվեն միայն արժանավոր ընկերներ, որոնք ընդունակ են լավ կատարելու դեպուտատական ոչ դյուրին պարտականությունները: Իսկ մեր երիտասարդության մեջ, իհարկե, քիչ չկան այդպիսի մարդիկ: Ուստի բոլոր սովետներում, բացի ՍՍՀՄ Գերագույն սովետից, ընտրվելու համար կարելի կլիներ տարիքային ցենզը սահմանել 18 տարեկան: Իսկ քանի որ ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից ընդունվում են համապետական բնույթի առավել պատասխանատու որոշումները, ապա նրանում ընտրվելու իրավունքը կարելի էր վերապահել քաղաքացիներին՝ սկսած 21 տարեկանից:

Մեծ թվով ելույթների և նամակների մեջ այն կարծիքն է հայտնվում, որ պետք է է՛լ ավելի խստորեն կենսագործել սովետների ու բնակչության առջև կառավարման մարմինների և պաշտոնատար անձանց պատասխանատվության և հաշվետու լինելու սկզբունքը: Դա լիովին կարելի է հաշվի առնել համապատասխան հոդվածներում, ասելով, որ գործկոմները, դեպուտատները և մյուս ընտրովի աշխատողները պարտավոր են սիստեմատիկաբար հաշիվ տալ ինչպես սովետների առջև, այնպես էլ աշխատավորական կոլեկտիվների և ըստ բնակության վայրի քաղաքացիների ժողովների առջև:

Վերջապես, շատերը կարծում են, որ հարկավոր է է՛լ ավելի կոնկրետ ձևակերպել դեպուտատների հարցապնդումների և քաղաքացիների առաջարկությունների քննարկման կարգի վերաբերյալ, օրենքների խախտման համար, աշխատավորների քննադատական դիտողությունների նկատմամբ ոչ ճիշտ վերաբերմունքի համար պաշտոնատար անձանց պատասխանատվության վերաբերյալ հոդվածները: Հանձնաժողովը հնարավոր է համարում այդ բանը հաշվի առնել Սահմանադրության համապատասխան հոդվածներում:

Այժմ մի քանի ուղղումների մասին, որոնք վերաբերում են պետական մարմինների կազմակերպմանն ու գործունեությանը:

Մի քանի ընկերներ խնդրում են ավելի որոշակի ասել իրենց տերիտորիայում տնտեսական ու սոցիալական կոմպլեքսային զարգացումն ապահովելու՝ միութենական ու ինքնավար հանրապետությունների և տեղական սովետների լիազորությունների մասին: Դրան կարելի է համաձայնել: Սահմանադրության մեջ բավական հստակորեն ասված է համապատասխան ճյուղերի վիճակի համար մինիստրությունների և գերատեսչությունների պատասխանատվության մասին: Եվ, ըստ երևույթին, ճիշտ կլինի նույնքան հստակորեն ասել նաև տեղական այն մարմինների խնդիրների մասին, որոնք ապահովում են աշխատանքի համաձայնեցումն ու կոորդինացումը, ձեռնարկությունների և սոցիալ-կուլտուրական հիմնարկների զարգացման կոմպլեքսայնությունը որոշակի տերիտորիայում, անկախ նրանց ենթակայությունից:

Հաշվի առնելով քաղաքացիների ցանկությունները, ճշգրտվում են նաև մի քանի այլ հոդվածներ, մասնավորապես մինիստրությունների ու պետական կոմիտեների, իշխանության տեղական մարմինների իրավասության մասին, դատարանի, արբիտրաժի և դատախազության մասին:

Քննարկման մասնակիցները միահամուռ ողջունեցին Սահմանադրության նախագծի մեջ ՍՍՀՄ լենինյան արտաքին քաղաքականության նպատակների և սկզբունքների մասին հատուկ գլուխ մտցնելը: Այդ գլխի կապակցությամբ

առաջարկություն է արվել ավելացնել, որ Սովետական Միությունը ձգտում է հասնել ընդհանուր և լրիվ զինաթափման: Դա, անշուշտ, ճիշտ է: (Ծափահարություններ):

Ամբողջությամբ վերցրած, սահմանադրական հանձնաժողովը Գերագույն սովետին հանձնարարում է, բացի զուտ խմբագրականներից, ընդունել Սահմանադրության տեքստի վերաբերյալ մոտավորապես հարյուր հիսուն ուղղում և ճշգրտում: Իսկապես այդ ճանապարհով հաշվի կառնվեն բազմապատիկ մեծ թվով քաղաքացիների արտահայտած կարծիքները: Բավական է ասել, որ քաղաքացիների աշխատելու պարտականության վերաբերյալ հոդվածի առթիվ միայն մի ուղղման եռևում կանգնած են ըստ բովանդակության համընկնող տասնյակ հազարավոր առաջարկություններ:

Միևնույն ժամանակ, ընկերներ, մտցված առաջարկությունների թվում կան նաև այնպիսիները, որոնք հանձնաժողովը չէր կարող հաշվի առնել:

Այսպես, շատ ու շատ քաղաքացիներ առաջարկում են սահմանադրական մակարդակի բարձրացնել մեր օրենսդրության մեջ արդեն առկա տարբեր կանոններ, դրանք մտցնելով հիմնական օրենքի մեջ: Դրանցից են՝ թե տեղական սովետների նստաշրջանների անցկացման կոնկրետ ժամկետները, թե դեպուտատների հաշվետվությունների պարբերականությունը, թե՛ կառավարման առանձին մարմինների լիազորությունները, թե՛ այս կամ այն իրավախախտման համար կիրառվող սանկցիաները:

Շատերը հարկավոր են համարում, որ հատկապես աշխատանքի իրենց բնագավառը ավելի մանրամասնորեն արտացոլվի նոր Սահմանադրության մեջ: Այստեղից էլ՝ մեծաթիվ առաջարկություններ նրա տեքստում հիշատակելու կոնկրետ միջոցառումներ, օրինակ, տնտեսական կյանքի իրավական կարգավորման կատարելագործման, շրջակա միջավայրի պահպանման, երկաթուղիների աշխատանքի բարելավման, առողջապահության, լուսավորության սիստեմի և այլ բնագավառների նյութատեխնիկական բազայի զարգացման ուղղությամբ:

Այդ բոլոր առաջարկությունները, ընկերներ, հոգեբանորեն հասկանալի են և մեծ մասամբ, ըստ երևույթին, ինքնըստինքյան ճիշտ են: Բայց Սահմանադրությունը պետության հիմնական օրենքն է: Նա վավերագրում է միայն գլխավոր, սկզբունքային դրույթները, որոնք, գործելով անմիջականորեն, միևնույն ժամանակ բացահայտվում և կոնկրետացվում են այլ օրենսդրական ակտերում: Այդ դրույթների հիման վրա և ի զարգացումն դրանց, անհրաժեշտության համեմատ կմշակվեն ու կկատարելագործվեն օրենքներն ու կարգադրությունները, մի խոսքով, ընթացիկ օրենսդրությունը: Եվ ահա այդ աշխատանքի ընթացքում հարկավոր է ուշադիր քննության առնել և հաշվի առնել Սահմանադրության նախագծի քննարկման ժամանակ արտահայտված բազմաթիվ կոնկրետ նկատառումներ: Ի դեպ ասած, առողջապահության հարցի կապակցությամբ Կենտրոնական կոմիտեում այժմ քննարկվում է որոշման նախագիծ ժողովրդի առողջության պահպանությունը բարելավելու միջոցառումների կոմպլեքսային ծրագրի վերաբերյալ: (Ծափահարություններ):

Թույլ տվեք ասել նաև այն առաջարկությունների մասին, որոնք սահմանադրական հանձնաժողովը սխալ է համարել ըստ էության:

Որոշ առաջարկություններ ակնհայտորեն առաջ են վազում, հաշվի չեն առնում, որ նոր Սահմանադրությունը, թեև զարգացած, բայց սոցիալիզմի, և ոչ թե կոմունիզմի պետության հիմնական օրենքն է: Մեզանում գործում է սոցիալիստական սկզբունքը՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի»: Տնտեսական զարգացման և մարդկանց գիտակցականության արդի մակարդակի պայմաններում անհնար է թռչելանցնել դրա վրայով: Ուստի չեն կարող ընդունվել, օրինակ, բոլորի համար միատեսակ աշխատավարձ ու կենսաթոշակներ մտցնելու կամ դրանց չափերը բացառապես աշխատանքային ստաժի հիման վրա որոշելու առաջարկությունները, հաշվի չառնելով աշխատողների որակավորումը և նրանց աշխատանքի որակը:



Եղել են նաև առաջարկություններ վերացնելու կամ խիստ սահմանափակելու օժանդակ տնտեսությունների վարումը: Բայց չէ՞ որ հայտնի է, որ շահագործման հետ չկապված՝ աշխատանքի այդ ձևը տվյալ ժամանակում օգտակար դեր է խաղում մեր էկոնոմիկայում: Ուստի, մեր կարծիքով, իրավացի են այն ընկերները, որոնք առաջարկում են Սահմանադրության մեջ ընդգծել, որ պետությունն ու կոլտնտեսությունները աջակցություն են ցույց տալիս քաղաքացիներին օժանդակ տնտեսություն վարելու գործում: Իմիջիայլոց, նրանց, ովքեր դեմ են արտահայտվում օժանդակ տնտեսություններին, դատելով ըստ ամենայնի, անհանգստացնում է ոչ այնքան դրանց առկայության բուն փաստը, որքան սպեկուլյատիվ եկամուտներ քաղելու նպատակով այդ տնտեսությունների չարաշահման, ցավոք, դեռևս գոյություն ունեցող դեպքերը: Բայց ահա հենց այստեղ համապատասխան պետական մարմինները պետք է հաստատուն կերպով իրականացնեն Սահմանադրությամբ նրանց տրված վերահսկողության իրավունքը, խստիվ հետևեն, որ քաղաքացիներին հատկացվող հողամասերն օգտագործվեն ռացիոնալ կերպով՝ օգուտ բերելով հասարակությանը և որ օժանդակ տնտեսությունից ու անհատական աշխատանքային գործունեությունից ստացվող եկամուտները համապատասխանեն սոցիալիզմի սկզբունքներին:

ՍՍՀՄ-ում, ինչպես հայտնի է, կազմավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը: Որոշ ընկերներ,— դրանց թիվը, իհարկե, շատ քիչ է,— դրանից սխալ հետևություններ են արել: Նրանք առաջարկում են Սահմանադրության մեջ մտցնել միասնական սովետական ազգի հասկացություն, վերացնել միութենական և ինքնավար հանրապետությունները կամ խիստ սահմանափակել միութենական հանրապետությունների սուվերենությունը, զրկելով նրանց ՍՍՀՄ-ից դուրս գալու իրավունքից, արտաքին հարաբերությունների իրավունքից: Նույն ուղղությամբ են գնում ազգությունների սովետը վերացնելու և միապալատ Գերագույն սովետ ստեղծելու առաջարկությունները: Կարծում եմ, որ այդ առաջարկությունների սխալականությունը ակնհայտ է: Սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական միասնությունն ամենևին չի նշանակում ազգային տարբերությունների անհետացում: Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ մենք, կառուցելով սոցիալիզմ, միաժամանակ,— պատմության մեջ առաջին անգամ,— հաջողությամբ լուծեցինք ազգային հարցը: Անխախտ է սովետական ժողովուրդների բարեկամությունը, կոմունիստական շինարարության պրոցեսում անշեղորեն տեղի է ունենում նրանց մերձեցում, նրանց հոգևոր կյանքի փոխադարձ հարստացում: Բայց մենք վտանգավոր ուղու վրա կկանգնեինք, եթե սկսեինք արհեստականորեն արագացնել ազգերի մերձեցման այդ օբյեկտիվ պրոցեսը: Դրանից հաստատակամորեն նախազգուշացնում էր Վ. Ի. Լենինը, և նրա պատգամներից մենք չենք նահանջի: (Ծափահարություններ):

Աշխույժ քննարկում առաջացրեց այն հոդվածը, որը տեղական սովետների լիազորությունների ժամկետը սահմանում է երկու և կես տարի:

Շատ առաջարկություններ են ստացվել այդ ժամկետը սահմանելու հինգ տարի, որպեսզի դեպուտատը կարողանա ավելի լավ յուրացնել իր պարտականությունները և ավելի արդյունավետ աշխատել: Բայց չէ՞ որ դա զգալիորեն կկրճատեր այն աշխատավորների թիվը, որոնք սովետներում անցնում են պետության կառավարման դպրոց: Իսկ եթե երկու և կես տարով ընտրված դեպուտատը լավ է աշխատում, ապա ի՞նչն է խանգարում նրա թեկնածությունը առաջադրելու երկրորդ անգամ: Դա, ի դեպ, հենց արվում է. դեպուտատների կեսից ավելին երկրորդ անգամ է ընտրվում, որը օգնում է պահպանելու հաջորդայնությունը սովետների աշխատանքում: Այնպես որ, մեր կարծիքով, հարկ չկա փոխել տվյալ հոդվածը:

Սահմանադրական հանձնաժողովը ստացել է նաև նամակներ, որոնցում առաջարկվում է պետական ֆունկցիաները անմիջականորեն հանձնել կուսակցական մարմիններին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն օժտել օրենսդրական իշխանությամբ և այլն: Այդ առաջարկությունները խորապես սխալ են, քանի որ

շփոթ են մտցնում մեր հասարակությունում կուսակցության դերի ըմբռնման մեջ և փորձում են նվազեցնել սովետական իշխանության մարմինների նշանակությունն ու ֆունկցիաները։

Մեր կուսակցությունը, դառնալով կառավարող կուսակցություն, դեռևս Վ. Ի. Լենինի ղեկավարած ութերորդ համագումարում հաստատ հայտարարեց, որ իր որոշումները նա կիրառում է «Սովետական մարմինների միջոցով, սովետական Սահմանադրության շրջանակներում» (ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, հ. 2, 8-րդ հրատ., էջ 77), որ, ղեկավարելով սովետների գործունեությունը, նա չի փոխարինում նրանց, սահմանազատում է կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաները։ Լենինյան այդ սկզբունքը արձանագրված է ՍՄԿԿ կանոնադրության մեջ և վերստին ընդգծվել է կուսակցության վերջին համագումարների որոշումներում։ Մենք առաջարկում ենք այն արտացոլել նաև նոր Սահմանադրության մեջ։

Պետական կյանքի հարցերում իր գիծը կուսակցությունը վարում է նախ և առաջ այն կոմունիստների միջոցով, որոնք ժողովրդի կողմից ընտրվել են սովետներում և որոնք աշխատում են պետական մարմիններում։ Կուսակցությունն իր կարևորագույն խնդիրներից մեկն է համարում ըստ ամենայնի ամրապնդել և կատարելագործել սովետների իշխանությունը, հոգ տանել սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման մասին։ Այդ սկզբունքային գծին մենք հետևում ենք և միշտ կհետևենք։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Սահմանադրության նախագծի քննարկումը մեծապես դուրս եկավ նրա բուն տեքստի վերլուծության շրջանակներից: Այն վերածվեց մեր կյանքի կարևորագույն, սովետական մարդկանց հուզող հարցերի վերաբերյալ անկեղծ, իսկապես համաժողովրդական խոսակցության: Աշխատավորների կոլեկտիվները և առանձին քաղաքացիներ արդարացի, հաճախ սուր քննադատական դիտողություններ էին անում պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների գործունեության տարբեր կողմերի վերաբերյալ, առաջարկում էին աշխատանքի բարելավման, եղած թերությունների վերացման միջոցառումներ։

Շատ նամակներ կոչ են անում ուժեղացնել պայքարը պորտաբուծության դեմ, աշխատանքային կարգապահության չարամիտ խախտումների, հարբեցողության և հակահասարակական այլ երևույթների դեմ, որոնք հակասում են մեր սոցիալիստական ապրելակերպի բուն էությանը։ Աշխատավորների այս հաստատակամ պահանջից պետք է կոնկրետ հետևություններ անեն բոլոր պետական և հասարակական կազմակերպությունները։

Մի շարք նամակներում հաղորդվում է առանձին պաշտոնատար անձանց կողմից իրենց պաշտոնական դիրքի չարաշահման զայրացուցիչ փաստերի մասին, հավելագրումների, աչքակապության միջոցով պետությանը խաբելու փաստերի մասին, կաշառակերության մասին, աշխատավորների պահանջներին անտարբեր, ձևական մոտեցում ցուցաբերելու մասին, քննադատության համար հետապնդելու դեպքերի մասին։

Ուզում եմ ընդգծել, ընկերներ, որ ստացված այդօրինակ բոլոր հաղորդումները մանրակրկիտ կերպով ստուգվում են անհրաժեշտ միջոցներ ձեռնարկելու նպատակով, ներառյալ մեղավորներին օրենքի ամբողջ խստությամբ պատժելը։ Եվ առհասարակ պետք է ասել, որ պատշաճ կարգուկանոնի հաստատումը այնտեղ, որտեղ այն մեզանում խախտվում է՝ արտադրության մեջ, պետական և հասարակական կյանքում, մեծ ռեզերվ է մեր հասարակության զարգացման ասպարեզում։ Վերջ տալով այնպիսի երևույթների, ինչպիսիք են անտարբերությունն աշխատանքում, սոցիալիստական սեփականության վատնումը, գործի և մարդկանց նկատմամբ ձևական, բյուրոկրատական վերաբերմունքը, մենք մեծապես կարագացնենք երկրի առաջընթացը, ամբողջ ժողովրդի կյանքի բարելավումը։ (Ծափահարություններ)։

Շատ նամակներում և ելույթներում դրվում է ժողովրդական վերահսկողության հետագա ուժեղացման ու կատարելագործման հարցը։ Դա ճիշտ է։ Եվ



դրան կծառայի մասնավորապես ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին օրենքը, որի ընդունումը նախատեսված է նոր Սահմանադրությամբ։

Նամակների մի շարք հեղինակներ խորհուրդ են տալիս մտցնել արձակուրդների որոշ ավելացման խրախուսական սիստեմ նրանց համար, ովքեր երկար ժամանակ բարեխղճորեն և արդյունավետ կերպով աշխատում են ի բարօրություն հասարակության, արտադրության առաջավորների համար։ Եվ, ընդհակառակը, կրճատել նրանց արձակուրդը, ովքեր, այսպես ասած, քմահաճ կերպով այն վերցնում են ի հաշիվ աշխատաժամանակի, այսինքն՝ պարզ ասած, լոդրություն են անում, գործալքում։ Ըստ երևույթին արժե, որ աշխատանքի և սոցիալական հարցերի կոմիտեն և այլ գերատեսչություններ, ինչպես նաև ՀԱՄԿԽ-ն ուշադրության առնեն այդ նկատառումները արձակուրդների սիստեմի կատարելագործման միջոցառումներ նախապատրաստելիս, ընդ որում հաշվի առնելով նաև այս բնագավառում եղբայրական երկրներում եղած պրակտիկան։

Մեր կարծիքով, ուշադրության են արժանի այն առաջարկությունները, որոնք միջոցառումներ են նախատեսում Հայրենական մեծ պատերազմի՝ մարտերին մասնակցած վետերանների կենսապայմանների հետագա բարելավման ուղղությամբ, այդ թվում նրանց, ովքեր այսօր կենսաթոշակ են ստանում։ Կուսակցությունը և սովետական պետությունը, մշտական հոգատարություն ցուցաբերելով Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների նկատմամբ, այդ առումով արդեն քիչ բան չեն արել։ Կարելի՞ է արդյոք լրացուցիչ միջոցներ գտնել էլի որոշ արտոնություններ տալու նրանց, ովքեր պաշտպանեցին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը երբևիցե եղած պատերազմներից ամենածանր պատերազմում։ Ինձ թվում է, որ կարելի է։ (Երկարատև ծափահարություններ)։

Ցանկություններ են հայտնվում լրացուցիչ արտոնություններ տալու մայրերին, հարց է դրվում բարելավել բժշկական օգնությունից օգտվելը, ավելի խիստ կարգ սահմանել բնակտարածության բաշխման գործում և այլն։ Կարծում եմ, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը համագործակցելով ՀԱՄԿԽ-ի հետ, պետք է մանրակրկիտ քննության առնի արտահայտված ցանկությունների բավարարման մեր այսօրվա ռեսուրսներն ու հնարավորությունները և արդյունքների մասին հաղորդի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը։

Սրանք են, ընկերներ, այն գլխավոր մոմենտները, որոնց մասին սահմանադրական հանձնաժողովը անհրաժեշտ համարեց զեկուցել ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման կապակցությամբ։

## II.

Ընկեր դեպուտատնե՛ր։ Մեր նոր Սահմանադրության նախագիծը և նրա համաժողովրդական քննարկումը երկար ժամանակ գտնվում էին ամբողջ աշխարհի ուշադրության կենտրոնում։ Կարելի է, թերևս նույնիսկ ասել, որ քննարկումը դարձավ ոչ միայն համաժողովրդական, այլև միջազգային։ Եվ դրանում մենք տեսնում ենք արդի աշխարհում սոցիալիզմի հսկայական դերի ևս մի վկայություն։ (Ծափահարություններ)։

Սովետական նոր Սահմանադրության նախագիծը լայնորեն քննարկեցին և ջերմորեն պաշտպանեցին եղբայրական սոցիալիստական երկրների մեր բարեկամները: Նրանք նախագծին վերաբերվեցին ամենայն ուշադրությամբ և պահանջկոտությամբ, ընկերական և գործարար շահագրգռվածությամբ։ Նրանք հանգամանորեն վերլուծում էին նախագիծը, հաղորդում իրենց սեփական փորձը։ Մենք նրանց անկեղծորեն շնորհակալություն ենք հայտնում դրա համար։ (Ծափահարություններ)։

Սահմանադրության նախագծին հսկայական ուշադրություն նվիրեց սոցիալիզմի երկրների մամուլը։ Նա նախագիծը գնահատեց որպես մի փաստաթուղթ, որը աշխարհին ներկայացնում է «ճշմարտությունը սոցիալիզմի մասին և մարդկության վաղվա օրվա մասին», որպես «կոմունիզմի կառուցման դա-

բաշրջանի մանիֆեստ»։ Մեր մարտական ընկերները՝ սոցիալիստական ընկերակցության երկրների ղեկավարները ընդգծում էին նախագծի մեծ նշանակությունը իրենց երկրների զարգացման հեռանկարները որոշելու համար։ (Ծափահարություններ)։

Սոցիալիստական երկրներում գոհունակությամբ նշում են, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի տեքստում այս կամ այն ձևով իրենց արտացոլումն են գտել նաև եղբայրական պետությունների սահմանադրություններին հատուկ մոմենտները, ճիշտ այնպես, ինչպես նրանց սահմանադրությունները ներառել են սովետական օրենսդրության նախորդ փորձը։ Այսպես է կուտակվում սոցիալիստական պետական շինարարության կոլեկտիվ փորձը։

Սովետական նոր Սահմանադրության նախագծի մեջ բուռն հետաքրքրությամբ էին խորամուխ լինում երիտասարդ պետություններում, որոնք վերջերս են ազատագրվել գաղութային ճնշումից և այժմ որոշում են իրենց հետագա ուղին։ Այդ պետությունների նշանավոր գործիչները ՍՍՀՄ ներկայացուցիչներին ասում էին, որ իրենք հուսով են մեծ օգուտ քաղել հաղթանակած սոցիալիզմի առաջին երկրի պետական շինարարության 60-ամյա փորձը ընդհանրացնող նախագծից։ Աֆրիկայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի շատ երկրների մամուլը աշխուժորեն մեկնաբանում էր նախագիծը։ Ընդ որում մասնավորապես ընդգծվում էր, որ նախագծում արտացոլված սովետական երկրի նվաճումները ոգեշնչման օրինակ են ծառայում սոցիալիզմի ուղին բռնող բոլոր ժողովուրդների համար։ (Ծափահարություններ)։

ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը բացառիկ ուշադրությամբ ընդունեցին կապիտալի աշխարհի աշխատավորները և առաջին հերթին նրանց ավանգարդը՝ կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։ Կոմկուսների մամուլը իր ընթերցողներին մանրամասնորեն ծանոթացրեց նախագծի բովանդակությանը, հանգամանորեն վերլուծեց այն և բարձր գնահատեց նրա նշանակությունը։ Եղբայրական կուսակցությունները ընդգծում են, որ դա մեծ կարևորություն ունեցող փաստաթուղթ է, որը ցույց է տալիս, թե իրենից ինչ է ներկայացնում ժամանակակից զարգացած սոցիալիզմը, թե ինչ խնդիրներ է նա իր առջև դնում։ Սովետական Միությունը վիթխարի քայլ է արել դեմոկրատական զարգացման ուղղությամբ. սովետական ժողովուրդը գործնականում հաստատել է Մարքսի, Էնգելսի և Լենինի մեծ գաղափարների ճշմարտացիությունը. ՍՍՀՄ Սահմանադրության նախագիծը առատ նյութ է պարունակում ուսումնասիրման, մտորումների և վիճաբանությունների համար՝ այսպիսիք են կապիտալիստական աշխարհի կոմունիստների արտահայտած կարծիքները, որոնց համար Հոկտեմբերի երկրի նոր Սահմանադրությունը օգնություն է այն արդար պայքարում, որ նրանք մղում են աշխատավորների գործի համար։

Ամբողջությամբ վերցրած, ընկերներ, այն ակտիվ արձագանքները, այն մեծ, անկեղծ հետաքրքրությունը և ջերմ հավանությունը, որին արժանացավ մեր Սահմանադրության նախագիծը ամբողջ աշխարհի աշխատավոր մասսաների մեջ, մարդկանց սիրտը հպարտությամբ են համակում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունների համար, օգնում են է՛լ ավելի ակնբախորեն պատկերացնելու դրանց ինտերնացիոնալ մեծ նշանակությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

ՍՍՀՄ Սահմանադրության նախագիծը անուշադիր չթողեցին նաև բուրժուական մամուլը և կապիտալիստական աշխարհի մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցները։ Դրանցից մի քանիսը առավել կամ պակաս օբյեկտիվությամբ էին տեղեկացնում փաստաթղթերի բովանդակության մասին։ (Երկարատև ծափահարություններ)։

Արևմտյան մի շարք թերթեր նշեցին, որ ՍՍՀՄ նոր հիմնական օրենքը նշանավորում է դեմոկրատիայի հետագա զարգացումը Սովետական Միությունում, քաղաքացիների և հասարակական կազմակերպությունների իրավունքների ընդլայնումը, համապետական քաղաքականության վրա նրանց ազդեցության աճը։ Ամերիկյան «Բալթիմոր սան» թերթը աղնվորեն ընդգծում էր, որ



նախագիծը սովետական քաղաքացիների համար «ավելի լիակատար իրավունքներ է նախատեսում արևմտյան ամեն մի սահմանադրության համեմատությամբ. աշխատանքի, հանգստի, մասնագիտության ընտրության, սոցիալական ապահովության, բնակարանով ապահովելու, կրթության, անվճար բժշկական օգնության իրավունք»։

Կապիտալիստական երկրների պետական ու քաղաքական գործիչները և մամուլը ընդունում են այն փաստի նշանակությունը, որ Սահմանադրության՝ արտաքին քաղաքականությանը վերաբերող գլխում Սովետական Միությունը պետական-իրավական ձևով վավերագրել է իր նվիրվածությունը խաղաղության և ժողովուրդների համագործակցության գործին։ Անգլիական «Ֆայնենշլ թայմսը» Սահմանադրության նախագիծը անվանեց «պատմական փաստաթուղթ»։ Արևմտագերմանական «Զյուդդոյչե ցայտունգը» ընդգծում էր, որ նախագիծը ունի «վիթխարի նշանակություն»։

Սակայն իմպերիալիստական պրոպագանդայի կազմակերպիչները բացահայտորեն անհանգստացան, երբ մեր Սահմանադրության քննարկումը միջազգային լայն թափ ստացավ։ Արդեն հունիսի 13-ին արևմտագերմանական «Գեներալ անցայգերը» բացեիբաց դժգոհություն արտահայտեց այն առթիվ, որ «Արևմուտքը այժմ չափից ավելի է զբաղվում սովետական նոր Սահմանադրության նախագծով»։

Կրկնվեց այն, ինչ մենք հազարավոր անգամներ տեսել ենք սովետական պետության գոյության տարիներին. իմպերիալիստական պրոպագանդայի մեթոդների արտահայտիչ պատկերը։ Ինչ է նրա համար մեր մեծ երկիրը իր հերոսական պատմությամբ, վառ և բազմահարուստ մշակույթով, կրթության մակարդակով, որը ամենաբարձրերից մեկն է աշխարհում, մեծաթիվ ազգերի և ազգությունների ինտենսիվ ու համերաշխ ստեղծագործական կյանքով։ «Հոգեբանական պատերազմի» մասնագետներին այդ ամենը շատ քիչ է հետաքրքրում։ Նրանք ունեն մի նպատակ. խանգարել մարդկանց մտքերի վրա սոցիալիզմի ազդեցության աճին, բոլոր միջոցներով անվստահություն և անբարյացակամություն սերմանել նրա նկատմամբ։ Այստեղից էլ՝ շաբլոն հերյուրանքները, անխիղճ կեղծարարությունը և ուղղակի սուտը Սովետական Միության մասին, հույս դնելով լսարանի թույլ իրազեկության վրա, դյուրահավատ ընթերցողների, ունկնդիրների, հանդիսատեսների վրա։ Այստեղից էլ այն միտումները, որոնց նպատակն է ոչ այնքան տեղեկացնել սովետական նոր Սահմանադրության մասին, որքան խեղաթյուրել նրա բովանդակությունը, նսեմացնել նրա նշանակությունը, իսկ հնարավորության դեպքում նաև պարզապես լռության մատնել նրա կարևորագույն դրույթները։

Հատկապես կատաղի հարձակումների ենթարկվեցին սովետական քաղաքացիների իրավունքների, ազատությունների և պարտականությունների վերաբերյալ դրույթները։

Դա, անշուշտ, ունի իր տրամաբանությունը։ Չէ՞ որ կապիտալիստական աշխարհի աչքի ընկնող ներկայացուցիչները վերջին ժամանակներս հենց մարդու իրավունքների նկատմամբ «հոգատարության» թեման են ընտրել որպես սոցիալիզմի երկրների դեմ իրենց գաղափարական արշավի գլխավոր ուղղություն։ Բայց այստեղ սովետական Սահմանադրության քննադատները աննախանձելի վիճակի մեջ ընկան։ Նրանք չեն կարող աչք փակել այն բանի վրա, որ մեր Սահմանադրության նախագծում ավելի լայնորեն, ավելի պարզորոշ և ավելի լրիվ չափով, քան որևէ տեղ ու երբևէ, արձանագրված են քաղաքացիների սոցիալ-տնտեսական ու քաղաքական իրավունքներն ու ազատությունները և այդ իրավունքների իրականացման կոնկրետ երաշխիքները։

Բայց ինչ կարող են հակադրել զարգացած սոցիալիզմի այդ ռեալ նվաճումներին կապիտալիստական կարգերի ջատագովները։ Որո՞նք են այն իսկական իրավունքներն ու ազատությունները, որ աշխատավորների լայն մասսաների համար ապահովում է ժամանակակից իմպերիալիստական հասարակությունը։

Տասնյակ միլիոնավոր մարդկանց գործազրկության «իրավո՞ւնքը»; թե

հիվանդների «իրավունքը» յոլա գնալու առանց բուժօգնության, որը հսկայական փող արժե։ Թե՞ աշխատանքում և կրթության բնագավառում, կենցաղում և քաղաքական կյանքում ստորացուցիչ խտրականության ենթարկվելու ազգային փոքրամասնությունների «իրավունքը»։ Թե՞ գուցե կազմակերպված ամենազոր հանցագործ աշխարհի հանդեպ միշտ ահ ու սարսափի մեջ ապրելու և այն ամենը տեսնելու «իրավունքը», թե՞ ինչպես մամուլն ու կինոն, հեռուստատեսությունն ու ռադիոն ամեն բան անում են երիտասարդ սերնդին դաստիարակելու եսամոլության, դաժանության ու բռնության ոգով։

Կապիտալիզմի պրոպագանդիստները և գաղափարախոսները չեն կարող ժխտել, որ սոցիալիզմը վաղուց է վերջ տվել այդ սոցիալական խոցերին։ Ուստի նրանք դիմեցին ուրիշ մանևրի։ Նրանք գլխավորապես կրակը կենտրոնացրին մեր Սահմանադրության նախագծի այն դրույթների վրա, որտեղ ասվում է, որ քաղաքացիների կողմից իրավունքների և ազատությունների օգտագործումը չպետք է վնաս հասցնի հասարակության ու պետության շահերին, մյուս քաղաքացիների իրավունքներին, ինչպես նաև ասվում է, որ իրավունքների և ազատությունների իրականացումը անբաժանելի է քաղաքացու կողմից իր պարտականությունների կատարումից։

ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի համաձայն, քաղաքացու իրավունքները չպետք է օգտագործվեն սոցիալիստական հասարակության և պետության դեմ, «իսկ դա նշանակում է,— հայտարարում է, օրինակ, ավստրիական «Զալցբուրգեր ֆոլկսբլատ» թերթը,— որ սովետական քաղաքացիները ոչ մի իրավունք չունեն»։ Այ թե եզրակացություն է։

Իսկ իտալական «Կոռիերե դելա սերա» թերթին դուր չի գալիս, որ նախագծում խոսվում է ՍՍՀՄ Սահմանադրությունը, սովետական օրենքները կատարելու, սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու սովետական քաղաքացիների պարտականության մասին։ «Այդ բոլոր սահմանափակումները,— ազդարարում է իտալական մոնոպոլիաների օրգանը,— փաստորեն ի չիք են դարձնում քաղաքացիական իրավունքների իրականացումը, համենայն դեպս այն իմաստով, ինչպես դրանք հասկացվում են մեզ մոտ...»։ Դուրս է գալիս, որ ՍՍՀՄ-ում քաղաքացիական իրավունքների իրականացման էությունը պետք է լինի օրենքների խախտումը։

Եվ առհասարակ, մեր դասակարգային հակառակորդների տեսակետից, ՍՍՀՄ քաղաքացիներին, ըստ երևույթին, պետք է տրվեր միայն մի «իրավունք». հուրախություն իմպերիալիզմի պայքարել սովետական պետության դեմ, սոցիալիստական կարգերի դեմ։ Բայց մենք պետք է հիասթափեցնենք մեր Սահմանադրության այդ «քննադատներին». սովետական ժողովուրդը երբեք չի ընդառաջի նրանց ցանկություններին։ (Երկարատև ծափահարություններ)։

Մեր «քննադատները» ձևացնում են, թե իբր իրենք չգիտեն, որ իրենց դժգոհությունը հարուցած Սահմանադրության նախագծի դրույթները լրիվ համապատասխանում են միջազգային կարևորագույն փաստաթղթերին։ Հիշեցնենք նրանց։ ՄԱԿ-ի ընդունած մարդու իրավունքների ընդհանուր դեկլարացիայում միանգամայն պարզորոշ ասվում է, որ «Ամեն մի մարդ պարտականություններ ունի հասարակության հանդեպ, որտեղ և միայն հնարավոր է նրա անձի ազատ ու լիակատար զարգացումը», և որ քաղաքացիների իրավունքների և ազատությունների իրականացումը պահանջում է «Ուրիշների իրավունքների և ազատությունների պատշաճ ճանաչում ու հարգում և դեմոկրատական հասարակության մեջ բարոյականության, հասարակական կարգի և ընդհանուր բարեկեցության արդարացի պահանջների բավարարում»։

Սա է դեմոկրատական հասարակական կյանքի հանրաճանաչ սկզբունքը։ Ուրիշ ոչինչ էլ պարոնայք քննադատներ, չի բովանդակվում ՍՍՀՄ նոր Սահմանադրության այն դրույթների մեջ, որոնք առաջացնում են ձեր երեսպաշտական զայրույթը։

Բուրժուական մեկնաբանների մեծ մասին այնքան էլ դուր չեն գալիս նախագծի նաև այն դրույթները, որոնցում խոսվում է սովետական հասարակության կյանքում ՍՄԿԿ-ի դերի մասին։ Նրանք ամբողջ ձայնով աղմկում են, թե դա, իբր, «Կոմունիստական կուսակցության դիկտատուրայի հռչակումն է», «Կուսակցության առաջնությունը պետության նկատմամբ», «Կուսակցական և պետական մարմինների վտանգավոր միահյուսում», «Կուսակցության և պետության միջև եղած տարբերությունների ոչնչացում»։

Այստեղ ինչ կարելի է ասել։ Այդ գրոհի պատճառները հասկանալի են։ Կոմունիստական կուսակցությունը սովետական ժողովրդի ավանգարդն է, նրա առավել գիտակից, առաջավոր մասը, որը անբաժանելի է ամբողջ ժողովրդից։ (Երկարատև ծափահարություններ)։ Կուսակցությունը ժողովրդի շահերից բացի ուրիշ շահեր չունի։ Կուսակցությանը և ժողովրդին միմյանց հակադրելու, «կուսակցության դիկտատուրայի» մասին դատողություններ անելու փորձը նույնն է, ինչ որ փորձել, ասենք, սիրտը հակադրելու մարդու մնացած ամբողջ օրգանիզմին։ (Ծափահարություններ)։

Ինչպես ես արդեն հիշատակեցի, կոմունիստական կուսակցությունը գործում է ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում։ Բայց դա բուրժուական քննադատների պետքը չէ։ Նրանք կուզենային թուլացնել կուսակցության դերը սովետական հասարակության մեջ, քանի որ առհասարակ երազում են թուլացնել մեր երկիրը, մեր սոցիալիստական կարգերը, մարել մեր կոմունիստական իդեալները։ Բարեբախտաբար, դա նրանց ուժերից վեր է։ (Ծափահարություններ)։ Սովետական մարդկանց կողմից կոմունիզմի կառուցման ավելի ու ավելի բարդ ու պատասխանատու խնդիրների լուծման համեմատ կոմունիստական կուսակցության դերն ավելի ու ավելի կմեծանա։ Եվ դա տանում է դեպի ոչ թե սոցիալիստական դեմոկրատիայի սահմանափակում, այլ դեպի նրա ավելի ու ավելի խոր զարգացում՝ մեր կուսակցության ծրագրին լրիվ համապատասխան։ (Ծափահարություններ)։

Եվ էլի մի մոմենտ։ Մեր նոր Սահմանադրության արևմտյան քննադատներից ոմանք փորձում են նրա վրա գրոհել, այսպես ասած, «ձախից», տեսական դատողություններ են անում այն մասին, թե իբր նախագծի հեղինակները բավարար հետևողականությամբ չեն հետևում կոմունիզմի օրոք պետության մահացման մասին մարքսիստական ուսմունքին։ Իտալական «Մեսաջերո» թերթը տրտնջում է, որ սովետական Սահմանադրությունը «անվերապահորեն մի կողմ է նետել «պետության մահացման» կոմունիստական սկզբունքը, որի դերը պետք է իրենց վրա վերցնեին հասարակական կազմակերպությունները»։ «Սովետական պետությունը չի կարող մահանալ և չի ուզում մահանալ»,— գանգատվում է «Նյու Յորք թայմսը»։ «Պետության մահացման ոչ մի նշան չկա»,— կրկնում է Լոնդոնի «Թայմսը»։

Հուզիչ է, իհարկե, կապիտալիզմի գաղափարախոսների նման հոգատարությունը այն բանի նկատմամբ, որ մեր սոցիալիստական պետությունը զարգանա մարքս-լենինյան ուսմունքին համապատասխան։ Բայց, իսկն ասած, նրանց տագնապները իզուր են։ Զարգացումն ընթանում է հենց այն ուղղությամբ, որը կանխատեսել են մարքսիզմի կլասիկները և որն իր հիմնարար փաստաթղթերում արձանագրել է մեր կուսակցությունը։

Բուրժուական լագերին պատկանող մեր քննադատները (իսկ նրանց հետ, անկեղծորեն ասած, նաև միջազգային բանվորական շարժման շարքերում գտնըվող ընկերներից ոմանք) չեն տեսնում կամ չեն ուզում տեսնել գլխավորը՝ մեր պետական և հասարակական զարգացման դիալեկտիկան։ Դրա էությունն այն է, որ սոցիալիստական պետության զարգացման և կատարելագործման համեմատ միլիոնավոր քաղաքացիներ ավելի ու ավելի ակտիվորեն են մասնակցում իշխանության, ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքին, արտադրության և բաշխման կառավարմանը, սոցիալական և կուլտուրական քաղաքականությանը, արդարադատության իրականացմանը։ Մի խոսքով, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման համեմատ տեղի է ունենում մեր պետականության աստիճանական վերաճում կոմունիստական հասարակական ինքնավարության։ Այդ պրոցեսը, իհարկե, տևական է, բայց առաջ է գնում անշեղորեն։ Եվ մենք վստահ ենք. Սովետական Միության նոր

Սահմանադրությունը լավ կծառայի կոմունիստական շինարարության այդ կարևոր նպատակի իրականացմանը։ (Երկարատև ծափահարություններ)։

## III.

Ընկերնե՛ր, նոր Սահմանադրությունը իրավացիորեն անվանում են զարգացած սոցիալիստական հասարակության կյանքի օրենք։ Հենց այդպիսի հասարակություն է ստեղծվել Սովետական Միությունում։ Հենց այդպիսի զարգացած, հասուն սոցիալիստական հասարակություն է հաջողությամբ ստեղծվում սոցիալիստական ընկերակցության նաև մի շարք ուրիշ երկրներում։ Եվ շատ կարևոր է լավ պատկերացնել նրա բնորոշ առանձնահատկությունները, նրա տեղը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման պատմական պրոցեսում։

Կհիշեցնեմ, որ սովետական իշխանության դեռ ամենաառաջին տարիներին Լենինը, հայացք գցելով ապագային, խոսում և գրում էր «պատրաստի», «լիակատար», «զարգացած» սոցիալիզմի՝ որպես սոցիալիստական շինարարության հեռանկարի, նպատակի մասին։

Հիմա այդ նպատակը իրականացված է։ Սովետական Միության, իսկ նրանից հետո նաև եղբայրական երկրների փորձը ցույց տվեց, որ սոցիալիզմի հիմքերի ստեղծումը, այսինքն՝ շահագործող դասակարգերի վերացումը, ժողովրդական տնտեսության բոլոր սեկտորներում հանրային սեփականության հաստատումը դեռ թույլ չեն տալիս դեպի կոմունիզմ անմիջական անցում սկսելու։ Հաղթանակած սոցիալիզմը պետք է անցնի հասունացման որոշակի աստիճաններով, և միայն զարգացած սոցիալիստական հասարակությունն է հնարավորություն տալիս ձեռնամուխ լինելու կոմունիստական շինարարությանը։ Ընդ որում, ինչպես մենք հիմա գիտենք, սոցիալիզմի զարգացումը, կատարելագործումը ոչ պակաս բարդ, ոչ պակաս պատասխանատու խնդիր է, քան նրա հիմքերի ստեղծումը։

Մի քանի արտահայտիչ թվեր պատկերացում են տալիս այն մասին, թե ինչպիսի տարածություն է բաժանում մեր երկրում սոցիալիզմի զարգացման ներկա փուլը նրա սկզբնական փուլից։ Այժմ 1977 թվականի պայմաններում մեկ ամիս էլ չի պահանջվում այնպիսի ծավալի հանրային համախառն արտադրանք ստանալու համար, որքան արտադրվել է ամբողջ 1936 թվականին։ Այդ ժամանակվանից անցած տարիներին նյութական արտադրության ճյուղերում աշխատանքի ֆոնդազինվածությունը մեծացել է 14 անգամ, արդյունաբերության մեջ աշխատանքի էներգազինվածությունը՝ գրեթե 8 անգամ, իսկ գյուղատնտեսության մեջ՝ ավելի քան 15 անգամ։

Անճանաչելիորեն փոխվել են ոչ միայն տեխնիկան, այլև այդ տեխնիկային տիրապետող մարդիկ։ Այժմ բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունի բանվորների 73,2 տոկոսը, իսկ 40 տարի առաջ՝ ութ տոկոսից էլ պակաս։ Այդ նույն ժամանակամիջոցում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվը արդյունաբերության մեջ մեծացել է 34 անգամ, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 47 անգամ։

Սովետական մարդկանց կենսամակարդակը նույնպես բոլորովին փոխվել է։ Ահա ընդամենը երկու օրինակ։ 1936 թվականին մեզ մոտ շահագործման են հանձնվել 14,9 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, իսկ 1977 թվականին կհանձնվի ավելի քան 110 միլիոն քառակուսի մետրը։ 1936 թվականին սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումները և արտոնությունները բնակչության մեկ շնչի հաշվով կազմում էին 21 ռուբլի, իսկ այս տարի՝ 382 ռուբլի։

Ինչպես տեսնում եք, տարբերությունը հսկայական է։ Բայց չէ որ ամեն բան թվերով չես արտահայտի։ Այդպիսի մասշտաբի նյութական և կուլտուրական առաջադիմության շնորհիվ մեզ մոտ զգալիորեն մերձեցան աշխատանքի և կյանքի պայմանները քաղաքում և գյուղում, ֆիզիկական և մտավոր աշխատանքի ոլորտում։ Արդեն սոցիալիզմի օրոք աճեցին ու դաստիարակվեցին սովետական մարդկանց նոր սերունդներ, ձևավորվեց նրանց սոցիալիստական գիտակցությունը։



Սրանք են այն պրոցեսները, որոնց շնորհիվ մենք իրավունք ստացանք ասելու, որ այժմ ՍՍՀՄ-ում կառուցվել է զարգացած սոցիալիզմ՝ նոր հասարակության հասունության այնպիսի փուլ, երբ ավարտվում է ամբողջությամբ վերցված հասարակական հարաբերությունների վերակառուցումը՝ սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմունքներով։ Այստեղից էլ՝ լիակատար ասպարեզը սոցիալիզմի օրենքների գործողության համար, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում նրա առավելությունների ի հայտ գալու համար։ Այստեղից էլ՝ սոցիալական սիստեմի օրգանական ամբողջականությունը և դինամիզմը, նրա քաղաքական կայունությունը, ներքին անխորտակ միասնությունը։ (Ծափահարություններ)։ Այստեղից էլ՝ բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների հարաճուն մերձեցումը և մեզանում մարդկանց սոցիալական ու ինտերնացիոնալ՝ պատմականորեն նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումը։ (Ծափահարություններ)։ Այստեղից էլ նաև՝ նոր, սոցիալիստական կուլտուրայի ստեղծումը, նոր սոցիալիստական ապրելակերպի հաստատումը։ (Ծափահարություններ)։

Անշուշտ, զարգացած կարող է համարվել միայն այն սոցիալիստական հասարակությունը, որը հենվում է հզոր, առաջավոր ինդուստրիայի, խոշոր, բարձր մեքենայացված գյուղատնտեսության վրա, որ թույլ է տալիս գործնականորեն հասարակական զարգացման գլխավոր և անմիջական նպատակը դարձնել քաղաքացիների բազմազան պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումը։ Մեր երկրի պայմաններում հասուն սոցիալիզմի համար անհրաժեշտ այդպիսի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը հարկ եղավ լուծել արդեն այն բանից հետո, երբ ստեղծվել էին նոր հասարակարգի հիմքերը։ Ըստ երևույթին, այդ նույն բանը պետք է անեն նաև մյուս երկրները, որոնք կանգնել են սոցիալիզմի ուղու վրա, ունենալով թույլ կամ միջակ զարգացած էկոնոմիկա։

Այն երկրներում, որտեղ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի պահին արդեն կլինեն բարձր զարգացած արտադրողական ուժեր, դրությունը այլ կլինի։ Բայց այնտեղ նույնպես հարկ կլինի լուծել հասուն սոցիալիզմի կառուցման այնպիսի բարդ խնդիրներ, ինչպիսիք են սոցիալիստական հիմունքներով ամբողջ հասարակական կյանքի կազմակերպման դժվարին գիտության, այդ թվում ժողովրդական տնտեսության պլանավորման ու ղեկավարման գիտության տիրապետումը, ինչպես նաև քաղաքացիների սոցիալիստական գիտակցության դաստիարակումը։

Մի խոսքով, ինչպիսիք էլ լինեն սոցիալիզմ կառուցող երկրների առանձնահատուկ պայմանները, սեփական հիմքի վրա նրա կատարելագործման փուլը, հասուն, զարգացած սոցիալիստական հասարակության փուլը սոցիալական վերափոխումների անհրաժեշտ օղակն է, զարգացման համեմատաբար տևական ժամանակահատվածը կապիտալիզմից դեպի կոմունիզմ տանող ճանապարհին։ Ըստ որում զարգացած սոցիալիզմի բոլոր հնարավորությունների իմացությունը և օգտագործումը միաժամանակ նաև անցում է դեպի կոմունիզմի կառուցումը։ Ապագան ներկայի սահմաններից դուրս չէ։ Ապագան ներկայի մեջ է։ Եվ, լուծելով այսօրվա՝ սոցիալիստական օրվա խնդիրները, մենք հետզհետե թևակոխում ենք վաղվա օրը՝ կոմունիստական օրը։ (Ծափահարություններ)։

Սոցիալիստական հասարակական հարաբերությունների լիակատար հաղթանակի հետևանքներից մեկը, ինչպես ցույց է տալիս մեր փորձը, պրոլետարիատի դիկտատուրայի պետության աստիճանական վերաճումն է համաժողովրդական պետության։ Այսօր Սովետական Միությունը Հոկտեմբերի ծնունդը հանդիսացող պետության զարգացման օրինաչափ փուլն է, որը հատուկ է հասուն սոցիալիզմին։ Հետևաբար, թե՛ պետական մարմինների խնդիրները և թե՛ նրանց կառուցվածքը, ֆունկցիաները, գործունեության կարգը պետք է համապատասխանեն հասարակության զարգացման ձեռք բերված փուլին։

Այդ համապատասխանությունը հենց ապահովվում է ՍՍՀՄ նոր Սահմանադրությամբ։ Ընդունելով այն, մենք կարող ենք լիակատար իրավունքով ասել. կատարված է ևս մի կարևոր գործ, որը երկիրը մոտեցնում է մեր կուսակցության և մեր ժողովրդի մեծ նպատակների իրականացմանը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Ուղիղ 20 տարի առաջ, այս նույն օրը, հոկտեմբերի 4-ին, կատարվեց մարդկության առաջին քայլը դեպի տիեզերք։ Այդ մասին ազդարարեց երկրի արհեստական արբանյակը, որը ստեղծվել էր սովետական մարդկանց խելքով և ձեռքերով։ (Ծափահարություններ)։ Ամբողջ աշխարհը տեսավ, թե ինչի է ընդունակ «Գիտության, պրոլետարիատի և տեխնիկայի ներկայացուցիչների դաշինքը», որի մասին երազում էր Վլադիմիր Իլյիչ Լենինը սովետական իշխանության արշալույսին։ Այդ դաշինքը իր մարմնացումն է գտել մեր երկրում սոցիալիստական շինարարության պրակտիկայում, դարձել զարգացած սոցիալիզմի ակնառու մեծագործությունների կարևորագույն աղբյուրը։

Սահմանադրության նախագծի քննարկումը կրկին ցույց տվեց, թե որքան ամուր և կենարար է սովետական հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի, բոլոր ազգերի և ազգությունների, բոլոր սերունդների միասնությունը, որոնք համախմբված են կոմունիստական կուսակցության շուրջը։ (Երկարատև ծափահարություններ)։

Քաղաքի և գյուղի միլիոնավոր և միլիոնավոր աշխատավորներ պաշտպանեցին նոր հիմնական օրենքը թե՛ խոսքով և թե՛ գործով։ Նրանք նախագծի յուրաքանչյուր տողը ստուգում էին սեփական գործնական աշխատանքով, իրենց աշխատավորական կոլեկտիվների գործերով։ Նրանք ստանձնում էին ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ, ճշգրտումներ մտցնում պլանների մեջ, գտնում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման նոր ռեզերվներ, իրենց նոր Սահմանադրությունը դիմավորեցին աշխատանքային մեծ խիզախումներով։ Մի խոսքով, մեր ժողովուրդը իրեն նորից դրսևորեց որպես իր սոցիալիստական հայրենիքի լիիշխան տեր։ Փառք ու պատիվ կոմունիզմ կառուցող սովետական հերոս ժողովրդին։ (Բուռն ծափահարություններ)։

Թույլ տվեք, ընկեր դեպուտատնե՛ր, վստահություն հայտնել, որ Գերագույն սովետը, քննարկելով ՍՍՀՄ Սահմանադրության նախագիծը, կընդունի այն և դրանով իսկ սովետական ժողովրդին կզինի կոմունիզմի կառուցման նոր հզոր զենքով։ (Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում)։

---

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՀԱՂՈՐԴՈՒՄԸ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ընկերնե՛ր։

ՍՍՀՄ Գերագույն սովետի երկու պալատներում էլ ավարտվեց ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի քննարկումը։ Ելույթ ունեցան 92 դեպուտատներ, որոնք ներկայացնում են աշխատավորության բոլոր խավերը, բոլոր միութենական և բազմաթիվ ինքնավար հանրապետություններ։

Ձեր որոշմամբ ստեղծված խմբագրական հանձնաժողովը մեծ գոհունակությամբ նշում է, որ ելույթ ունեցած բոլոր դեպուտատները, ինչպես նաև իրենց առաջարկությունները գրավոր ձևով հանձնած դեպուտատները, ջերմորեն պաշտպանեցին Սահմանադրության նախագիծը։ Արտահայտելով իրենց միլիոնավոր ընտրողների կարծիքը, նրանք պարզորոշ ու վճռականորեն արտահայտվեցին Սահմանադրության ընդունման օգտին։ (Ծափահարություններ)։ Դա տեղի ունեցած հանգամանալի քննարկման գլխավոր արդյունքն է։

Դրա հետ մեկտեղ մի շարք դեպուտատներ առաջարկեցին մի քանի ուղղումներ և լրացումներ։ Մանրակրկիտ կերպով կշռադատելով այդ առաջարկությունները, խմբագրական հանձնաժողովը այն հետևության հանգեց, որ դրանց մեծ մասը կարելի կլիներ հաշվի առնել։ Դրանից մեր Սահմանադրությունը միայն կշահի։

Այսպես, Մոսկվայի մարզից պողպատ ձուլող, դեպուտատ Վ. Դ. Պոստնիկովը, չսահմանափակվելով Սահմանադրության մեջ այն գույքի տեսակների թվարկումով, որը կարող է քաղաքացու անձնական սեփականություն լինել, առաջարկում է ընդգծել, որ անձնական սեփականության հիմքը կազմում են աշխատանքային եկամուտները։ Կարծում եմ, դա իրավացի ճշգրտում է։ Այն արտահայտում է մեր սկզբունքային վերաբերմունքը անձնական սեփականության բնույթի ու ծագման նկատմամբ սոցիալիզմի օրոք, որտեղ թե՛ ամբողջ ժողովրդի, թե՛ յուրաքանչյուր մարդու բարեկեցության աճի աղբյուրը հանրօգուտ աշխատանքն է։

Մեսխիայից և Լենին-
Վրաստանից մեխանիզատոր, դեպուտատ Վ. Գ. Մեւումարգիայի և Լենին-
գրադից գլանող բանվոր, դեպուտատ Ի. Յա. Պրոկոֆևի ելույթներում այն միտքն արտահայտվեց, որ անհրաժեշտ է Սահմանադրության մեջ արձանագրել, որ սովետական պետությունը խրախուսում է նորարարությունը, աշխատանքի նկատմամբ՝ ստեղծագործական վերաբերմունքը, որ նա կազմակերպում է գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ։

Ամենքիս համար պարզ է աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի և մասսայական տեխնիկական ստեղծագործության հսկայական նշանակությունը ինչպես երկրի էկոնոմիկայի զարգացման, այնպես էլ մարդկանց կոմունիստական դաստիարակության համար։

Ուստի և արված առաջարկություններին կարելի է համաձայնել։ Այդ նպատակով անհրաժեշտ ուղղումներ են մտցվում 14-րդ և 47-րդ հոդվածների մեջ։

Գունավոր մետալուրգիայի մինիստր, դեպուտատ Պ. Ֆ. Լոմակոն առաջարկեց Սահմանադրության մեջ նշել, որ սովետական պետությունը մշտապես կատարելագործում է էկոնոմիկայի ղեկավարման ձևերն ու մեթոդները։ Բացի դրանից, Մագնիտոգորսկի մետալուրգիական կոմբինատի դիրեկտոր, դեպուտատ Դ. Պ. Գալկինի կարծիքով, կարելի էր նշել, որ մեր էկոնոմիկան զարգանում է ոչ միայն տնտեսական հաշվարկի, շահույթի և ինքնարժեքի, այլև տնտեսական այլ լծակների ու խթանների ակտիվ օգտագործման շնորհիվ։

Այս առաջարկությունները ճիշտ են արտացոլում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը նպատակամղված՝ կուսակցության տնտեսական ստրատեգիայի էությունը, և դրանք լիովին կարելի է հաշվի առնել Սահմանադրության մեջ։

Կիրովոգրադի մարզից տրակտորային բրիգադի բրիգադավար, դեպուտատ Ա. Վ. Գիտալովը առաջարկություն մտցրեց Սահմանադրության մեջ պարզ ու որոշակի ասել այն մասին, որ կոլտնտեսությունները, ինչպես նաև մյուս հողօգտագործողները պարտավոր են արդյունավետ օգտագործել հողը, հոգատարությամբ վերաբերվել նրան, բարձրացնել նրա բերրիությունը։ Կարծում եմ, որ ուկրաինական փառաբանված հողագործի այս առաջարկությունը պետք է պաշտպանել։ Հողը մեր արժեքավորագույն հարստությունն է, բայց այդ հարստությունը պետք է խելացիորեն օգտագործել։ Ինչպես ասում են, աշխատավորի համար հողը մայրն է, իսկ լոդրի համար՝ խորթ մայրը։

Կարևոր հարց բարձրացրին սովետական կանանց կոմիտեի նախագահ, դեպուտատ Վ. Վ. Նիկոլաևա-Տերեշկովան և Իվանովոյի գործվածքային ֆաբրիկայի դիրեկտոր, դեպուտատ Զ. Պ. Պուխովան։ Նրանք առաջարկում են լրացնել 35-րդ հոդվածը, նրանում ասելով փոքրահասակ երեխաներ ունեցող կանանց աշխատաժամանակը աստիճանաբար կրճատելու մասին։ Մեր կարծիքով, այս առաջարկությունը կարելի է ընդունել։ Այն համապատասխանում է կուսակցության և սովետական պետության գծին՝ տնտեսական անհրաժեշտ նախադրյալների ստեղծման համեմատ հետևողականորեն բարելավելու կնոջ՝ որպես աշխատավորի, երեխաների մոր ու դաստիարակի, որպես տնային տնտեսուհու դրությունը։

Խմբագրական հանձնաժողովի կարծիքով, պետք է նաև համաձայնել Պոլտավայի մարզից գիշերօթիկ դպրոցի դիրեկտոր, դեպուտատ Մ. Կ. Անդրիևսկու առաջարկությանը 42-րդ հոդվածը ճշգրտելու մասին, նրա մեջ պարզորոշ ասելով, որ երեխաների աշխատանքի արգելումը նպատակ ունի պահպանել երեխաների առողջությունը, բայց ոչ մի չափով չի բացառում աշխատանքային ուսուցումն ու դաստիարակությունը, որը եղել և մնում է մեր կարևորագույն խնդիրը։

Դեպուտատներ Ա. Բ. Չակովսկու և Ռ. Գ. Համզատովի ելույթներում ցանկություն հայտնվեց փոքր-ինչ ավելի լայնորեն բացահայտել կուլտուրայի նվաճումներից օգտվելու և ստեղծագործության ազատության՝ սովետական քաղաքացիների իրավունքը։ Գրողներն առաջարկում են նշել, որ այդ իրավունքն ապահովվում է հեռուստատեսության և ռադիոյի, գրահրատարակչական գործի և պարբերական մամուլի, անվճար գրադարանների ցանցի զարգացմամբ և հատկապես հիշատակել գրականության դերի մասին։ Այս ճշգրտումները իրավացի են թվում։

Դրանց է հարում նաև Ղազախստանից ուսուցչուհի, դեպուտատ Մ. Տ. Ամանտաևայի ցանկությունը՝ արձանագրելու, որ հոգևոր արժեքները պետք է օգտագործվեն սովետական մարդկանց բարոյական և գեղագիտական դաստիարակության համար։ Սահմանադրության մեջ այդ դրույթները մտցնելը ավելի լրիվ ցույց կտա պետության խնդիրները կուլտուրայի և աշխատավորների կոմունիստական դաստիարակության բնագավառում։



Խմբագրական հանձնաժողովի կարծիքով, պետք է ընդունել նաև դեպուտատ Գրիգորի Վասիլևիչ Ռոմանովի և Բելոռուսիայից շրջգործկոմի նախագահ, դեպուտատ Կ. Ի. Լուշնևսկու առաջարկությունը Սահմանադրությունը լրացնելու այն դրույթով, որ ժողովրդական դեպուտատների սովետները և նրանց կողմից ստեղծվող մարմինները պետք է բնակչությանը սիստեմատիկաբար տեղյակ պահեն իրենց աշխատանքի և ընդունված որոշումների մասին։ Դրանով կընդգծվի սովետների գործունեության կարևորագույն սկզբունքը, որոնք, Լենինի խոսքերով ասած, ներկայացնում են «մի իշխանություն, որը բաց է բոլորի համար, ամեն ինչ անում է մասսայի աչքի առաջ»։

Կուսակցության Ստավրոպոլի երկրկոմի առաջին քարտուղար, դեպուտատ Մ. Ս. Գորբաչովը առաջարկում է, որ հարկավոր է ավելի լրիվ ձևով ցույց տալ ՍՍՀՄ Գերագույն սովետի ու նրա պալատների հանձնաժողովների հարաբերությունները մյուս պետական և հասարակական մարմինների հետ, ավելի հըստակորեն սահմանել այն հանձնարարականների կենսագործման կարգը, որ տալիս են հանձնաժողովները։ Այդ նպատակներով կարելի կլիներ 125-րդ հոդվածում նշել, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի և նրա պալատների հանձնաժողովների հանձնարարականները ենթակա են պարտադիր քննարկման պետական և հասարակական մարմինների, հիմնարկների և կազմակերպությունների կողմից։

Սրանք են, ընկերներ, խմբագրական հանձնաժողովի հիմնական նկատառումները այն ուղղումների առթիվ, որ մտցրել են դեպուտատները Գերագույն սովետում ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի քննարկման ժամանակ։ Հանձնաժողովը ձեր քննարկմանն է ներկայացրել նախագծի տեքստը՝ նրա մեջ մտցնելով բոլոր առաջարկվող ուղղումները։

Կարծում եմ, որ հիմա ՍՍՀՄ Գերագույն սովետը լիովին կարող է ձեռնամուխ լինել մեր պետության նոր հիմնական օրենքի հաստատմանը։ (Երկարատև ծափահարություններ)։

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ

*Ընկեր դեպուտատնե՛ր։*

*Արտահայտելով սովետական ժողովրդի կամքը, կատարելով նրա հանձնարարությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետը ընդունեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության նոր Սահմանադրությունը։* (Ծափահարություններ)։ *Հաստատվեց աշխարհում առաջին համաժողովրդական սոցիալիստական պետության հիմնական օրենքը։* (Ծափահարություններ)։ *Սահմանադրականորեն վավերագրված է դեպի կոմունիզմ մեր առաջընթացի նոր պատմական բնագիծը՝ զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը։* (Երկարատև ծափահարություններ)։

*Կանցնեն տարիներ, տասնամյակներ, բայց հոկտեմբերյան այս օրը ընդմիշտ կմնա ժողովրդի հիշողության մեջ որպես ժողովրդապետության լենինյան սկզբունքների իսկական հաղթանակի վառ վկայություն։* (Ծափահարություններ)։ *Եվ որքան ավելի առաջ ընթանա մեր հասարակությունը կոմունիզմի ուղիով, այնքան ավելի լրիվ կբացահայտվեն նոր Սահմանադրության մեջ արտացոլված սոցիալիստական դեմոկրատիայի՝ ժողովրդի իշխանության, ժողովրդի շահերն արտահայտող իշխանության վիթխարի ստեղծագործական հնարավորությունները։* (Ծափահարություններ)։

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը կարծում են, որ հիմքեր կան Սովետական Միության նոր Սահմանադրության ընդունման օրը մեր երկրում նշելու որպես սովետական ժողովրդի կյանքի խոշորագույն իրադարձություններից մեկը։ Ուստի ձեր քննարկմանն է դրվում հոկտեմբերի 7-ը համաժողովրդական տոն՝ ՍՍՀՄ Սահմանադրության օր հայտարարելու օրենքի նախագիծը։* (Ծափահարություններ)։

*Այժմ, երբ Սահմանադրությունը հաստատված է, անհրաժեշտ է հատուկ օրենքով հստակ որոշել այն գործողության մեջ մտցնելու կարգը։ Օրենքի նախագիծը ներկայացված է ձեր քննարկմանը։ Դրանով առաջարկվում է սահմանել, որ մինչև Սահմանադրության ուժի մեջ մտնելը ընդունված մյուս բոլոր օրենսդրական ակտերը պահպանում են իրենց գործողությունը, որքանով դրանք չեն հակասում ՍՍՀՄ նոր Սահմանադրությանը։*

*Միաժամանակ առաջարկվում է, հաշվի առնելով ընդունված Սահմանադրության դրույթները, երկարաձգել ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի լիազորությունները և համապատասխանաբար փոփոխել մինչև նոր Սահմանադրության ընդունումը ընտրված պետական իշխանության հանրապետական ու տեղական մարմինների լիազորությունների ժամկետները։*

*Բացի դրանից, նախատեսվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարել Սահմանադրության տեքստից բխող անհրաժեշտ օրենսդրական ակտերի մշակումը, ինչպես նաև ժողովրդական դեպուտատների սովետներին, մինիստրություններին ու գերատեսչություններին, պետական ու հասարակական մյուս մարմինների ղեկավարներին հանձնարարություններ տալ քննության առնելու ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման ընթացքում այդ մարմինների գործունեության հետ կապված հարցերի վերաբերյալ քաղաքացիներից ստացված առաջարկություններն ու դիտողությունները և միջոցներ ձեռնարկել դրանց իրականացման ուղղությամբ։*

*Այդ օրենքի ընդունումով, այսինքն՝ այսօրվանից Սահմանադրությունը սկսում է գործել, ապրել, աշխատել։* (Բուռն, երկարատև ծափահարություններ)։



*Ի՞նչ է նշանակում դա։*

*Դա նշանակում է, որ Սահմանադրության ամեն մի հոդված, նրա ամեն մի դրույթ պետք է ամենուրեք լիովին մտնեն պետական բոլոր մարմինների, բոլոր պաշտոնատար անձանց, բոլոր սովետական քաղաքացիների ամենօրյա գործունեության կենդանի պրակտիկայի մեջ։ Մենք Սահմանադրությունը ցուցադրանքի համար չէ, որ ստեղծել ենք։ Այն պետք է կատարվի և կկատարվի իր բոլոր մասերով։ Այն պետք է դառնա և կդառնա սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու խորացման հզոր միջոց։* (Ծափահարություններ)։

*Մենք բոլորս, ընկերներ, տեսանք, թե ստեղծագործական նախաձեռնության, աշխատանքային և քաղաքական ակտիվության ինչպիսի մեծ հորձանք առաջացրեց նոր Սահմանադրության բուն քննարկումը։ Եվ հարկավոր է, որ այդ ակտիվությունը ոչ թե թուլանա, այլ է՛լ ավելի զարգանա, ընդունի իրենց համաժողովրդական պետության գործերին քաղաքացիների է՛լ ավելի լայն մասնակցության կոնկրետ ձևեր։ Մեր կուսակցությունը միշտ հոգ է տարել և այսուհետև էլ մշտապես հոգ կտանի, որ աշխատավորները ոչ թե սոսկ ունենան հասարակության կառավարմանը մասնակցելու Սահմանադրությամբ ընձեռված հնարավորություններ, այլ գործնականում, ռեալ կերպով մասնակցեն դրան։*

*Մեծ Լենինը կոմունիստներին սովորեցնում էր աշխատավորներին անհրաժեշտ օգնություն ցույց տալ իրենց սոցիալիստական լայն իրավունքների և ազատությունների իրականացման գործում։ Կուսակցությունը հիշում, հետևողականորեն կենսագործում է նաև լենինյան այդ պատգամը։*

*Մենք ուզում ենք, որ ՍՍՀՄ քաղաքացիները լավ իմանան իրենց իրավունքներն ու ազատությունները, դրանց իրականացման ուղիներն ու մեթոդները, որ նրանք կարողանան այդ իրավունքներն ու ազատությունները կիրառել ի շահ կոմունիզմի կառուցման, պարզորոշ հասկանան դրանց անխզելի կապը իրենց քաղաքացիական պարտականությունների բարեխիղճ կատարման հետ։ Դրան աջակցելը, յուրաքանչյուր քաղաքացու մեջ քաղաքական բարձր կուլտուրայի մշակմանը օգնելը կուսակցական, պետական և հասարակական կազմակերպությունների կարևոր խնդիրն է, որոնք պատասխանատու են աշխատավորների կոմունիստական դաստիարակության համար։* (Ծափահարություններ)։

*Սահմանադրության ուժի մեջ մտնելը այնուհետև ենթադրում է օրենսդրական աշխատանքների լայն ծրագրի կատարում։ Այդ ծրագիրը ներառնում է, ինչպես ես արդեն առիթ եմ ունեցել ասելու, մի շարք նոր օրենսդրական ակտերի նախապատրաստում, որոնց ընդունումը ուղղակի նախատեսված է Սահմանադրությամբ կամ բխում է նրանից։ Դրանք այնպիսի կարևորագույն ակտեր են, ինչպիսիք են Գերագույն սովետի ռեգլամենտները, ընտրությունների օրենքը, քաղաքացիության, միջազգային պայմանագրերի կնքման, կատարման և չեղյալ հայտարարման կարգի մասին օրենքները, ինչպես նաև մի շարք ուրիշ ակտեր, որոնց նախագծերը կպատրաստվեն Գերագույն սովետի նախագահությունում և պալատների մշտական հանձնաժողովներում։*

*Հարկ կլինի մեծ աշխատանք կատարել կառավարման մարմինների մասին օրենսդրության զարգացման բնագավառում։ Պետք է մշակվի այնպիսի կարևոր ակտ, ինչպիսին է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մասին օրենքը։ Ընդհանրապես պետք է մտածել այն մասին, թե ինչպես օրենսդրության մեջ ավելի լավ արտացոլել մեր կուսակցության XXV համագումարի նախատեսած միջոցառումները էկոնոմիկայի կառավարման, համապետական, միջճյուղային և տերիտորիալ խոշոր պրոբլեմների կոմպլեքսային լուծման մեթոդները կատարելագործելու, ժողովրդական տնտեսության համասեռ ճյուղերի խմբերի կառավարման սիստեմներ ստեղծելու վերաբերյալ։*

*Սահմանադրության ընդունումը անհրաժեշտ է դարձնում մի շարք փոփոխություններ և լրացումներ մտցնել ընթացիկ օրենսդրության մեջ։ Այդ աշխատանքը կպահանջի որոշակի ժամանակ, բայց այն չպետք է ձգձգել։ Այստեղ ևս, ընկերներ, կարելի է և պետք է օգտագործել Սահմանադրության նախագծի*

քննարկման ընթացքում աշխատավորների արած բազմաթիվ կոնկրետ դիտողություններն ու ցանկությունները։

Ուշագրավ են մասնավորապես այն առաջարկությունները, որ ընդունվեն բնակարանային օրենսդրության միութենական հիմունքներ և հանրապետական բնակարանային օրենսգրքեր, որ նորմատիվ ակտերում վավերագրվեն աշխատավորական կոլեկտիվների իրավունքները, երեխաների դաստիարակման և ուսուցման ուղղությամբ ծնողների պարտականությունները և այլն։

Օրենսդրության կատարելագործումը կշոշափի, իհարկե, ոչ միայն միութենական, այլև հանրապետական օրենսդրությունը։ Այդ աշխատանքի հիմքը կդառնան միութենական և ինքնավար հանրապետությունների նոր սահմանադրությունները, որոնց նախագծերն արդեն այժմ պատրաստվում են։

Սովետական քաղաքացիների սոցիալ-քաղաքական և աշխատանքային ակտիվության վերելքը, մեր օրենսդրության հետագա զարգացումը և նորացումը նոր, է՛լ ավելի մեծ պահանջներ են ներկայացնում իշխանության բոլոր մարմիններին։ Այստեղից բխում է մեր բոլոր պետական մարմինների՝ կենտրոնական և տեղական մարմինների, բոլոր մինիստրությունների և գերատեսչությունների, հիմնարկների և կազմակերպությունների աշխատանքի ոճն ու մեթոդները զգալիորեն բարելավելու անհրաժեշտությունը։

Ընդսմին, հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել յուրաքանչյուր օղակի, պետական ապարատի յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության և նախաձեռնության բարձրացմանը, պլանային, ֆինանսական և ընդհանրապես պետական կարգապահության խստիվ պահպանմանը, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության, նրանց կարիքների և հոգսերի նկատմամբ է՛լ ավելի զգայուն վերաբերմունքին։

Մեր Սահմանադրության ողջ իմաստը, նրա յուրաքանչյուր տառը նպատակամղված են ժողովրդական մասսաների պատմական ստեղծագործության բոլոր ամենայնի պաշտպանությանն ու անշեղ զարգացմանը։ Մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացումը անխզելիորեն կապված է սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման հետ։ Դրա վկայություններից մեկը դարձան գործարանների, ֆաբրիկաների, կառույցների, կոլտնտեսությունների կոլեկտիվների աշխատանքային նոր հաղթանակների մասին այն մեծաթիվ զեկույցները, որոնք այս օրերին ստացվեցին Գերագույն սովետի նստաշրջանի հասցեով։ Դա աշխատավորների ամենածանրակշիռ խոսքն է ի պաշտպանություն իրենց նոր Սահմանադրության։ Փառք ու պատիվ հնգամյակի առաջավորներին։ (Երկարատև ծափահարություններ)։

Վերջապես, ընկերներ, նոր Սահմանադրության ուժի մեջ մտնելը նշանակում է, որ է՛լ ավելի է մեծանում մեր լենինյան կուսակցության՝ սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի պատասխանատվությունը։ (Ծափահարություններ)։ Կուսակցության այդ դերի սահմանադրական վավերագրումը ոչ մի արտոնություն չի տալիս նրա անդամներին։ Ընդհակառակը, դա է՛լ ավելի մեծ պարտականություններ է դնում նրանց վրա։ Թույլ տվեք ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և մեր ամբողջ կուսակցության անունից ձեզ, ընկեր դեպուտատներ, հավաստիացնել, որ սովետական կոմունիստները, որտեղ էլ աշխատելիս լինեն, միշտ կհիշեն այդ բանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Հոկտեմբերի ուղիով 60-ամյա զարգացման ամբողջ փորձը հաստատում է, որ մեր ուժը կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունն է։ (Բուռն ծափահարություններ)։ Դա սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծաղկման, մեր բոլոր հաղթանակների աղբյուրն է։ (Ծափահարություններ)։ Դա կոմունիզմի լիակատար հաղթանակի երաշխիքն է։ Եկեք, ուրեմն, ամեն բան անենք է՛լ ավելի ամրապնդելու և խորացնելու այդ մեծ միասնությունը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում)։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ **ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ**

## (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔ)

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը կատարեցին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները՝ Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, տապալեց կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը, փշրեց ճնշման շղթաները, հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա և ստեղծեց սովետական պետություն՝ նոր տիպի պետություն, որը հեղափոխական նվաճումների պաշտպանության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հիմնական գործիքն է։ Սկսվեց մարդկության համաշխարհային պատմական շրջադարձ կապիտալիզմից դեպի սոցիալիզմ։

Հաղթանակ տանելով քաղաքացիական պատերազմում, ետ մղելով իմպերիալիստական ինտերվենցիան, սովետական իշխանությունն իրագործեց խորագույն սոցիալ-տնտեսական վերափոխություններ, մեկընդմիշտ վերջ տվեց մարդու կողմից մարդու շահագործմանը, դասակարգային հակամարտություններին և ազգային թշնամանքին։ ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների միավորումը բազմապատկեց երկրի ժողովուրդների ուժերն ու հնարավորությունները սոցիալիզմի կառուցման գործում։ Հաստատվեցին արտադրության միջոցների հանրային սեփականություն, իսկական դեմոկրատիա աշխատավոր մասսաների համար։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց սոցիալիստական հասարակություն։

Սոցիալիզմի ուժի վառ դրսևորումը դարձավ սովետական ժողովրդի, նրա զինված ուժերի անմար սխրագործությունը, որոնք պատմական հաղթանակ տարան Հայրենական մեծ պատերազմում։ Այդ հաղթանակն ամրապնդեց ՍՍՀՄ հեղինակությունն ու միջազգային դիրքերը, նոր բարենպաստ հնարավորություններ ստեղծեց ամբողջ աշխարհում սոցիալիզմի, ազգային ազատագրության, դեմոկրատիայի և խաղաղության ուժերի աճի համար։

Շարունակելով իրենց ստեղծարար գործունեությունը, Սովետական Միության աշխատավորները ապահովեցին երկրի արագ ու համակողմանի զարգացումը, սոցիալիստական հասարակարգի կատարելագործումը։ Ամրապնդվեցին ՍՍՀՄ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքը, ազգերի և ազգությունների բարեկամությունը։ Ստեղծվեց սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնություն, որի առաջատար ուժը բանվոր դասակարգն է։ Կատարելով պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրները՝ սովետական պետությունը դարձավ համաժողովրդական։ Աճեց կոմունիստական կուսակցության՝ ամբողջ ժողովրդի ավանգարդի, ղեկավար դերը։

ՍՍՀՄ-ում կառուցված է զարգացած սոցիալիստական հասարակություն։ Այդ փուլում, երբ սոցիալիզմը զարգանում է իր սեփական հիմքի վրա,

ավելի ու ավելի լրիվ են բացահայտվում նոր հասարակարգի ստեղծարար ուժերը, սոցիալիստական ապրելակերպի առավելությունները, աշխատավորներն ավելի ու ավելի լայնորեն են օգտվում հեղափոխական մեծ նվաճումների բարիքներից։

Դա մի հասարակություն է, որտեղ ստեղծված են հզոր արտադրողական ուժեր, առաջավոր գիտություն և կուլտուրա, որտեղ մշտապես աճում է ժողովրդի բարեկեցությունը, ավելի ու ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում անհատի համակողմանի զարգացման համար։

Դա սոցիալիստական հասուն հասարակական հարաբերությունների հասարակություն է, որտեղ բոլոր դասակարգերի և սոցիալական խավերի մերձեցման, բոլոր ազգերի ու ազգությունների իրավական ու փաստական հավասարության, նրանց եղբայրական համագործակցության հիման վրա կազմավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ։

Դա հայրենասեր և ինտերնացիոնալիստ աշխատավորների բարձր կազմակերպվածության, գաղափարայնության և գիտակցականության հասարակություն է։

Դա մի հասարակություն է, որի կյանքի օրենքը բոլորի հոգատարությունն է յուրաքանչյուրի բարօրության նկատմամբ և յուրաքանչյուրի հոգատարությունը՝ բոլորի բարօրության նկատմամբ։

Դա իսկական դեմոկրատիայի հասարակություն է, որի քաղաքական սիստեմն ապահովում է բոլոր հասարակական գործերի արդյունավետ կառավարումը, աշխատավորների ավելի ու ավելի ակտիվ մասնակցությունը պետական կյանքին, քաղաքացիների ռեալ իրավունքների և ազատությունների զուգակցումը նրանց պարտականությունների և հասարակության հանդեպ նրանց պատասխանատվության հետ։

Զարգացած սոցիալիստական հասարակությունը դեպի կոմունիզմ տանող ճանապարհի օրինաչափ փուլն է։

Սովետական պետության բարձրագույն նպատակը անդասակարգ կոմունիստական հասարակության կառուցումն է, որտեղ կզարգանա հասարակական կոմունիստական ինքնակառավարումը։ Համաժողովրդական սոցիալիստական պետության գլխավոր խնդիրներն են՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը և դրանց վերափոխումը կոմունիստական հարաբերությունների, կոմունիստական հասարակության մարդու դաստիարակումը, աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը, երկրի անվտանգության ապահովումը, խաղաղության ամրապնդմանն ու միջազգային համագործակցության զարգացմանն աջակցելը։

Սովետական ժողովուրդը՝

ղեկավարվելով գիտական կոմունիզմի գաղափարներով և հավատարիմ մնալով իր հեղափոխական ավանդույթներին,

հենվելով սոցիալիզմի սոցիալ-տնտեսական և քաղաքական մեծ նվաճումների վրա,

ձգտելով սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմանը,

հաշվի առնելով ՍՍՀՄ-ի, որպես սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բաղկացուցիչ մասի, միջազգային դրությունը և գիտակցելով իր ինտերնացիոնալ պատասխանատվությունը,

պահպանելով 1918 թվականի առաջին սովետական Սահմանադրության, ՍՍՀՄ 1924 թվականի Սահմանադրության և ՍՍՀՄ 1936 թվականի Սահմանադրության գաղափարների ու սկզբունքների հաջորդայնությունը,

վավերագրում է ՍՍՀՄ հասարակարգի և քաղաքականության հիմունքները, սահմանում քաղաքացիների իրավունքները, ազատություններն ու պարտականությունները, համաժողովրդական սոցիալիստական պետության կազմակերպման սկզբունքներն ու նպատակները և հռչակում դրանք սույն Սահմանադրության մեջ։



# I. ՍՍՀՄ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

## Գլուխ 1.
## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

*ՀՈԴՎԱԾ 1.* Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը համաժողովրդական սոցիալիստական պետություն է, որն արտահայտում է երկրի բանվորների, գյուղացիների և մտավորականության, բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների կամքն ու շահերը։

*ՀՈԴՎԱԾ 2.* ՍՍՀՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին։ Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք կազմում են ՍՍՀՄ քաղաքական հիմքը։

Մյուս բոլոր պետական մարմինները ենթակա են ժողովրդական դեպուտատների սովետների վերահսկողությանը և հաշվետու են նրանց։

*ՀՈԴՎԱԾ 3.* Սովետական պետության կազմակերպումն ու գործունեությունը կառուցվում են դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքին համապատասխան՝ պետական իշխանության բոլոր մարմինների ընտրովիությունը վարից վեր, նրանց հաշվետու լինելը ժողովրդին, վերադաս մարմինների որոշումների պարտադրականությունը ստորադաս մարմինների համար։ Դեմոկրատական ցենտրալիզմը միասնական ղեկավարումը զուգակցում է տեղերի նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության հետ, հանձնարարված գործի համար յուրաքանչյուր պետական մարմնի և պաշտոնատար անձի պատասխանատվության հետ։

*ՀՈԴՎԱԾ 4.* Սովետական պետությունը, նրա բոլոր մարմինները գործում են սոցիալիստական օրինականության հիման վրա, ապահովում իրավակարգի, հասարակության շահերի, քաղաքացիների իրավունքների և ազատությունների պաշտպանությունը։

Պետական և հասարակական կազմակերպությունները, պաշտոնատար անձինք պարտավոր են պահպանել ՍՍՀՄ Սահմանադրությունը և սովետական օրենքները։

*ՀՈԴՎԱԾ 5.* Պետական կյանքի առավել կարևոր հարցերը հանձնվում են համաժողովրդական քննարկման, ինչպես նաև դրվում համաժողովրդական քվեարկության (հանրաքվեի)։

*ՀՈԴՎԱԾ 6.* Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։ ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին։

Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին։

Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում։

*ՀՈԴՎԱԾ 7.* Արհեստակցական միությունները, Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը, կոոպերատիվ և մասսայական հասարակական մյուս կազմակերպությունները, իրենց կանոնադրական խնդիրներին համապատասխան, մասնակցում են պետական և հասարա-

կական գործերի կառավարմանը, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի լուծմանը։

ՀՈԴՎԱԾ 8. Աշխատավորական կոլեկտիվները մասնակցում են պետական և հասարակական գործերի քննարկմանն ու լուծմանը, արտադրության և սոցիալական զարգացման պլանավորմանը, կադրերի պատրաստմանն ու տեղաբաշխմանը, ձեռնարկությունների և հիմնարկների կառավարման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման հարցերի, արտադրության զարգացման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումների և նյութական խրախուսման համար նախատեսված միջոցների օգտագործման հարցերի քննարկմանն ու լուծմանը։

Աշխատավորական կոլեկտիվները զարգացնում են սոցիալիստական մրցությունը, նպաստում աշխատանքի առաջավոր մեթոդների տարածմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, իրենց անդամներին դաստիարակում են կոմունիստական բարոյականության ոգով, հոգ տանում նրանց քաղաքական գիտակցականության, կուլտուրայի և պրոֆեսիոնալ որակավորման բարձրացման մասին։

ՀՈԴՎԱԾ 9. Սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացման հիմնական ուղղությունը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է՝ քաղաքացիների ավելի ու ավելի լայն մասնակցությունը հասարակության և պետության գործերի կառավարմանը, պետական ապարատի կատարելագործումը, հասարակական կազմակերպությունների ակտիվության բարձրացումը, ժողովրդական վերահսկողության ուժեղացումը, պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդումը, հրապարակայնության ընդլայնումը, հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելը։

## Գլուխ 2.
## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

ՀՈԴՎԱԾ 10. ՍՍՀՄ տնտեսական սիստեմի հիմքն է կազմում արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը՝ պետական (համաժողովրդական) և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության ձևով։

Սոցիալիստական սեփականություն է նաև արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների այն գույքը, որը նրանց անհրաժեշտ է կանոնադրական խնդիրների իրականացման համար։

Պետությունը պահպանում է սոցիալիստական սեփականությունը և պայմաններ ստեղծում նրա բազմապատկման համար։

Ոչ ոք իրավունք չունի սոցիալիստական սեփականությունն օգտագործելու անձնական շահառության և այլ շահադիտական նպատակներով։

ՀՈԴՎԱԾ 11. Պետական սեփականությունը ամբողջ սովետական ժողովրդի ընդհանուր ունեցվածքն է, սոցիալիստական սեփականության հիմնական ձևը։

Պետության բացառիկ սեփականությունն են կազմում՝ հողը, նրա ընդերքը, ջրերը, անտառները։ Պետությանն են պատկանում արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության մեջ եղած արտադրության հիմնական միջոցները, տրանսպորտի և կապի միջոցները, բանկերը, պետության կողմից կազմակերպված առևտրական, կոմունալ և այլ ձեռնարկությունների գույքը, քաղաքային հիմնական բնակարանային ֆոնդը, ինչպես նաև պետության խնդիրների իրականացման համար անհրաժեշտ մյուս գույքը։

ՀՈԴՎԱԾ 12. Կոլտնտեսությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների, նրանց միավորումների սեփականությունն են հանդիսանում արտադրության միջոցները և մյուս այն գույքը, որը նրանց անհրաժեշտ է կանոնադրական խնդիրների իրականացման համար։

Կոլտնտեսությունների զբաղեցրած հողը ամրացվում է նրանց անվճար և անժամկետ օգտագործման համար։

Պետությունն աջակցում է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության զարգացմանը և նրա մերձեցմանը պետական սեփականության հետ։



Կոլտնտեսությունները, ինչպես նաև մյուս հողօգտագործողները պարտավոր են արդյունավետ օգտագործել հողը, հոգատարությամբ վերաբերվել նրան, բարձրացնել նրա բերրիությունը։

ՀՈԴՎԱԾ 13. ՍՍՀՄ քաղաքացիների անձնական սեփականության հիմքը աշխատանքային եկամուտներն են։ Անձնական սեփականություն կարող են լինել առօրյա գործածության, անձնական սպառման, հարմարության և օժանդակ տնային տնտեսության առարկաները, բնակելի տունը և աշխատանքային խնայողությունները։ Քաղաքացիների անձնական սեփականությունը և նրա ժառանգման իրավունքը պաշտպանվում են պետության կողմից։

Օգտագործման համար քաղաքացիների տրամադրության տակ կարող են գտնվել այն հողամասերը, որոնք օրենքով սահմանված կարգով հատկացվում են օժանդակ տնտեսություն վարելու (ներառյալ անասուններ և թռչուններ պահելը), այգեգործության և բանջարաբուծության համար, ինչպես նաև անհատական բնակարանային շինարարության համար։ Քաղաքացիները պարտավոր են ռացիոնալ կերպով օգտագործել իրենց հատկացված հողամասերը։ Պետությունը և կոլտնտեսությունները աջակցում են քաղաքացիներին օժանդակ տնտեսությունը վարելու գործում։

Քաղաքացիների անձնական սեփականություն հանդիսացող կամ նրանց կողմից օգտագործվող գույքը չպետք է ծառայի անաշխատ եկամուտներ քաղելու համար, չպետք է օգտագործվի ի վնաս հասարակության շահերի։

ՀՈԴՎԱԾ 14. Հանրային հարստության, ժողովրդի և սովետական յուրաքանչյուր մարդու բարեկեցության աճի աղբյուրը սովետական մարդկանց՝ շահագործումից զերծ աշխատանքն է։

«Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիզմի սկզբունքին համապատասխան, պետությունը վերահսկողություն է իրականացնում աշխատանքի և սպառման չափի նկատմամբ։ Նա որոշում է հարկման ենթակա եկամուտներից գանձվող հարկի չափը։

Հանրօգուտ աշխատանքը և նրա արդյունքները որոշում են մարդու դիրքը հասարակության մեջ։ Պետությունը, զուգակցելով նյութական և բարոյական խթանները, խրախուսելով նորարարությունը, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքը, նպաստում է, որ աշխատանքը դառնա սովետական յուրաքանչյուր մարդու առաջին կենսական պահանջը։

ՀՈԴՎԱԾ 15. Սոցիալիզմի օրոք հանրային արտադրության բարձրագույն նպատակը մարդկանց նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է։

Հենվելով աշխատավորների ստեղծագործական ակտիվության, սոցիալիստական մրցության, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների վրա, կատարելագործելով էկոնոմիկայի ղեկավարման ձևերն ու մեթոդները՝ պետությունն ապահովում է աշխատանքի արտադրողականության աճը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության դինամիկ, պլանաչափ և համամասնական զարգացումը։

ՀՈԴՎԱԾ 16. ՍՍՀՄ էկոնոմիկան միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս է, որն ընդգրկում է հանրային արտադրության բաշխման և փոխանակման բոլոր օղակները երկրի տերիտորիայում։

էկոնոմիկայի ղեկավարումն իրականացվում է տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների հիման վրա, հաշվի առնելով ճյուղային և տերիտորիալ սկզբունքները, կենտրոնացված կառավարումը զուգակցելով ձեռնարկությունների, միավորումների և մյուս կազմակերպությունների տնտեսական ինքնուրույնության և նախաձեռնության հետ։ Ընդ որում ակտիվորեն օգտագործվում են տնտեսական հաշվարկը, շահույթը, ինքնարժեքը, տնտեսական մյուս լծակներն ու խթանները։

ՀՈԴՎԱԾ 17. ՍՍՀՄ-ում, օրենքին համապատասխան, թույլատրվում են անհատական աշխատանքային գործունեություն տնայնագործական-արհեստագործական արտադրությունների, գյուղատնտեսության, բնակչության կենցաղային սպասարկման ոլորտում, ինչպես նաև գործունեության այլ ձևեր՝

հիմնված բացառապես քաղաքացիների և նրանց ընտանիքների անդամների անձնական աշխատանքի վրա։ Պետությունը կարգավորում է անհատական աշխատանքային գործունեությունը, ապահովելով նրա օգտագործումը ի շահ հասարակության։

*ՀՈԴՎԱԾ 18.* Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից, ՍՍՀՄ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի ու նրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար։

## Գլուխ 3.
## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

*ՀՈԴՎԱԾ 19.* ՍՍՀՄ սոցիալական հիմքն է կազմում բանվորների, գյուղացիների և մտավորականության անխախտ դաշինքը։

Պետությունը նպաստում է հասարակության սոցիալական միատարրության ուժեղացմանը՝ դասակարգային տարբերությունների, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացմանը, ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի զարգացմանն ու մերձեցմանը։

*ՀՈԴՎԱԾ 20.* «Յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» կոմունիստական իդեալին համապատասխան, պետությունը իրեն նպատակ է դնում ընդլայնելու ռեալ հնարավորությունները քաղաքացիների կողմից իրենց ստեղծագործական ուժերի, ընդունակությունների ու ձիրքերի գործադրման համար, անհատի համակողմանի զարգացման համար։

*ՀՈԴՎԱԾ 21.* Պետությունը հոգ է տանում աշխատանքի պայմանների բարելավման ու պաշտպանության, նրա գիտական կազմակերպման, ֆիզիկական ծանր աշխատանքի կրճատման, իսկ հետագայում նաև իսպառ վերացման մասին՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման հիման վրա։

*ՀՈԴՎԱԾ 22.* ՍՍՀՄ-ում հետևողականորեն կենսագործվում է գյուղատնտեսական աշխատանքը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածելու, գյուղական վայրերում ժողովրդական կրթության, կուլտուրայի, առողջապահության, առևտրի և հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և կոմունալ տնտեսության հիմնարկների ցանցն ընդլայնելու, գյուղերը բարեկարգ ավանների վերափոխելու ծրագիրը։

*ՀՈԴՎԱԾ 23.* Աշխատանքի արտադրողականության աճի հիման վրա պետությունը անշեղորեն իրականացնում է աշխատանքի վարձատրության, աշխատավորների ռեալ եկամուտների մակարդակի բարձրացման կուրս։

Սովետական մարդկանց պահանջմունքները ավելի լրիվ բավարարելու նպատակով ստեղծվում են սպառման հանրային ֆոնդեր։ Պետությունը հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների լայն մասնակցությամբ ապահովում է այդ ֆոնդերի աճն ու արդարացի բաշխումը։

*ՀՈԴՎԱԾ 24.* ՍՍՀՄ-ում գործում և զարգանում են առողջապահության, սոցիալական ապահովության, առևտրի ու հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և կոմունալ տնտեսության պետական սիստեմներ։

Պետությունը խրախուսում է կոոպերատիվ և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեությունը բնակչության սպասարկման բոլոր ոլորտներում։ Նա աջակցում է մասսայական ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացմանը։

*ՀՈԴՎԱԾ 25.* ՍՍՀՄ-ում գոյություն ունի և կատարելագործվում է ժողովրդական կրթության միասնական սիստեմ, որն ապահովում է քաղաքացիների հանրակրթական և պրոֆեսիոնալ պատրաստությունը, ծառայում երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը, նրա հոգևոր ու ֆիզիկական



զարգացմանը, նրան պատրաստում աշխատանքի և հասարակական գործունեության համար։

*ՀՈԴՎԱԾ 26.* Հասարակության պահանջմունքներին համապատասխան, պետությունն ապահովում է գիտության պլանաչափ զարգացումը և գիտական կադրերի պատրաստումը, կազմակերպում գիտական հետազոտությունների արդյունքների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ և կյանքի մյուս ոլորտներում։

*ՀՈԴՎԱԾ 27.* Պետությունը հոգ է տանում հոգևոր արժեքները պահպանելու, բազմապատկելու և դրանք սովետական մարդկանց բարոյական ու գեղագիտական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման համար լայնորեն օգտագործելու մասին։

ՍՍՀՄ-ում ըստ ամենայնի խրախուսվում է պրոֆեսիոնալ արվեստի և ժողովրդական գեղարվեստական ստեղծագործության զարգացումը։

## Գլուխ 4.
## ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*ՀՈԴՎԱԾ 28.* ՍՍՀՄ-ը անշեղորեն վարում է խաղաղության լենինյան քաղաքականություն, հանդես գալիս ժողովուրդների անվտանգության ամրապնդման և միջազգային լայն համագործակցության օգտին։

ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը նպատակամղված է ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման միջազգային բարենպաստ պայմանների ապահովմանը, Սովետական Միության պետական շահերի պաշտպանությանը, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը, ազգային ազատագրության ու սոցիալական առաջադիմության համար ժողովուրդների պայքարի պաշտպանությանը, ագրեսիվ պատերազմների կանխմանը, ընդհանուր և լրիվ զինաթափման հասնելուն և տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի հետևողական իրականացմանը։

ՍՍՀՄ-ում պատերազմի պրոպագանդան արգելվում է։

*ՀՈԴՎԱԾ 29.* Մյուս պետությունների հետ ՍՍՀՄ-ի հարաբերությունները կառուցվում են սուվերեն հավասարության, ուժ գործադրելուց կամ ուժով սպառնալուց փոխադարձ հրաժարման, սահմանների անխախտության, պետությունների տերիտորիալ ամբողջականության, վեճերի խաղաղ կարգավորման, ներքին գործերին չմիջամտելու, մարդու իրավունքների և հիմնական ազատությունների հարգման, ժողովուրդների իրավահավասարության և իրենց բախտը տնօրինելու իրավունքի, պետությունների համագործակցության, միջազգային իրավունքի հանրաճանաչ սկզբունքներից ու նորմաներից, ՍՍՀՄ-ի կնքած միջազգային պայմանագրերից բխող պարտավորությունների բարեխիղճ կատարման սկզբունքների պահպանման հիման վրա։

*ՀՈԴՎԱԾ 30.* ՍՍՀՄ-ը որպես սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, սոցիալիստական համագործակցության բաղկացուցիչ մաս, զարգացնում և ամրապնդում է բարեկամությունն ու համագործակցությունը, ընկերական փոխօգնությունը սոցիալիզմի երկրների հետ՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա, ակտիվորեն մասնակցում է տնտեսական ինտեգրացմանը և աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանմանը։

## Գլուխ 5.
## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*ՀՈԴՎԱԾ 31.* Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը պետության կարևորագույն ֆունկցիաներից է և հանդիսանում է ամբողջ ժողովրդի գործը։

Սոցիալիստական նվաճումները, սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը, պետության սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը պաշտպանելու նպատակով ստեղծված են ՍՍՀՄ զինված ուժեր և սահմանված է ընդհանուր զինապարտություն։

*Ժողովրդի հանդեպ ՍՍՀՄ զինված ուժերի պարտքն է՝ հուսալիորեն պաշտպանել սոցիալիստական հայրենիքը, լինել մշտական մարտական պատրաստության վիճակում, որը երաշխավորի անհապաղ հակահարված ամեն մի ագրեսորի։*

*ՀՈԴՎԱԾ 32. Պետությունը ապահովում է երկրի անվտանգությունն ու պաշտպանունակությունը, ՍՍՀՄ զինված ուժերը հանդերձում անհրաժեշտ ամեն ինչով։*

*Երկրի անվտանգության ապահովման և նրա պաշտպանունակության ամրապնդման ասպարեզում պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, պաշտոնատար անձանց ու քաղաքացիների պարտականությունները որոշվում են ՍՍՀ Միության օրենսդրությամբ։*

# II. ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՆՀԱՏԸ

## Գլուխ 6.

## ՍՍՀՄ ՔԱՂԱՔԱՑԻՈՒԹՅՈՒՆԸ: ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ԻՐԱՎԱՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆԸ

*ՀՈԴՎԱԾ 33. ՍՍՀՄ-ում սահմանված է միասնական միութենական քաղաքացիություն։ Միութենական հանրապետության յուրաքանչյուր քաղաքացի հանդիսանում է ՍՍՀՄ քաղաքացի։*

*Սովետական քաղաքացիություն ձեռք բերելու և այն կորցնելու հիմունքներն ու կարգը որոշվում են ՍՍՀՄ քաղաքացիության մասին օրենքով։*

*ՍՍՀՄ քաղաքացիները արտասահմանում օգտվում են սովետական պետության պաշտպանությունից ու հովանավորությունից։*

*ՀՈԴՎԱԾ 34. ՍՍՀՄ քաղաքացիները օրենքի առաջ հավասար են՝ անկախ ծագումից, սոցիալական և գույքային դրությունից, ռասայական և ազգային պատկանելությունից, սեռից, կրթությունից, լեզվից, կրոնի նկատմամբ ունեցած վերաբերմունքից, զբաղմունքի տեսակից ու բնույթից, բնակության վայրից և այլ հանգամանքներից։*

*ՍՍՀՄ քաղաքացիների իրավահավասարությունն ապահովվում է տնտեսական, քաղաքական, սոցիալական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։*

*ՀՈԴՎԱԾ 35. ՍՍՀՄ-ում կինը և տղամարդը հավասար իրավունքներ ունեն։*

*Այդ իրավունքների իրականացումն ապահովվում է՝ կանանց տալով տղամարդկանց հետ հավասար հնարավորություններ կրթություն և պրոֆեսիոնալ պատրաստություն ստանալու ասպարեզում, աշխատանքի, դրա վարձատրության և աշխատանքում առաջ քաշվելու, հասարակական-քաղաքական և կուլտուրական գործունեության ասպարեզում, ինչպես նաև կանանց աշխատանքի և առողջության պահպանության հատուկ միջոցառումներով. այնպիսի պայմանների ստեղծումով, որոնք կանանց թույլ են տալիս աշխատանքը զուգակցել մայրության հետ. մայրության և մանկության իրավական պաշտպանությամբ, նյութական ու բարոյական օժանդակությամբ, ներառյալ հղի կանանց ու մայրերին վճարովի արձակուրդներ և այլ արտոնություններ տալը, փոքրահասակ երեխաներ ունեցող կանանց աշխատաժամանակի աստիճանական կրճատումը։*

*ՀՈԴՎԱԾ 36. ՍՍՀՄ տարբեր ռասաների և ազգությունների քաղաքացիները ունեն հավասար իրավունքներ։*

*Այդ իրավունքների իրականացումն ապահովվում է ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման ու մերձեցման քաղաքականությամբ, քաղաքացիներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելով, մայրենի լեզվից և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների լեզուներից օգտվելու հնարավորությամբ։*

*Իրավունքների որևէ ուղղակի կամ անուղղակի սահմանափակում, ըստ ռասայական և ազգային հատկանիշների քաղաքացիների ուղղակի կամ անուղղակի առավելությունների սահմանում, ինչպես նաև ռասայական կամ ազգային բացառիկության, թշնամանքի կամ արհամարհանքի ամեն մի քարոզ պատժվում են օրենքով։*

*ՀՈԴՎԱԾ 37. Օտարերկրյա քաղաքացիների և քաղաքացիություն չունեցող անձանց համար ՍՍՀՄ-ում երաշխավորվում են օրենքով նախատեսված իրավունքներ ու ազատություններ, այդ թվում իրենց պատկանող անձնական, գույքային, ընտանեկան և այլ իրավունքների պաշտպանության համար դատարանային և պետական այլ մարմինների դիմելու իրավունք։*

*ՍՍՀՄ տերիտորիայում գտնվող օտարերկրյա քաղաքացիները և քաղաքացիություն չունեցող անձինք պարտավոր են հարգել ՍՍՀՄ Սահմանադրությունը և կատարել սովետական օրենքները։*

*ՀՈԴՎԱԾ 38. ՍՍՀՄ-ը ապաստանի իրավունք է վերապահում այն օտարերկրացիներին, որոնք հետապնդվում են աշխատավորների շահերի և խաղաղության գործի պաշտպանության համար, հեղափոխական և ազգային ազատագրական շարժմանը մասնակցելու համար, հասարակական-քաղաքական, գիտական կամ այլ ստեղծագործական առաջադիմական գործունեության համար։*

## Գլուխ 7.

## ՍՍՀՄ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ, ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*ՀՈԴՎԱԾ 39. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն ՍՍՀՄ Սահմանադրությամբ և սովետական օրենքներով հռչակված ու երաշխավորվող սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական բոլոր իրավունքներն ու ազատությունները։ Սոցիալիստական կարգն ապահովում է իրավունքների և ազատությունների ընդլայնումը, քաղաքացիների կենսապայմանների անընդհատ բարելավումը՝ սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման ծրագրերի կատարման համեմատ։*

*Քաղաքացիների կողմից իրավունքների և ազատությունների օգտագործումը չպետք է վնաս հասցնի հասարակության և պետության շահերին, մյուս քաղաքացիների իրավունքներին։*

*ՀՈԴՎԱԾ 40. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, այսինքն՝ երաշխավորված աշխատանք ստանալու իրավունք՝ աշխատանքը վարձատրելով ըստ նրա քանակի ու որակի և պետության կողմից սահմանված նվազագույն չափից ոչ ցածր, ներառյալ նրանց իրավունքը՝ մասնագիտություն, զբաղմունքի և աշխատանքի տեսակ ընտրելու իրենց կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը, կրթությանը համապատասխան և հաշվի առնելով հասարակական պահանջմունքները։*

*Այդ իրավունքն ապհովվում է տնտեսության սոցիալիստական սիստեմով, արտադրողական ուժերի անշեղ աճով, անվճար պրոֆեսիոնալ ուսուցմամբ, աշխատանքային որակավորման բարձրացմամբ և նոր մասնագիտությունների ուսուցմամբ, պրոֆեսիոնալ կողմնորոշման և աշխատանքի տեղավորման սիստեմների զարգացմամբ։*

*ՀՈԴՎԱԾ 41. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն հանգստի իրավունք։*

*Այդ իրավունքն ապահովվում է բանվորների և ծառայողների համար 41 ժամից չգերազանցող աշխատանքային շաբաթ սահմանելով, մի շարք պրոֆեսիաների ու արտադրությունների համար կրճատ աշխատանքային օրով, գիշերային աշխատանքի կրճատ տևողությամբ. ամենամյա վճարովի արձակուրդներ, ամենշաբաթյա հանգստյան օրեր տալով, ինչպես նաև կուլտուր-լուսավորական և առողջական հիմնարկների ցանցի ընդլայնմամբ, մասսայական սպորտի, ֆիզիկական կուլտուրայի և տուրիզմի զարգացմամբ. բնակության*

վայրում հանգստի բարենպաստ հնարավորություններ և ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման այլ պայմաններ ստեղծելով։

Կոլտնտեսականների աշխատաժամանակի և հանգստի տևողությունը կարգավորվում է կոլտնտեսությունների կողմից։

ՀՈԴՎԱԾ 42. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն առողջության պահպանության իրավունք։

Այդ իրավունքն ապահովվում է առողջության պետական հիմնարկների կողմից ցույց տրվող անվճար որակյալ բժշկական օգնությամբ. քաղաքացիների բուժման ու կազդուրման հիմնարկների ցանցի ընդլայնմամբ. անվտանգության տեխնիկայի և արտադրական սանիտարիայի զարգացմամբ ու կատարելագործմամբ. կանխարգելիչ լայն միջոցառումների իրականացմամբ. շրջակա միջավայրի առողջացման միջոցառումներով. աճող սերնդի առողջության նկատմամբ հատուկ հոգատարությամբ, ներառյալ երեխաների այն աշխատանքի արգելումը, որը կապված չէ ուսուցման և աշխատանքային դաստիարակության հետ. հիվանդացության կանխմանն ու նվազեցմանը, քաղաքացիների երկարամյա ակտիվ կյանքի ապահովմանը նպատակամղված գիտական հետազոտությունների ծավալմամբ։

ՀՈԴՎԱԾ 43. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն նյութական ապահովության իրավունք ծերության ժամանակ, հիվանդության, ինչպես նաև աշխատունակության լրիվ կամ մասնակի կորստի և կերակրողին կորցնելու դեպքում։

Այդ իրավունքը երաշխավորվում է բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների սոցիալական ապահովագրությամբ, ժամանակավոր անաշխատունակության նպաստներով. պետության և կոլտնտեսությունների հաշվին տարիքային, հաշմանդամության և կերակրողին կորցնելու կենսաթոշակներ վճարելով. աշխատունակությունը մասնակիորեն կորցրած քաղաքացիներին աշխատանքի տեղավորելով. զառամյալ քաղաքացիների և հաշմանդամների նկատմամբ ցուցաբերվող հոգատարությամբ. սոցիալական ապահովության այլ ձևերով։

ՀՈԴՎԱԾ 44. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն բնակարանի իրավունք։

Այդ իրավունքն ապահովվում է պետական և հասարակական բնակարանային ֆոնդի զարգացմամբ ու պահպանմամբ, կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությանը ցույց տրվող օժանդակությամբ, բարեկարգ բնակարանների կառուցման ծրագրի իրականացման համեմատ հատկացվող բնակտարածությունը հասարակական վերահսկողության ներքո արդարացիորեն բաշխելով, ինչպես նաև բնակարանի և կոմունալ ծառայությունների ոչ բարձր վարձով։ ՍՍՀՄ քաղաքացիները պետք է հոգատարությամբ վերաբերվեն իրենց հատկացված բնակարանին։

ՀՈԴՎԱԾ 45։ ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն կրթության իրավունք։

Այդ իրավունքն ապահովվում է կրթության բոլոր տեսակների անվճարությամբ, երիտասարդության ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության իրականացմամբ, կյանքի, արտադրության հետ ուսուցման կապի հիման վրա պրոֆեսիոնալ-տեխնիկական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության լայն զարգացմամբ. հեռակա և երեկոյան կրթության զարգացմամբ. սովորողներին և ուսանողներին պետական կրթաթոշակներ և արտոնություններ տալով. դպրոցական դասագրքերն անվճար տրամադրելով. դպրոցում մայրենի լեզվով ուսուցման հնարավորությամբ. ինքնակրթության պայմանների ստեղծմամբ։

ՀՈԴՎԱԾ 46. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն կուլտուրայի նվաճումներից օգտվելու իրավունք։

Այդ իրավունքն ապահովվում է պետական և հասարակական ֆոնդերում գտնվող հայրենական և համաշխարհային կուլտուրայի արժեքների հանրամատչելիությամբ. երկրի տերիտորիայում կուլտուր-լուսավորական հիմնարկների զարգացմամբ ու համաչափ տեղաբաշխմամբ. հեռուստատեսության և ռադիոյի, գրահրատարակչական գործի և պարբերական մամուլի, անվճար



գրադարանների ցանցի զարգացմամբ. արտասահմանյան պետությունների հետ կուլտուրական փոխանակման ընդլայնմամբ։

ՀՈԴՎԱԾ 47. Կոմունիստական շինարարության նպատակներին համապատասխան, ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում է գիտական, տեխնիկական և գեղարվեստական ստեղծագործության ազատություն։ Դա ապահովվում է գիտական հետազոտությունների, գյուտարարական և ռացիոնալիզատորական գործունեության լայն ծավալմամբ, գրականության և արվեստի զարգացմամբ։ Պետությունը ստեղծում է դրա համար անհրաժեշտ նյութական պայմաններ, աջակցում է կամավոր ընկերություններին և ստեղծագործական միություններին, կազմակերպում է գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումը ժողովրդական տնտեսության և կյանքի մյուս ոլորտների մեջ։

Հեղինակների, գյուտարարների և ռացիոնալիզատորների իրավունքները պաշտպանվում են պետության կողմից։

ՀՈԴՎԱԾ 48։ ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն պետական և հասարակական գործերի կառավարմանը, համապետական և տեղական նշանակություն ունեցող օրենքների և որոշումների քննարկմանն ու ընդունմանը մասնակցելու իրավունք։

Այդ իրավունքն ապահովվում է ժողովրդական դեպուտատների սովետներ և այլ ընտրովի պետական մարմիններ ընտրելու և դրանցում ընտրվելու, համաժողովրդական քննարկումներին և քվեարկություններին, ժողովրդական վերահսկողությանը, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների և հասարակական ինքնագործունեության մարմինների աշխատանքին, աշխատավորական կոլեկտիվների ժողովներին և ըստ բնակության վայրի գումարվող ժողովներին մասնակցելու հնարավորությամբ։

ՀՈԴՎԱԾ 49. ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացի իրավունք ունի պետական մարմիններին և հասարակական կազմակերպություններին առաջարկություններ ներկայացնելու նրանց գործունեության բարելավման վերաբերյալ, քննադատելու աշխատանքի թերությունները։

Պաշտոնատար անձինք պարտավոր են սահմանված ժամկետներում քննության առնել քաղաքացիների առաջարկություններն ու դիմումները, պատասխան տալ դրանց և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ։

Քննադատության համար հետապնդումն արգելվում է։ Քննադատության համար հետապնդող անձինք ենթարկվում են պատասխանատվության։

ՀՈԴՎԱԾ 50. Ժողովրդի շահերին համապատասխան և սոցիալիստական հասարակարգի ամրապնդման ու զարգացման նպատակով ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում են խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների, փողոցային երթերի և ցույցերի ազատություններ։

Քաղաքական այդ ազատությունների իրականացումն ապահովվում է աշխատավորներին ու նրանց կազմակերպություններին հասարակական շենքեր, փողոցներ ու հրապարակներ տրամադրելով, ինֆորմացիայի լայն տարածմամբ, մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի օգտագործման հնարավորությամբ։

ՀՈԴՎԱԾ 51. Կոմունիստական շինարարության նպատակներին համապատասխան, ՍՍՀՄ քաղաքացիներն իրավունք ունեն միավորվելու քաղաքական ակտիվության և ինքնագործունեության զարգացմանը, իրենց բազմազան հետաքրքրությունների բավարարմանը նպաստող հասարակական կազմակերպությունների մեջ։

Հասարակական կազմակերպությունների համար երաշխավորվում են իրենց կանոնադրական խնդիրները հաջողությամբ կատարելու պայմաններ։

ՀՈԴՎԱԾ 52. ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում է խղճի ազատություն, այսինքն՝ ցանկացած կրոնը դավանելու կամ ոչ մի կրոն չդավանելու, կրոնական պաշտամունքներ կատարելու կամ աթեիստական պրոպագանդա մղելու իրավունք։ Կրոնական հավատալիքների առնչությամբ թշնամանք և ատելություն հրահրելն արգելվում է։

ՍՍՀՄ-ում եկեղեցին անջատված է պետությունից և դպրոցը՝ եկեղեցուց:

ՀՈԴՎԱԾ 53. Ընտանիքը գտնվում է պետության պաշտպանության ներքո:

Ամուսնությունը հիմնվում է կնոջ և տղամարդու կամավոր համաձայնության վրա. ամուսինները լիովին իրավահավասար են ընտանեկան հարաբերություններում:

Պետությունը ընտանիքի մասին հոգ է տանում մանկական հիմնարկների լայն ցանցի ստեղծման ու զարգացման, կենցաղի ծառայության և հասարակական սննդի կազմակերպման ու կատարելագործման, երեխայի ծննդյան նպաստներ վճարելու, բազմազավակ ընտանիքներին նպաստներ և արտոնություններ տալու, ինչպես նաև ընտանիքին տրամադրվող նպաստների և օգնության այլ տեսակների միջոցով:

ՀՈԴՎԱԾ 54. ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում է անձի անձեռնմխելիություն: Ոչ ոք չի կարող կալանքի ենթարկվել այլ կերպ, քան դատարանի որոշմամբ կամ դատախազի սանկցիայով:

ՀՈԴՎԱԾ 55. ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում է բնակարանի անձեռնմխելիություն: Ոչ ոք իրավունք չունի առանց օրինական հիմքի բնակարան մտնել՝ հակառակ այնտեղ բնակվող անձանց կամքի:

ՀՈԴՎԱԾ 56. Քաղաքացիների անձնական կյանքը, նամակագրության, հեռախոսային խոսակցությունների և հեռագրական հաղորդումների գաղտնիությունը պաշտպանվում են օրենքով:

ՀՈԴՎԱԾ 57. Քաղաքացիների անձի հարգումը, նրանց իրավունքների և ազատությունների պահպանումը բոլոր պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների և պաշտոնատար անձանց պարտականությունն է:

ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն իրենց պատվի և արժանապատվության, կյանքի և առողջության, անձի ազատության և գույքի դեմ կատարված ոտնձգություններից դատական պաշտպանության իրավունք:

ՀՈԴՎԱԾ 58. ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն պաշտոնատար անձանց, պետական և հասարակական մարմինների գործողությունները գանգատարկելու իրավունք: Գանգատները պետք է քննության առնվեն օրենքով սահմանված կարգով և ժամկետներում:

Օրենքի խախտմամբ, լիազորությունների սահմանազանցությամբ պաշտոնատար անձանց կատարած այն գործողությունները, որոնք սահմանափակում են քաղաքացիների իրավունքները, օրենքով սահմանված կարգով կարող են գանգատարկվել դատարանում:

ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն պետական և հասարակական կազմակերպությունների, ինչպես նաև պաշտոնատար անձանց կողմից իրենց պաշտոնեական պարտականությունների կատարման ժամանակ ապօրինի գործողությունների հետևանքով պատճառված վնասի փոխհատուցման իրավունք:

ՀՈԴՎԱԾ 59. Իրավունքների և ազատությունների իրականացումը անբաժանելի է քաղաքացու կողմից իր պարտականությունների կատարումից:

ՍՍՀՄ քաղաքացին պարտավոր է պահպանել ՍՍՀՄ Սահմանադրությունը և սովետական օրենքները, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները, արժանապատվությամբ կրել ՍՍՀՄ քաղաքացու բարձր կոչումը:

ՀՈԴՎԱԾ 60. ՍՍՀՄ յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է՝ բարեխղճորեն աշխատել հանրօգուտ գործունեության իր ընտրած բնագավառում, պահպանել աշխատանքային կարգապահությունը: Հանրօգուտ աշխատանքից խուսափելը անհամատեղելի է սոցիալիստական հասարակության սկզբունքների հետ:

ՀՈԴՎԱԾ 61. ՍՍՀՄ քաղաքացին պարտավոր է պահպանել և ամրապնդել սոցիալիստական սեփականությունը: ՍՍՀՄ քաղաքացու պարտքն է պայքարել պետական և հանրային ունեցվածքի հափշտակումների և շռայլումների դեմ, հոգատարությամբ վերաբերվել ժողովրդական բարիքին:

Սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություն կատարող անձինք պատժվում են օրենքով:

ՀՈԴՎԱԾ 62. ՍՍՀՄ քաղաքացին պարտավոր է պահպանել սովետական



պետության շահերը, նպաստել նրա հզորության և հեղինակության ամրապնդմանը:

Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է:

Հայրենիքին դավաճանելը ծանրագույն հանցագործություն է ժողովրդի հանդեպ:

ՀՈԴՎԱԾ 63. ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում զինվորական ծառայությունը սովետական քաղաքացիների պատվավոր պարտականությունն է:

ՀՈԴՎԱԾ 64. ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու պարտքն է հարգել մյուս քաղաքացիների ազգային արժանապատվությունը, ամրապնդել սովետական բազմազգ պետության ազգերի և ազգությունների բարեկամությունը:

ՀՈԴՎԱԾ 65. ՍՍՀՄ քաղաքացին պարտավոր է հարգել այլ անձանց իրավունքներն ու օրինական շահերը, անհաշտ լինել հակահասարակական արարքների նկատմամբ, ըստ ամենայնի աջակցել հասարակական կարգի պահպանմանը:

ՀՈԴՎԱԾ 66. ՍՍՀՄ քաղաքացիները պարտավոր են հոգ տանել երեխաների դաստիարակության մասին, նրանց պատրաստել հանրօգուտ աշխատանքի, աճեցնել որպես սոցիալիստական հասարակության արժանավոր անդամների: Զավակները պարտավոր են հոգ տանել ծնողների մասին և օգնություն ցույց տալ նրանց:

ՀՈԴՎԱԾ 67. ՍՍՀՄ քաղաքացիները պարտավոր են հոգատարությամբ վերաբերվել բնությանը, պահպանել նրա հարստությունները:

ՀՈԴՎԱԾ 68. Պատմական հուշարձանների և կուլտուրական մյուս արժեքների պահպանման նկատմամբ հոգատարությունը ՍՍՀՄ քաղաքացիների պարտքն ու պարտականությունն է:

ՀՈԴՎԱԾ 69. ՍՍՀՄ քաղաքացու ինտերնացիոնալ պարտքն է աջակցել մյուս երկրների ժողովուրդների հետ բարեկամության ու համագործակցության զարգացմանը, ընդհանուր խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը:

# III. ՍՍՀՄ ԱԶԳԱՅԻՆ-ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

## Գլուխ 8.

## ՍՍՀՄ-Ը ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է

ՀՈԴՎԱԾ 70. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը միասնական միութենական բազմազգ պետություն է՝ կազմավորված սոցիալիստական ֆեդերալիզմի սկզբունքի հիման վրա՝ ազգերի ազատ ինքնորոշման և իրավահավասար սովետական սոցիալիստական հանրապետությունների կամավոր միավորման հետևանքով:

ՍՍՀՄ-ը մարմնավորում է սովետական ժողովրդի պետական միասնությունը, բոլոր ազգերին և ազգություններին համախմբում կոմունիզմի համատեղ կառուցման նպատակով:

ՀՈԴՎԱԾ 71. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ միավորվում են՝

Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը,

Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Ղազախական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,

Մոլդավական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Լատվիական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Կիրգիզական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Տաջիկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
Էստոնական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։

ՀՈԴՎԱԾ 72. Յուրաքանչյուր միութենական հանրապետության իրավունք է վերապահվում ազատորեն դուրս գալու ՍՍՀՄ-ից։

ՀՈԴՎԱԾ 73. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության տնօրինությանը, հանձինս նրա պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների, ենթակա են՝

1) ՍՍՀՄ-ի կազմի մեջ նոր հանրապետությունների ընդունումը. միութենական հանրապետությունների կազմում նոր ինքնավար հանրապետությունների և ինքնավար մարզերի կազմման հաստատումը.

2) ՍՍՀՄ պետական սահմանի որոշումը և միութենական հանրապետությունների միջև սահմանների փոփոխությունների հաստատումը.

3) պետական իշխանության և կառավարման հանրապետական ու տեղական մարմինների կազմակերպման և գործունեության ընդհանուր հիմունքների սահմանումը.

4) ՍՍՀՄ ամբողջ տերիտորիայում օրենսդրական կարգավորման միասնության ապահովումը, ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենսդրության հիմունքների սահմանումը.

5) միասնական սոցիալ-տնտեսական քաղաքականության կիրառումը, երկրի էկոնոմիկայի ղեկավարումը. գիտատեխնիկական առաջադիմության հիմնական ուղղությունների և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու պահպանման ընդհանուր միջոցառումների որոշումը. ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների մշակումն ու հաստատումը, դրանց կատարման հաշվետվությունների հաստատումը.

6) ՍՍՀՄ միասնական պետական բյուջեի մշակումն ու հաստատումը, նրա կատարման հաշվետվության հաստատումը. միասնական դրամական և վարկային սիստեմի ղեկավարումը. ՍՍՀՄ պետական բյուջեի կազմման համար ստացվող հարկերի և եկամուտների սահմանումը. գների և աշխատանքի վարձատրության բնագավառի քաղաքականության որոշումը.

7) ընդհանուր-միութենական ենթակայության ժողովրդական տնտեսության ճյուղերի, միավորումների և ձեռնարկությունների ղեկավարումը. միութենական-հանրապետական ենթակայության ճյուղերի ընդհանուր կիրառումը.

8) խաղաղության և պատերազմի հարցերը, ՍՍՀՄ սուվերենության պաշտպանությունը, պետական սահմանների և տերիտորիայի պահպանումը, պաշտպանության կազմակերպումը, ՍՍՀՄ զինված ուժերի ղեկավարումը.

9) պետական անվտանգության ապահովումը.

10) ՍՍՀՄ-ը միջազգային հարաբերություններում ներկայացնելը. ՍՍՀՄ կապերը օտարերկրյա պետությունների և միջազգային կազմակերպությունների հետ. օտարերկրյա պետությունների և միջազգային կազմակերպությունների հետ միութենական հանրապետությունների հարաբերությունների ընդհանուր կարգի սահմանումը և կոորդինացումը. արտաքին առևտուրը և արտաքին տնտեսական գործունեության մյուս տեսակները պետական մենաշնորհի հիման վրա.

11) ՍՍՀՄ Սահմանադրության կատարման վերահսկողությունը և ՍՍՀՄ Սահմանադրությանը միութենական հանրապետությունների սահմանադրությունների համապատասխանության ապահովումը.

12) ընդհանուր-միութենական նշանակություն ունեցող մյուս հարցերի լուծումը։

ՀՈԴՎԱԾ 74. ՍՍՀՄ օրենքները միատեսակ ուժ ունեն բոլոր միութենական հանրապետությունների տերիտորիայում։ Միութենական հանրապետության



օրենքի և ընդհանուր-միութենական օրենքի միջև անհամապատասխանության դեպքում գործում է ՍՍՀՄ օրենքը։

ՀՈԴՎԱԾ 75. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության տերիտորիան միասնական է և ընդգրկում է միութենական հանրապետությունների տերիտորիաները։

ՍՍՀՄ սուվերենությունը տարածվում է նրա ամբողջ տերիտորիայի վրա։

## Գլուխ 9.

## ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

ՀՈԴՎԱԾ 76. Միութենական հանրապետությունը սուվերեն սովետական սոցիալիստական պետություն է, որը մյուս սովետական հանրապետությունների հետ միավորվել է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։

ՍՍՀՄ Սահմանադրության 73-րդ հոդվածում նշված շրջանակներից դուրս միութենական հանրապետությունը ինքնուրույն կերպով է իրականացնում պետական իշխանությունը իր տերիտորիայում։

Միութենական հանրապետությունը ունի իր Սահմանադրությունը, որը համապատասխանում է ՍՍՀՄ Սահմանադրությանը և հաշվի է առնում հանրապետության առանձնահատկությունները։

ՀՈԴՎԱԾ 77. Միութենական հանրապետությունը մասնակցում է ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը ՍՍՀՄ Գերագույն սովետում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության մյուս մարմիններում։

Միութենական հանրապետությունն ապահովում է տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումն իր տերիտորիայում, նպաստում այդ տերիտորիայում ՍՍՀ Միության լիազորությունների իրականացմանը, կենսագործում ՍՍՀՄ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները։

Իր տնօրինությանը վերապահված հարցերում միութենական հանրապետությունը կոորդինացնում և վերահսկում է միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեությունը։

ՀՈԴՎԱԾ 78. Միութենական հանրապետության տերիտորիան չի կարող փոփոխվել առանց նրա համաձայնության։ Միութենական հանրապետությունների միջև սահմանները կարող են փոփոխվել համապատասխան հանրապետությունների փոխադարձ համաձայնությամբ, որը ենթակա է ՍՍՀ Միության հաստատմանը։

ՀՈԴՎԱԾ 79. Միութենական հանրապետությունը սահմանում է իր երկրամասային, մարզային, օկրուգային, շրջանային բաժանումը և լուծում վարչատերիտորիալ կառուցվածքի այլ հարցեր։

ՀՈԴՎԱԾ 80. Միութենական հանրապետությունը իրավունք ունի հարաբերությունների մեջ մտնելու օտարերկրյա պետությունների հետ, նրանց հետ կնքելու պայմանագրեր և փոխանակելու դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցիչներ, մասնակցելու միջազգային կազմակերպությունների գործունեությանը։

ՀՈԴՎԱԾ 81. Միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները պաշտպանվում են ՍՍՀ Միության կողմից։

## Գլուխ 10.

## ԻՆՔՆԱՎԱՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

ՀՈԴՎԱԾ 82. Ինքնավար հանրապետությունը գտնվում է միութենական հանրապետության կազմի մեջ։

Ինքնավար հանրապետությունը, ՍՍՀ Միության և միութենական հանրա-

պետության իրավունքների սահմաններից դուրս, ինքնուրույն կերպով է լուծում իր տնօրինությանը վերաբերող հարցերը։

Ինքնավար հանրապետությունն ունի իր Սահմանադրությունը, որը համապատասխանում է ՍՍՀՄ Սահմանադրությանն ու միութենական հանրապետության Սահմանադրությանը և հաշվի է առնում ինքնավար հանրապետության առանձնահատկությունները։

ՀՈԴՎԱԾ 83. Ինքնավար հանրապետությունը մասնակցում է ՍՍՀ Միության և միութենական հանրապետության տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը համապատասխանաբար ՍՍՀ Միության և միութենական հանրապետության պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մարմինների միջոցով։

Ինքնավար հանրապետությունն ապահովում է տնտեսական ու սոցիալական կոմպլեքսային զարգացումը իր տերիտորիայում, նպաստում է այդ տերիտորիայում ՍՍՀ Միության և միութենական հանրապետության լիազորությունների իրականացմանը, կենսագործում ՍՍՀՄ և միութենական հանրապետության պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները։

Իր տնօրինությանը վերապահված հարցերում ինքնավար հանրապետությունը կոորդինացնում և վերահսկում է միութենական ու հանրապետական (միութենական հանրապետության) ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեությունը։

ՀՈԴՎԱԾ 84. Ինքնավար հանրապետության տերիտորիան չի կարող փոփոխվել առանց նրա համաձայնության։

ՀՈԴՎԱԾ 85. Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետության մեջ են Բաշկիրական, Բուրյաթական, Դաղստանի, Կաբարդա-Բալկարական, Կալմիկական, Կարելական, Կոմի, Մարիական, Մորդվական, Հյուսիս-Օսեթական, Թաթարական, Տուվայի, Ուդմուրտական, Չեչենա-Ինգուշական, Չուվաշական, Յակուտական ինքնավար սովետական սոցիալիստական հանրապետությունները։

Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մեջ է Կարակալպակյան Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։

Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մեջ են Աբխազական և Աջարական ինքնավար սովետական սոցիալիստական հանրապետությունները։

Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մեջ է Նախիջևանի Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։

### Գլուխ 11.

### ԻՆՔՆԱՎԱՐ ՄԱՐԶԸ ԵՎ ԻՆՔՆԱՎԱՐ ՕԿՐՈՒԳԸ

ՀՈԴՎԱԾ 86. Ինքնավար մարզը գտնվում է միութենական հանրապետության կամ երկրամասի կազմի մեջ։ Ինքնավար մարզի մասին օրենքը ընդունում է միութենական հանրապետության Գերագույն սովետը՝ ինքնավար մարզի ժողովրդական դեպուտատների սովետի ներկայացմամբ։

ՀՈԴՎԱԾ 87. Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետության մեջ են՝ Ադիգեյական, Լեռնային Ալթայի, Հրեական, Կարաչայա-Չերքեզական, Խակասական ինքնավար մարզերը։

Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մեջ է Հարավ-Օսեթական ինքնավար մարզը։

Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մեջ է Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզը։

Տաջիկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մեջ է Լեռնային Բադախշանի ինքնավար մարզը։

ՀՈԴՎԱԾ 88. Ինքնավար օկրուգը գտնվում է երկրամասի կամ մարզի կազ-



մի մեջ։ Ինքնավար օկրուգների մասին օրենքը ընդունում է միութենական հանրապետության Գերագույն սովետը։

# IV. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

### Գլուխ 12.

### ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՍԻՍՏԵՄԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 89. Ժողովրդական դեպուտատների սովետները՝ ՍՍՀՄ Գերագույն սովետը, միութենական հանրապետությունների գերագույն սովետները, ինքնավար հանրապետությունների գերագույն սովետները, ժողովրդական դեպուտատների երկրամասային, մարզային սովետները, ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների ժողովրդական դեպուտատների սովետները, ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային, քաղաքների շրջանային, ավանային և գյուղական սովետները կազմում են պետական իշխանության մարմինների միասնական սիստեմ։

ՀՈԴՎԱԾ 90. ՍՍՀՄ Գերագույն սովետի, միութենական հանրապետությունների գերագույն սովետների և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների լիազորությունների ժամկետը հինգ տարի է։

Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների լիազորությունների ժամկետը երկու և կես տարի է։

Ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունները նշանակվում են ոչ ուշ, քան համապատասխան սովետների լիազորությունների ժամկետը լրանալուց երկու ամիս առաջ։

ՀՈԴՎԱԾ 91. Ժողովրդական դեպուտատների համապատասխան սովետների տնօրինության վերապահված կարևորագույն հարցերը քննարկվում և լուծվում են նրանց նստաշրջաններում։

Ժողովրդական դեպուտատների սովետները ընտրում են մշտական հանձնաժողովներ, ստեղծում գործադիր և կարգադրիչ, ինչպես նաև իրենց հաշվետու այլ մարմիններ։

ՀՈԴՎԱԾ 92. Ժողովրդական դեպուտատների սովետները կազմում են պետական վերահսկողությունը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկներում և կազմակերպություններում աշխատավորների հասարակական վերահսկողության հետ զուգակցող ժողովրդական վերահսկողության մարմիններ։

Ժողովրդական վերահսկողության մարմինները վերահսկում են պետական պլանների և առաջադրանքների կատարումը, պայքար են մղում պետական կարգապահության խախտումների, տեղայնության, գործի նկատմամբ գերատեսչական մոտեցման դրսևորումների, անտնտեսավարության և շռայլության, քաշքշուկի և բյուրոկրատիզմի դեմ, նպաստում են պետական ապարատի աշխատանքի կատարելագործմանը։

ՀՈԴՎԱԾ 93. Ժողովրդական դեպուտատների սովետները անմիջականորեն և իրենց կողմից ստեղծվող մարմինների միջոցով ղեկավարում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության բոլոր ճյուղերը, ընդունում են որոշումներ, ապահովում դրանց կատարումը, իրականացնում որոշումների կենսագործման վերահսկողությունը։

ՀՈԴՎԱԾ 94. Ժողովրդական դեպուտատների սովետների գործունեությունը կառուցվում է հարցերի կոլեկտիվ, ազատ, գործարար քննարկման և լուծման հրապարակայնության, սովետների և բնակչության առջև գործադիր ու կարգադրիչ մարմինների, սովետների կողմից ստեղծվող մյուս մարմինների կա-

նոնավոր հաշվետվության, նրանց աշխատանքին քաղաքացիներին լայնորեն մասնակից դարձնելու վրա։

Ժողովրդական դեպուտատների սովետները և նրանց կողմից ստեղծվող մարմինները բնակչությանը սիստեմատիկաբար տեղյակ են պահում իրենց աշխատանքի և ընդունած որոշումների մասին։

## Գլուխ 13.

## ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

ՀՈԴՎԱԾ 95. Ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների դեպուտատների ընտրությունները կատարվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։

ՀՈԴՎԱԾ 96. Դեպուտատների ընտրությունները ընդհանուր են. ՍՍՀՄ 18 տարեկան դարձած բոլոր քաղաքացիները ունեն ընտրելու և ընտրվելու իրավունք, բացառությամբ օրենքով սահմանված կարգով խելագար ճանաչված անձանց։

ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ կարող է ընտրվել ՍՍՀՄ 21 տարեկան դարձած քաղաքացին։

ՀՈԴՎԱԾ 97. Դեպուտատների ընտրությունները հավասար են. յուրաքանչյուր ընտրող ունի մեկ ձայն. բոլոր ընտրողները ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով։

ՀՈԴՎԱԾ 98. Դեպուտատների ընտրությունները ուղղակի են. ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների դեպուտատները քաղաքացիների կողմից ընտրվում են անմիջականորեն։

ՀՈԴՎԱԾ 99. Դեպուտատների ընտրության ժամանակ քվեարկությունը գաղտնի է. ընտրողների կամքի արտահայտման նկատմամբ վերահսկողություն չի թույլատրվում։

ՀՈԴՎԱԾ 100. Դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունքը պատկանում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության, արհեստակցական միությունների, Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության կազմակերպություններին, կոոպերատիվ և մյուս հասարակական կազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին, ինչպես նաև զորամասերում գումարվող զինծառայողների ժողովներին։

ՍՍՀՄ քաղաքացիների և հասարակական կազմակերպությունների համար երաշխավորվում են դեպուտատության թեկնածուների քաղաքական, գործարար և անձնական հատկությունների ազատ ու համակողմանի քննարկում, ինչպես նաև ժողովներում, մամուլում, հեռուստատեսությամբ, ռադիոյով ագիտացիա մղելու իրավունք։

Ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունների անցկացման հետ կապված ծախսերը կատարվում են պետության հաշվին։

ՀՈԴՎԱԾ 101. Ժողովրդական դեպուտատների սովետների դեպուտատների ընտրությունները կատարվում են ըստ ընտրական օկրուգների։

ՍՍՀՄ քաղաքացին, որպես կանոն, չի կարող ընտրվել ժողովրդական դեպուտատների ավելի քան երկու սովետում։

Սովետների ընտրությունների անցկացումը ապահովում են ընտրական հանձնաժողովները, որոնք կազմվում են հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների և զորամասերում գումարվող զինծառայողների ժողովների ներկայացուցիչներից։

Ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունների անցկացման կարգը սահմանվում է ՍՍՀ Միության, միութենական և ինքնավար հանրապետությունների օրենքներով։

ՀՈԴՎԱԾ 102. Ընտրողները պատվիրաններ են տալիս իրենց դեպուտատներին։



Ժողովրդական դեպուտատների համապատասխան սովետները քննության են առնում ընտրողների պատվիրանները, դրանք հաշվի առնում տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները մշակելիս և բյուջեն կազմելիս, կազմակերպում են պատվիրանների կատարումը և քաղաքացիներին տեղյակ պահում դրանց իրականացման մասին։

## Գլուխ 14.

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏԸ

ՀՈԴՎԱԾ 103. Դեպուտատները ժողովրդի լիազոր ներկայացուցիչներն են ժողովրդական դեպուտատների սովետներում։

Մասնակցելով սովետների աշխատանքին, դեպուտատները լուծում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերը, կազմակերպում սովետների որոշումների կենսագործումը, վերահսկողություն իրականացնում պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների աշխատանքի նկատմամբ։

Իր գործունեության մեջ դեպուտատը ղեկավարվում է համապետական շահերով, հաշվի է առնում ընտրական օկրուգի բնակչության պահանջները, հետամուտ լինում ընտրողների պատվիրանների կենսագործմանը։

ՀՈԴՎԱԾ 104։ Դեպուտատը իր լիազորություններն իրականացնում է, չկտրվելով արտադրական կամ ծառայական գործունեությունից։

Սովետի նստաշրջանների ժամանակ, ինչպես նաև օրենքով նախատեսված այլ դեպքերում դեպուտատական լիազորությունների իրականացման համար դեպուտատը ազատվում է արտադրական կամ ծառայական պարտականությունների կատարումից՝ պահպանելով նրա միջին վաստակը մշտական աշխատանքի վայրում։

ՀՈԴՎԱԾ 105. Դեպուտատը իրավունք ունի հարցապնդում անելու համապատասխան պետական մարմիններին ու պաշտոնատար անձանց, որոնք պարտավոր են պատասխան տալ հարցապնդմանը սովետի նստաշրջանում։

Դեպուտատը իրավունք ունի դեպուտատական գործունեության հարցերով դիմելու պետական ու հասարակական բոլոր մարմիններին, ձեռնարկություններին, հիմնարկներին, կազմակերպություններին և մասնակցելու իր առաջադրած հարցերի քննարկմանը։ Համապատասխան պետական ու հասարակական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների ղեկավարները պարտավոր են անհետաձգելիորեն ընդունել դեպուտատին և քննության առնել նրա առաջարկությունները սահմանված ժամկետներում։

ՀՈԴՎԱԾ 106։ Դեպուտատի համար ապահովվում են իր իրավունքներն ու պարտականություններն անարգել և արդյունավետ կերպով իրականացնելու պայմաններ։

Դեպուտատների անձեռնմխելիությունը, ինչպես նաև դեպուտատական գործունեության մյուս երաշխիքները սահմանվում են դեպուտատների ստատուսի մասին օրենքով և ՍՍՀ Միության, միութենական ու ինքնավար հանրապետությունների այլ օրենսդրական ակտերով։

ՀՈԴՎԱԾ 107. Դեպուտատը պարտավոր է իր աշխատանքի և սովետի աշխատանքի մասին հաշվետու լինել ընտրողների առջև, ինչպես նաև իրեն դեպուտատության թեկնածու առաջադրած կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների առջև։

Ընտրողների վստահությունը չարդարացրած դեպուտատը ցանկացած ժամանակ կարող է ետ կանչվել ընտրողների մեծամասնության որոշմամբ՝ օրենքով սահմանված կարգով։

# V. ՍՍՀՄ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

Գլուխ 15.

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԸ

*ՀՈԴՎԱԾ 108. ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն մարմինը ՍՍՀՄ Գերագույն սովետն է։*

*ՍՍՀՄ Գերագույն սովետը իրավազոր է լուծելու սույն Սահմանադրությամբ ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված բոլոր հարցերը։*

*ՍՍՀՄ Սահմանադրության ընդունումը, նրա մեջ փոփոխություններ մտցնելը, ՍՍՀՄ կազմի մեջ նոր հանրապետությունների ընդունումը, նոր ինքնավար հանրապետությունների և ինքնավար մարզերի կազմման հաստատումը, ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների, ՍՍՀՄ պետական բյուջեի և դրանց կատարման հաշվետվությունների հաստատումը, իրեն հաշվետու ՍՍՀ Միության մարմինների կազմումը իրականացվում են բացառապես ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից։*

*ՍՍՀՄ օրենքները ընդունվում են ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից կամ համաժողովրդական քվեարկությամբ (հանրաքվեով), որն անցկացվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշմամբ։*

*ՀՈԴՎԱԾ 109. ՍՍՀՄ Գերագույն սովետը կազմված է երկու պալատից՝ Միության սովետից և Ազգությունների սովետից։*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատները իրավահավասար են։*

*ՀՈԴՎԱԾ 110. Միության սովետը և Ազգությունների սովետը բաղկացած են հավասար թվով դեպուտատներից։*

*Միության սովետը ընտրվում է ըստ հավասար թվով բնակչություն ունեցող ընտրական օկրուգների։*

*Ազգությունների սովետը ընտրվում է հետևյալ նորմայով՝ 32 դեպուտատ յուրաքանչյուր միութենական հանրապետությունից, 11 դեպուտատ յուրաքանչյուր ինքնավար հանրապետությունից, 5 դեպուտատ յուրաքանչյուր ինքնավար մարզից և մեկ դեպուտատ յուրաքանչյուր ինքնավար օկրուգից։*

*Միության սովետը և Ազգությունների սովետը իրենց կողմից ընտրվող մանդատային հանձնաժողովների ներկայացմամբ որոշում են ընդունում դեպուտատների լիազորությունները ճանաչելու մասին, իսկ ընտրությունների օրենսդրության խախտման դեպքում՝ առանձին դեպուտատների ընտրությունները անվավեր ճանաչելու մասին։*

*ՀՈԴՎԱԾ 111. ՍՍՀՄ Գերագույն սովետի յուրաքանչյուր պալատ ընտրում է պալատի նախագահ և նրա չորս տեղակալներ։*

*Միության սովետի և Ազգությունների սովետի նախագահները ղեկավարում են համապատասխան պալատների նիստերը և տնօրինում նրանց ներքին կարգուկանոնը։*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատների համատեղ նիստերը հերթով վարում են Միության սովետի և Ազգությունների սովետի նախագահները։*

*ՀՈԴՎԱԾ 112. ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանները գումարվում են տարեկան երկու անգամ։*

*Արտահերթ նստաշրջանները գումարվում են ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության կողմից իր նախաձեռնությամբ, ինչպես նաև միութենական հանրապետության առաջարկությամբ կամ պալատներից մեկի դեպուտատների առնվազն մեկ երրորդի առաջարկությամբ։*



*ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանը բաղկացած է պալատների անջատ և համատեղ նիստերից, ինչպես նաև դրանց միջև ընկած ժամանակամիջոցում անցկացվող պալատների մշտական հանձնաժողովների կամ ՍՍՀՄ Գերագույն սովետի հանձնաժողովների նիստերից։ Նստաշրջանը բացվում և փակվում է պալատների անջատ կամ համատեղ նիստերում։*

*ՀՈԴՎԱԾ 113. ՍՍՀՄ Գերագույն սովետում օրենսդրական նախաձեռնության իրավունքը պատկանում է Միության սովետին, Ազգությունների սովետին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, միութենական հանրապետություններին՝ ի դեմս նրանց պետական իշխանության բարձրագույն մարմինների, ՍՍՀՄ Գերագույն սովետի հանձնաժողովներին և նրա պալատների մշտական հանձնաժողովներին, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատներին, ՍՍՀՄ գերագույն դատարանին, ՍՍՀՄ գլխավոր դատախազին։*

*Օրենսդրական նախաձեռնության իրավունք ունեն նաև՝ հասարակական կազմակերպությունները՝ ի դեմս իրենց ընդհանուր-միութենական մարմինների։*

*ՀՈԴՎԱԾ 114. Օրենքների նախագծերը և ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը ներկայացված մյուս հարցերը քննության են առնվում պալատների կողմից իրենց անջատ կամ համատեղ նիստերում։ Անհրաժեշտության դեպքում օրենքի նախագիծը կամ համապատասխան հարցը կարող է նախնական կամ լրացուցիչ քննարկման հանձնվել մեն կամ մի քանի հանձնաժողովների։*

*ՍՍՀՄ օրենքը ընդունված է համարվում, եթե ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատներից յուրաքանչյուրում նրա օգտին քվեարկել է պալատի դեպուտատների ընդհանուր թվի մեծամասնությունը։ ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշումները և մյուս ակտերը ընդունվում են ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների ընդհանուր թվի մեծամասնությամբ։*

*Օրենքների նախագծերը և պետական կյանքի մյուս առավել կարևոր հարցերը ՍՍՀՄ Գերագույն սովետի կամ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշմամբ՝ ընդունված նրանց նախաձեռնությամբ կամ միութենական հանրապետության առաջարկությամբ, կարող են հանձնվել համաժողովրդական քննարկման։*

*ՀՈԴՎԱԾ 115. Միության սովետի և Ազգությունների սովետի միջև տարաձայնության դեպքում հարցը լուծման է հանձնվում պալատների կողմից պարիտետային հիմունքներով կազմվող հանձնաժողովին, որից հետո հարցը կրկին քննարկվում է Միության սովետի և Ազգությունների սովետի կողմից համատեղ նիստում։ Եթե այս դեպքում ևս համաձայնություն ձեռք չբերվի, հարցը փոխադրվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի հաջորդ նստաշրջանի քննարկմանը, կամ նրա կողմից հանձնվում է համաժողովրդական քվեարկության (հանրաքվեի)։*

*ՀՈԴՎԱԾ 116. ՍՍՀՄ օրենքները, ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշումներն ու մյուս ակտերը հրապարակվում են միութենական հանրապետությունների լեզուներով՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի և քարտուղարի ստորագրություններով։*

*ՀՈԴՎԱԾ 117. ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատը իրավունք ունի հարցապնդումով դիմելու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, մինիստրներին և ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից կազմվող մյուս մարմինների ղեկավարներին։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կամ այն պաշտոնատար անձը, որին ուղղված է հարցապնդումը, պարտավոր են ոչ ավելի, քան եռօրյա ժամկետում, բանավոր կամ գրավոր պատասխան տալ ՍՍՀՄ Գերագույն սովետի տվյալ նստաշրջանում։*

*ՀՈԴՎԱԾ 118. ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատը չի կարող քրեական պատասխանատվության կանչվել, կալանավորվել կամ ենթարկվել դատական կարգով նշանակվող վարչական տույժի միջոցների, առանց ՍՍՀՄ Գերագույն սովետի համաձայնության, իսկ նրա նստաշրջանների միջև ընկած ժամանա-*

կաշրջանում՝ առանց ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության համաձայնության։

ՀՈԴՎԱԾ 119. ՍՍՀՄ Գերագույն սովետը պալատների համատեղ նիստում ընտրում է ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահություն՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի մշտապես գործող մարմին, որը հաշվետու է նրան իր ամբողջ գործունեությամբ և որը, Սահմանադրությամբ նախատեսված շրջանակներում, իրականացնում է ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն մարմնի ֆունկցիաները նրա նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում։

ՀՈԴՎԱԾ 120. ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը ընտրվում է դեպուտատների թվից հետևյալ կազմով՝ Գերագույն սովետի Նախագահության նախագահ, նախագահի առաջին տեղակալ, նախագահի տասնհինգ տեղակալներ՝ յուրաքանչյուր միութենական հանրապետությունից մեկական, Նախագահության քարտուղար և ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության քսանմեկ անդամ։

ՀՈԴՎԱԾ 121. ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը՝

1) նշանակում է ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները.

2) գումարում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանները.

3) կոորդինացնում է ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատների մշտական հանձնաժողովների գործունեությունը.

4) իրականացնում է վերահսկողություն ՍՍՀՄ Սահմանադրության կատարման նկատմամբ և ապահովում միութենական հանրապետությունների սահմանադրությունների ու օրենքների համապատասխանությունը ՍՍՀՄ Սահմանադրությանն ու օրենքներին.

5) մեկնաբանում է ՍՍՀՄ օրենքները.

6) վավերացնում և դենոնսացնում է ՍՍՀՄ միջազգային պայմանագրերը.

7) վերացնում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների որոշումներն ու կարգադրությունները՝ օրենքին չհամապատասխանելու դեպքում.

8) սահմանում է զինվորական կոչումներ, դիվանագիտական աստիճաններ և այլ հատուկ կոչումներ. շնորհում է բարձրագույն զինվորական կոչումներ, դիվանագիտական աստիճաններ և այլ հատուկ կոչումներ.

9) հիմնում է ՍՍՀՄ շքանշաններ ու մեդալներ. սահմանում է ՍՍՀՄ պատվավոր կոչումներ. պարգևատրում է ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով. շնորհում է ՍՍՀՄ պատվավոր կոչումներ.

10) ընդունում է ՍՍՀՄ քաղաքացիության մեջ. լուծում է ՍՍՀՄ քաղաքացիությունից դուրս գալու և ՍՍՀՄ քաղաքացիությունից զրկելու, ապաստան տալու հարցերը.

11) հրատարակում է ամնիստիայի մասին ընդհանուր-միութենական ակտեր և ներում իրականացնում.

12) նշանակում և ետ է կանչում օտարերկրյա պետություններում և միջազգային կազմակերպություններին առընթեր ՍՍՀՄ դիվանագիտական ներկայացուցիչներին.

13) ընդունում է օտարերկրյա պետությունների՝ իրեն առընթեր հավատարմագրված դիվանագիտական ներկայացուցիչների հավատարմագրերը և ետկանչման գրերը.

14) կազմում է ՍՍՀՄ պաշտպանության խորհուրդ և հաստատում նրա կազմը, նշանակում և փոխում է ՍՍՀՄ զինված ուժերի բարձրագույն հրամանատարությունը.

15) ՍՍՀՄ պաշտպանության շահերից ելնելով՝ հայտարարում է ռազմական դրություն առանձին վայրերում կամ ամբողջ երկրում.

16) հայտարարում է ընդհանուր կամ մասնակի զորահավաք.

17) ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում պատերազմական վիճակ է հայտարարում ՍՍՀՄ-ի վրա ռազմական հարձակում կատարվելու դեպքում կամ այն դեպքում, երբ անհրաժեշտ է կատարել ագրեսիայից փոխադարձաբար պաշտպանվելու միջազգային պայմանագրային պարտավորությունները.



18) իրականացնում է ՍՍՀՄ Սահմանադրությամբ և օրենքներով սահմանված այլ լիազորություններ։

ՀՈԴՎԱԾ 122. ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում, հետագայում նրա հաստատմանը ներկայացնելով հերթական նստաշրջանում՝

1) անհրաժեշտության դեպքում փոփոխություններ է մտցնում ՍՍՀՄ գործող օրենսդրական ակտերի մեջ.

2) հաստատում է միութենական հանրապետությունների միջև սահմանների փոփոխությունները.

3) ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի առաջարկությամբ կազմում և վերացնում է ՍՍՀՄ մինիստրություններն ու ՍՍՀՄ պետական կոմիտեները.

4) ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջադրմամբ պաշտոնից ազատում և նշանակում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կազմի մեջ մտնող առանձին անձանց։

ՀՈԴՎԱԾ 123. ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը հրատարակում է հրամանագրեր և ընդունում որոշումներ։

ՀՈԴՎԱԾ 124. ՍՍՀՄ Գերագույն սովետի լիազորությունները լրանալուց հետո ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը պահպանում է իր լիազորությունները ընդհուպ մինչև ՍՍՀՄ նորընտիր Գերագույն սովետի կողմից նոր Նախագահություն կազմվելը։

ՍՍՀՄ նորընտիր Գերագույն սովետը գումարվում է ՍՍՀՄ նախկին կազմի Գերագույն սովետի Նախագահության կողմից ոչ ուշ, քան ընտրություններից երկու ամիս անց։

ՀՈԴՎԱԾ 125. Միության սովետը և Ազգությունների սովետը դեպուտատների թվից ընտրում են մշտական հանձնաժողովներ ՍՍՀՄ Գերագույն սովետի տնօրինությանը վերաբերող հարցերի նախնական քննարկման ու նախապատրաստման համար, ինչպես նաև ՍՍՀՄ օրենքների և ՍՍՀՄ Գերագույն սովետի ու նրա Նախագահության այլ որոշումների կենսագործմանն աջակցելու, պետական մարմինների ու կազմակերպությունների գործունեությունը վերահսկելու համար։ ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատները կարող են պարիտետային հիմունքներով ստեղծել նաև համատեղ հանձնաժողովներ։

ՍՍՀՄ Գերագույն սովետը, երբ անհրաժեշտ է գտնում, ցանկացած հարցի առթիվ ստեղծում է քննչական, վերստուգիչ և այլ հանձնաժողովներ։

Բոլոր պետական ու հասարակական մարմինները, հիմնարկները, կազմակերպությունները և պաշտոնատար անձինք պարտավոր են կատարել ՍՍՀՄ Գերագույն սովետի հանձնաժողովների և նրա պալատների հանձնաժողովների պահանջները, նրանց ներկայացնել անհրաժեշտ նյութեր և փաստաթղթեր։

Հանձնաժողովների հանձնարարականները ենթակա են պարտադիր քննարկման պետական ու հասարակական մարմինների, հիմնարկների և կազմակերպությունների կողմից։ Քննարկման արդյունքների կամ ձեռնարկված միջոցների մասին պետք է հաղորդվի հանձնաժողովներին սահմանված ժամկետում։

ՀՈԴՎԱԾ 126. ՍՍՀՄ Գերագույն սովետը վերահսկողություն է իրականացնում իրեն հաշվետու բոլոր պետական մարմինների գործունեության նկատմամբ։

ՍՍՀՄ Գերագույն սովետը կազմում է ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտե, որը գլխավորում է ժողովրդական վերահսկողության մարմինների սիստեմը։

Ժողովրդական վերահսկողության մարմինների կազմակերպումն ու նրանց գործունեության կարգը որոշվում են ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին օրենքով։

ՀՈԴՎԱԾ 127. ՍՍՀՄ Գերագույն սովետի և նրա մարմինների գործունեության կարգը որոշվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի ռեգլամենտով և ՍՍՀՄ Սահմանադրության հիման վրա հրատարակվող ՍՍՀՄ մյուս օրենքներով։

## Գլուխ 16.

## ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

*ՀՈԴՎԱԾ 128. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը՝ ՍՍՀՄ կառավարությունը, ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն գործադիր և կարգադրիչ մարմինն է։*

*ՀՈԴՎԱԾ 129. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կազմվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից Միության սովետի և Ազգությունների սովետի համատեղ նիստում, հետևյալ կազմով՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալներ և տեղակալներ, ՍՍՀՄ մինիստրներ, ՍՍՀՄ պետական կոմիտեների նախագահներ։*

*ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կազմի մեջ ի պաշտոնե մտնում են միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների նախագահները։*

*ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջադրմամբ ՍՍՀՄ Գերագույն սովետը կարող է ՍՍՀՄ կառավարության կազմի մեջ մտցնել ՍՍՀՄ այլ մարմինների և կազմակերպությունների ղեկավարների։*

*ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը իր լիազորությունները վայր է դնում ՍՍՀՄ նորընտիր Գերագույն սովետի առջև նրա առաջին նստաշրջանում։*

*ՀՈԴՎԱԾ 130. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը պատասխանատու է ՍՍՀՄ Գերագույն սովետի առջև և հաշվետու է նրան, իսկ ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության առջև, որին հաշվետու է։*

*ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը իր աշխատանքի մասին կանոնավոր կերպով հաշվետու է լինում ՍՍՀՄ Գերագույն սովետի առջև։*

*ՀՈԴՎԱԾ 131. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը իրավազոր է լուծելու պետական կառավարման՝ ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված բոլոր հարցերը, որքանով դրանք Սահմանադրությամբ չեն մտնում ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության իրավասության մեջ։*

*Իր լիազորությունների շրջանակներում ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը՝*

*1) ապահովում է ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական շինարարության ղեկավարումը. մշակում և իրականացնում է միջոցառումներ ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի աճն ապահովելու, գիտության ու տեխնիկայի զարգացնելու, բնական ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու և պահպանելու, դրամական և վարկային սիստեմն ամրապնդելու, գների, աշխատանքի վարձատրության, սոցիալական ապահովության միասնական քաղաքականություն վարելու, պետական ապահովագրություն և հաշվառման ու վիճակագրության միասնական սիստեմ կազմակերպելու ասպարեզում. կազմակերպում է արդյունաբերական, շինարարական, գյուղատնտեսական ձեռնարկությունների ու միավորումների, տրանսպորտի և կապի ձեռնարկությունների, բանկերի, ինչպես նաև ընդհանուր-միութենական ենթակայության այլ կազմակերպությունների և հիմնարկների կառավարումը.*

*2) մշակում և ՍՍՀՄ Գերագույն սովետ է մտցնում ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման ընթացիկ և հեռանկարային պետական պլանները, ՍՍՀՄ պետական բյուջեն. միջոցներ է ձեռնարկում պետական պլանների և բյուջեի կատարման ուղղությամբ. ՍՍՀՄ Գերագույն սովետին հաշվետվություններ է ներկայացնում պլանների կատարման և բյուջեի կատարման մասին.*

*3) միջոցառումներ է իրականացնում պետության շահերը պաշտպանելու, սոցիալիստական սեփականությունն ու հասարակական կարգը պահպանելու, քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները ապահովելու և պաշտպանելու ասպարեզում.*

*4) միջոցներ է ձեռնարկում ապահովելու պետական անվտանգությունը.*

*5) իրականացնում է ՍՍՀՄ զինված ուժերի ընդհանուր ղեկավարումը, որոշում է իրական զինվորական ծառայության համար զորակոչի ենթակա քաղաքացիների ամենամյա կոնտինգենտները.*

*6) իրականացնում է ընդհանուր ղեկավարությունը օտարերկրյա պետու-*



*թյունների հետ հարաբերությունների, արտաքին առևտրի, արտասահմանյան երկրների հետ ՍՍՀՄ տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության բնագավառում. միջոցներ է ձեռնարկում՝ ապահովելու ՍՍՀՄ միջազգային պայմանագրերի կատարումը. հաստատում և դենոնսացնում է միջազգային միջկառավարական պայմանագրերը.*

*7) անհրաժեշտության դեպքում կազմում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր տնտեսական, սոցիալ-կուլտուրական և պաշտպանական շինարարության գործերի կոմիտեներ, գլխավոր վարչություններ և այլ գերատեսչություններ։*

*ՀՈԴՎԱԾ 132. Ժողովրդական տնտեսության ղեկավարումն ապահովելու հետ կապված հարցերի և պետական կառավարման մյուս հարցերի լուծման համար, որպես ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մշտական մարմին, գործում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահությունը՝ կազմված ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահից, նախագահի առաջին տեղակալներից ու տեղակալներից։*

*ՀՈԴՎԱԾ 133. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ օրենքների և ՍՍՀՄ Գերագույն սովետի ու նրա նախագահության այլ որոշումների հիման վրա և ի կատարումն դրանց հրատարակում է որոշումներ ու կարգադրություններ և ստուգում դրանց կատարումը։ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներն ու կարգադրությունները ենթակա են պարտադիր կատարման ՍՍՀՄ ամբողջ տերիտորիայում։*

*ՀՈԴՎԱԾ 134. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը իրավունք ունի ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերում կասեցնելու միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների որոշումների և կարգադրությունների կատարումը, ինչպես նաև չեղյալ հայտարարելու ՍՍՀՄ մինիստրությունների, ՍՍՀՄ պետական կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների ակտերը։*

*ՀՈԴՎԱԾ 135. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը միավորում և ուղղություն է տալիս ընդհանուր-միութենական և միութենական-հանրապետական մինիստրությունների և ՍՍՀՄ պետական կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների աշխատանքին։*

*Ընդհանուր-միութենական մինիստրությունները և ՍՍՀՄ պետական կոմիտեները ՍՍՀՄ ամբողջ տերիտորիայում իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում են կամ միջճյուղային կառավարումն իրականացնում են անմիջականորեն կամ իրենց կողմից ստեղծվող մարմինների միջոցով։*

*Միութենական-հանրապետական մինիստրությունները և ՍՍՀՄ պետական կոմիտեները իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում կամ միջճյուղային կառավարումն իրականացնում են, որպես կանոն, միութենական հանրապետությունների համապատասխան մինիստրությունների, պետական կոմիտեների, այլ մարմինների միջոցով և անմիջականորեն կառավարում են միութենական ենթակայության առանձին ձեռնարկությունները և միավորումները։ Ձեռնարկություններն ու միավորումները հանրապետական ու տեղական ենթակայությունից միութենական ենթակայության հանձնելու կարգը որոշվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության կողմից։*

*Մինիստրությունները և ՍՍՀՄ պետական կոմիտեները պատասխանատվություն են կրում իրենց հանձնարարված կառավարման ոլորտների վիճակի ու զարգացման համար, իրենց իրավասության շրջանակներում՝ ՍՍՀՄ օրենքների, ՍՍՀՄ Գերագույն սովետի ու նրա նախագահության այլ որոշումների, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների ու կարգադրությունների հիման վրա և ի կատարումն դրանց հրատարակում են ակտեր, կազմակերպում և ստուգում են դրանց կատարումը։*

*ՀՈԴՎԱԾ 136. ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և նրա նախագահության իրավասությունը, նրանց գործունեության կարգը, մյուս պետական մարմինների հետ Մինիստրների խորհրդի հարաբերությունները, ինչպես նաև ընդհանուր-միութենական և միութենական-հանրապետական մինիստրությունների և*

ՍՍՀՄ պետական կոմիտեների ցանկը որոշվում են Սահմանադրության հիման վրա ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մասին օրենքով։

# VI. ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

## Գլուխ 17.

## ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

*ՀՈԴՎԱԾ 137.* Միութենական հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմինը միութենական հանրապետության Գերագույն սովետն է։

Միութենական հանրապետության Գերագույն սովետը իրավազոր է լուծելու ՍՍՀՄ Սահմանադրությամբ և միութենական հանրապետության Սահմանադրությամբ միութենական հանրապետության տնօրինությանը վերապահված բոլոր հարցերը։

Միութենական հանրապետության Սահմանադրության ընդունումը, նրա մեջ փոփոխություններ մտցնելը, միութենական հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների, պետական բյուջեի և դրանց կատարման հաշվետվությունների հաստատումը, իրեն հաշվետու մարմինների կազմումը իրականացվում են բացառապես միութենական հանրապետության Գերագույն սովետի կողմից։

Միութենական հանրապետության օրենքներն ընդունվում են միութենական հանրապետության Գերագույն սովետի կողմից կամ ժողովրդական քվեարկությամբ (հանրաքվեով), որն անցկացվում է միութենական հանրապետության Գերագույն սովետի որոշմամբ։

*ՀՈԴՎԱԾ 138.* Միութենական հանրապետության Գերագույն սովետը ընտրում է Գերագույն սովետի նախագահություն՝ միութենական հանրապետության Գերագույն սովետի մշտապես գործող մարմին, որը նրան հաշվետու է իր ամբողջ գործունեությամբ։ Միութենական հանրապետության Գերագույն սովետի նախագահության կազմն ու լիազորությունները որոշվում են միութենական հանրապետության Սահմանադրությամբ։

*ՀՈԴՎԱԾ 139.* Միութենական հանրապետության Գերագույն սովետը կազմում է միութենական հանրապետության Մինիստրների խորհուրդ՝ միութենական հանրապետության կառավարություն, որը միութենական հանրապետության պետական իշխանության բարձրագույն գործադիր և կարգադրիչ մարմինն է։

Միութենական հանրապետության Մինիստրների խորհուրդը պատասխանատու է միութենական հանրապետության Գերագույն սովետի առջև և հաշվետու է նրան, իսկ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում՝ միութենական հանրապետության Գերագույն սովետի նախագահության առջև, որին հաշվետու է։

*ՀՈԴՎԱԾ 140.* Միութենական հանրապետության Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ և միութենական հանրապետության օրենսդրական ակտերի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների ու կարգադրությունների հիման վրա և ի կատարումն դրանց հրատարակում է որոշումներ ու կարգադրություններ, կազմակերպում և ստուգում է դրանց կատարումը։

*ՀՈԴՎԱԾ 141.* Միութենական հանրապետության Մինիստրների խորհուրդը իրավունք ունի կասեցնելու ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդների որոշումների ու կարգադրությունների կատարումը, վերացնելու



ժողովրդական դեպուտատների երկրամասային, մարզային, քաղաքային (հանրապետական ենթակայության քաղաքների) սովետների, ինքնավար մարզերի ժողովրդական դեպուտատների սովետների գործադիր կոմիտեների, իսկ մարզային բաժանում չունեցող միութենական հանրապետություններում՝ ժողովրդական դեպուտատների շրջանային և համապատասխան քաղաքային սովետների գործադիր կոմիտեների որոշումներն ու կարգադրությունները։

*ՀՈԴՎԱԾ 142.* Միութենական հանրապետության Մինիստրների խորհուրդը միավորում և ուղղություն է տալիս միութենական հանրապետության միութենական-հանրապետական և հանրապետական մինիստրությունների, պետական կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների աշխատանքին։

Միութենական հանրապետության միութենական-հանրապետական մինիստրություններն ու պետական կոմիտեները իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում կամ միջճյուղային կառավարումն իրականացնում են՝ ենթարկվելով ինչպես միութենական հանրապետության Մինիստրների խորհրդին, այնպես էլ ՍՍՀՄ համապատասխան միութենական-հանրապետական մինիստրությանը կամ ՍՍՀՄ պետական կոմիտեին։

Հանրապետական մինիստրություններն ու պետական կոմիտեները իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում կամ միջճյուղային կառավարումն իրականացնում են՝ ենթարկվելով միութենական հանրապետության Մինիստրների խորհրդին։

## Գլուխ 18.

## ԻՆՔՆԱՎԱՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

*ՀՈԴՎԱԾ 143.* Ինքնավար հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմինը ինքնավար հանրապետության Գերագույն սովետն է։

Ինքնավար հանրապետության Սահմանադրության ընդունումը, նրա մեջ փոփոխություններ մտցնելը, ինքնավար հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների, ինչպես նաև պետական բյուջեի հաստատումը, իրեն հաշվետու մարմինների կազմումը իրականացվում են բացառապես ինքնավար հանրապետության Գերագույն սովետի կողմից։

Ինքնավար հանրապետության օրենքները ընդունվում են ինքնավար հանրապետության Գերագույն սովետի կողմից։

*ՀՈԴՎԱԾ 144.* Ինքնավար հանրապետության Գերագույն սովետը ընտրում է ինքնավար հանրապետության Գերագույն սովետի նախագահություն և կազմում ինքնավար հանրապետության Մինիստրների խորհուրդ՝ ինքնավար հանրապետության կառավարություն։

## Գլուխ 19.

## ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՏԵՂԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

*ՀՈԴՎԱԾ 145.* Երկրամասերում, մարզերում, ինքնավար մարզերում, ինքնավար օկրուգներում, շրջաններում, քաղաքներում, քաղաքների շրջաններում, ավաններում, գյուղական բնակավայրերում պետական իշխանության մարմինները ժողովրդական դեպուտատների համապատասխան սովետներն են։

*ՀՈԴՎԱԾ 146.* Ժողովրդական դեպուտատների տեղական սովետները լուծում են տեղական նշանակության բոլոր հարցերը, ելնելով համապետական շահերից և սովետի տերիտորիայում ապրող քաղաքացիների շահերից, կենսագործում են վերադաս պետական մարմինների որոշումները, ղեկավարում են ժողովրդական դեպուտատների ստորադաս սովետների գործունեությունը, մասնակցում են հանրապետական և ընդհանուր-միութենական նշանակություն ունեցող հարցերի քննարկմանը, դրանց առթիվ մտցնում իրենց առաջարկությունները։

Ժողովրդական դեպուտատների տեղական սովետները իրենց տերիտորիայում ղեկավարում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարությունը. հաստատում են տնտեսական և սոցիալական զարգացման պլանները և տեղական բյուջեն. իրականացնում են իրենց ենթակա պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների ղեկավարումը. ապահովում են օրենքների կատարումը, պետական և հասարակական կարգի պահպանումը, քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը, աջակցում են երկրի պաշտպանունակության ամրապնդմանը:

ՀՈԴՎԱԾ 147. Իրենց լիազորությունների շրջանակներում ժողովրդական դեպուտատների տեղական սովետներն ապահովում են տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումը իրենց տերիտորիայում, վերահսկողություն են իրականացնում այդ տերիտորիայում գտնվող վերադաս ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների կողմից օրենսդրության պահպանման նկատմամբ, կոորդինացնում և վերահսկում են նրանց գործունեությունը հողօգտագործման, բնության պահպանության, շինարարության, աշխատանքային ռեսուրսների օգտագործման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, բնակչության սոցիալ-կուլտուրական, կենցաղային և այլ սպասարկման բնագավառում:

ՀՈԴՎԱԾ 148. Ժողովրդական դեպուտատների տեղական սովետները որոշումներ են ընդունում ՍՍՀ Միության միութենական և ինքնավար հանրապետության օրենսդրությամբ նրանց վերապահված լիազորությունների շրջանակներում: Տեղական սովետների որոշումները ենթակա են պարտադիր կատարման սովետի տերիտորիայում գտնվող բոլոր ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների, ինչպես նաև պաշտոնատար անձանց ու քաղաքացիների կողմից:

ՀՈԴՎԱԾ 149. Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր և կարգադրիչ մարմինները նրանց կողմից դեպուտատների թվից ընտրվող գործադիր կոմիտեներն են:

Գործադիր կոմիտեները ոչ պակաս, քան տարեկան մեկ անգամ, հաշվետու են լինում իրենց ընտրող սովետների առջև, ինչպես նաև աշխատավորական կոլեկտիվների ժողովներում և քաղաքացիների բնակության վայրում գումարվող ժողովներում:

ՀՈԴՎԱԾ 150. Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեները անմիջականորեն հաշվետու են ինչպես իրենց ընտրող սովետին, այնպես էլ վերադաս գործադիր և կարգադրիչ մարմնին:

# VII. ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ, ԱՐԲԻՏՐԱԺԸ ԵՎ ԴԱՏԱԽԱԶԱԿԱՆ ՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆԸ

## Գլուխ 20.

## ԴԱՏԱՐԱՆԸ ԵՎ ԱՐԲԻՏՐԱԺԸ

ՀՈԴՎԱԾ 151. ՍՍՀՄ-ում արդարադատությունն իրականացվում է միայն դատարանի միջոցով:

ՍՍՀՄ-ում գործում են ՍՍՀՄ գերագույն դատարան, միութենական հանրապետությունների գերագույն դատարաններ, ինքնավար հանրապետությունների գերագույն դատարաններ, երկրամասային, մարզային, քաղաքային դատարաններ, ինքնավար մարզերի դատարաններ, ինքնավար օկրուգների դատարաններ, շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարաններ, ինչպես նաև զինվորական տրիբունալներ՝ զինված ուժերում:

ՀՈԴՎԱԾ 152. ՍՍՀՄ-ում բոլոր դատարանները կազմվում են դատավորների և ժողովրդական ատենակալների ընտրովիության հիմունքներով:



Շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ժողովրդական դատավորներն ընտրվում են շրջանի (քաղաքի) քաղաքացիների կողմից ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ՝ հինգ տարի ժամանակով: Շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ժողովրդական ատենակալներն ընտրվում են քաղաքացիների ժողովներում՝ ըստ իրենց աշխատանքի կամ բնակության վայրի՝ բաց քվեարկությամբ, երկու և կես տարի ժամանակով:

Վերադաս դատարաններն ընտրվում են ժողովրդական դեպուտատների համապատասխան սովետների կողմից՝ հինգ տարի ժամանակով:

Զինվորական տրիբունալների դատավորներն ընտրվում են ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության կողմից՝ հինգ տարի ժամանակով, իսկ ժողովրդական ատենակալները՝ զինծառայողների ժողովների կողմից՝ երկու և կես տարի ժամանակով:

Դատավորներն ու ժողովրդական ատենակալները պատասխանատու են ընտրողների կամ իրենց ընտրած մարմինների առջև, հաշվետու են լինում նրանց առջև և կարող են նրանց կողմից ետ կանչվել օրենքով սահմանված կարգով:

ՀՈԴՎԱԾ 153. ՍՍՀՄ գերագույն դատարանը ՍՍՀՄ բարձրագույն դատական մարմինն է և հսկողություն է իրականացնում ՍՍՀՄ դատարանների, ինչպես նաև, օրենքով սահմանված շրջանակներում, միութենական հանրապետությունների դատարանների դատական գործունեության նկատմամբ:

ՍՍՀՄ գերագույն դատարանն ընտրվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից՝ կազմված նախագահից, նրա տեղակալներից, անդամներից և ժողովրդական ատենակալներից: ՍՍՀՄ գերագույն դատարանի կազմի մեջ ի պաշտոնե մտնում են միութենական հանրապետությունների գերագույն դատարանների նախագահները:

ՍՍՀՄ Գերագույն դատարանի կազմակերպումն ու գործունեության կարգը որոշվում են ՍՍՀՄ Գերագույն դատարանի մասին օրենքով:

ՀՈԴՎԱԾ 154. Քաղաքացիական և քրեական գործերի քննությունը բոլոր դատարաններում կատարվում է կոլեգիալ կարգով. առաջին ատյանի դատարանում՝ ժողովրդական ատենակալների մասնակցությամբ: Ժողովրդական ատենակալները արդարադատությունն իրականացնելիս օգտվում են դատավորի բոլոր իրավունքներից:

ՀՈԴՎԱԾ 155. Դատավորներն ու ժողովրդական ատենակալները անկախ են և ենթարկվում են միայն օրենքին:

ՀՈԴՎԱԾ 156. ՍՍՀՄ-ում արդարադատությունն իրականացվում է օրենքի և դատարանի առջև քաղաքացիների հավասարության սկզբունքներով:

ՀՈԴՎԱԾ 157. Գործերի քննությունը բոլոր դատարաններում դռնբաց է: Գործերը դատարանի դռնփակ նիստում լսել թույլատրվում է միայն օրենքով սահմանված դեպքերում, ընդ որում, պահպանելով դատավարության բոլոր կանոնները:

ՀՈԴՎԱԾ 158. Մեղադրյալի համար ապահովվում է պաշտպանության իրավունք:

ՀՈԴՎԱԾ 159. Դատավարությունը տարվում է միութենական կամ ինքնավար հանրապետության, ինքնավար մարզի, ինքնավար օկրուգի լեզվով կամ տվյալ վայրի բնակչության մեծամասնության լեզվով: Գործին մասնակցող այն անձանց համար, ովքեր չեն տիրապետում դատավարության լեզվին, իրավունք է ապահովվում գործի նյութերին լրիվ ծանոթանալու, դատական գործողություններին մասնակցելու թարգմանի միջոցով, և իրավունք՝ դատարանում հանդես գալու մայրենի լեզվով:

ՀՈԴՎԱԾ 160. Ոչ ոք չի կարող հանցագործության մեջ մեղավոր ճանաչվել, ինչպես նաև քրեական պատժի ենթարկվել այլ կերպ, քան դատարանի դատավճռով և օրենքին համապատասխան:

ՀՈԴՎԱԾ 161. Քաղաքացիներին և կազմակերպություններին իրավաբանական օգնություն ցույց տալու համար գործում են փաստաբանների կոլեգիա-

ներ։ Օրենսդրությամբ նախատեսված դեպքերում քաղաքացիներին իրավաբանական օգնությունը ցույց է տրվում անվճար։

Փաստաբանական ծառայության կազմակերպումն ու գործունեության կարգը որոշվում են ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենսդրությամբ։

ՀՈԴՎԱԾ 162. Քաղաքացիական և քրեական գործերի դատավարությանը թույլատրվում է հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչների մասնակցությունը։

ՀՈԴՎԱԾ 163. Ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների միջև տնտեսական վեճերը լուծվում են պետական արբիտրաժի մարմինների միջոցով՝ նրանց իրավասության շրջանակներում։

Պետական արբիտրաժի մարմինների կազմակերպումն ու գործունեության կարգը որոշվում են ՍՍՀՄ-ում պետական արբիտրաժի մասին օրենքով։

### Գլուխ 21.

### ԴԱՏԱԽԱԶՈՒԹՅՈՒՆԸ

ՀՈԴՎԱԾ 164. Բոլոր մինիստրությունների, պետական կոմիտեների և գերատեսչությունների, ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր ու կարգադրիչ մարմինների, կոլտնտեսությունների, կոոպերատիվ և այլ հասարակական կազմակերպությունների, պաշտոնատար անձանց, ինչպես նաև քաղաքացիների կողմից օրենքների ճշգրիտ և միատեսակ կատարման նկատմամբ բարձրագույն հսկողությունը դրվում է ՍՍՀՄ գլխավոր դատախազի և նրան ենթակա դատախազների վրա։

ՀՈԴՎԱԾ 165. ՍՍՀՄ գլխավոր դատախազը նշանակվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից, պատասխանատու է նրա առջև և հաշվետու է նրան, իսկ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության առջև, որին հաշվետու է։

ՀՈԴՎԱԾ 166. Միութենական հանրապետությունների, ինքնավար հանրապետությունների, երկրամասերի, մարզերի և ինքնավար մարզերի դատախազները նշանակվում են ՍՍՀՄ գլխավոր դատախազի կողմից։ Ինքնավար օկրուգների դատախազները, շրջանային և քաղաքային դատախազները նշանակվում են միութենական հանրապետությունների դատախազների կողմից և հաստատվում ՍՍՀՄ գլխավոր դատախազի կողմից։

ՀՈԴՎԱԾ 167. ՍՍՀՄ գլխավոր դատախազի և բոլոր ստորադաս դատախազների լիազորությունների ժամկետը հինգ տարի է։

ՀՈԴՎԱԾ 168. Դատախազության մարմինները իրենց լիազորություններն իրականացնում են՝ անկախ որևէ տեղական մարմնից, ենթարկվելով միայն ՍՍՀՄ գլխավոր դատախազին։

Դատախազության մարմինների կազմակերպումն ու գործունեության կարգը որոշվում են ՍՍՀՄ դատախազության մասին օրենքով։

## VIII. ՍՍՀՄ ԳԵՐԲԸ, ԴՐՈՇԱԿԸ, ՀԻՄՆԸ ԵՎ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

ՀՈԴՎԱԾ 169. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պետական գերբը իրենից ներկայացնում է երկրագնդի ֆոնի վրա պատկերված մուրճ ու մանգաղ, արևի ճառագայթների մեջ և հասկերով շրջանակված, միութենական հանրապետությունների լեզուներով մակագրված՝



«Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։ Գերբի վերին մասում հնգաթև աստղ է։

ՀՈԴՎԱԾ 170. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պետական դրոշակը իրենից ներկայացնում է ուղղանկյուն կարմիր պաստառ, որի վերին անկյունում՝ կոթի մոտ, պատկերված են ոսկեզօծ մուրճ ու մանգաղ, իսկ նրանց վերևում՝ հնգաթև կարմիր աստղ՝ շրջանակված ոսկեբիզով։ Դրոշակի լայնության և երկարության հարաբերությունն է՝ $1 \times 2$։

ՀՈԴՎԱԾ 171. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պետական հիմնը հաստատվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության կողմից։

ՀՈԴՎԱԾ 172. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մայրաքաղաքը Մոսկվան է։

## IX. ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ՓՈՓՈԽՄԱՆ ԿԱՐԳԸ

ՀՈԴՎԱԾ 173. ՍՍՀՄ Սահմանադրությունը բարձրագույն իրավաբանական ուժ ունի։ Բոլոր օրենքները և պետական մարմինների մյուս ակտերը հրատարակվում են ՍՍՀՄ Սահմանադրության հիման վրա և նրան համապատասխան։

ՀՈԴՎԱԾ 174. ՍՍՀՄ Սահմանադրության փոփոխումը կատարվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի որոշմամբ՝ ընդունված նրա պալատներից յուրաքանչյուրի դեպուտատների ընդհանուր թվի առնվազն երկու երրորդի մեծամասնությամբ։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ

# Դ Ե Կ Լ Ա Ր Ա Ց Ի Ա Ն

### ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԸ) ԸՆԴՈՒՆԵԼՈՒ ԵՎ ՀԱՅՏԱՐԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը, գործելով սովետական ժողովրդի անունից և արտահայտելով նրա սուվերեն կամքը, ընդունում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրությունը (Հիմնական օրենքը) և հայտարարում, որ այն գործողության մեջ է մտնում 1977 թվականի հոկտեմբերի 7-ից:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Լ. ԲՐԵԺՆԵՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 7 հոկտեմբերի 1977 թ.*

---

# Օ Ր Ե Ն Ք

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ

### ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ) ԸՆԴՈՒՆՄԱՆ ՕՐԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՈՆ ՀԱՅՏԱՐԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը **ՈՐՈՇՈՒՄ Է.**

Ի նշանավորումն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության (Հիմնական օրենքի) ընդունման, Սահմանադրության ընդունման օրը՝ հոկտեմբերի 7-ը հայտարարել համաժողովրդական տոն՝ ՍՍՀՄ Սահմանադրության օր:

Հոկտեմբերի 7-ը համարել ոչ աշխատանքային օր:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Լ. ԲՐԵԺՆԵՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 7 հոկտեմբերի 1977 թ.*



# Օ Ր Ե Ն Ք

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ

### ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԸ) ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՄՏՑՆԵԼՈՒ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը **ՈՐՈՇՈՒՄ Է.**

**ՀՈԴՎԱԾ 1.** Մինչև 1977 թվականի հոկտեմբերի 7-ն ընդունված ՍՍՀ Միության օրենքները, միութենական և ինքնավար հանրապետությունների օրենքները, պետական մարմինների մյուս ակտերը պահպանում են իրենց գործողությունը, որքանով դրանք չեն հակասում ՍՍՀՄ նոր Սահմանադրությանը:

**ՀՈԴՎԱԾ 2.** Սահմանել, որ մինչև **ՍՍՀՄ** 1977 թվականի Սահմանադրության ընդունումն ընտրված **ՍՍՀՄ** Գերագույն սովետը, միութենական հանրապետությունների գերագույն սովետները, ինքնավար հանրապետությունների գերագույն սովետները իրականացնում են **ՍՍՀՄ** նոր Սահմանադրությամբ գերագույն սովետներին վերապահվող բոլոր լիազորությունները:

Մինչև **ՍՍՀՄ** 1977 թվականի Սահմանադրության ընդունումն ընտրված պետական իշխանության տեղական մարմինները անվանվում են համապատասխանաբար՝ ժողովրդական դեպուտատների երկրամասային, մարզային սովետներ, ինքնավար մարզերի, ինքնավար օկրուգների ժողովրդական դեպուտատների սովետներ, ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային, քաղաքների շրջանային, ավանային, գյուղական սովետներ և իրականացնում են **ՍՍՀՄ** նոր Սահմանադրությամբ ժողովրդական դեպուտատների տեղական սովետներին վերապահվող բոլոր լիազորությունները:

Ժողովրդական դեպուտատների սովետների լիազորությունների այն ժամկետները, որոնք սահմանված են **ՍՍՀՄ** 1977 թվականի Սահմանադրության 90-րդ հոդվածով, տարածվում են մինչև Սահմանադրության ընդունումն ընտրված սովետների վրա:

**ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությանն առաջարկվում է որոշել **ՍՍՀՄ** Գերագույն սովետի հերթական ընտրությունների անցկացման ժամանակը, իսկ միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների նախագահություններին՝ համապատասխանաբար միութենական հանրապետությունների գերագույն սովետների, ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների հերթական ընտրությունների անցկացման ժամանակը:

**ՀՈԴՎԱԾ 3.** Ժողովրդական դեպուտատների սովետների գործադիր և կարգադրիչ մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները, ժողովրդական վերահսկողության մարմինները, դատարանները, պետական արբիտրաժի, դատախազության մարմինները և **ՍՍՀՄ** 1936 թվականի Սահմանադրությանը համապատասխան ստեղծված մյուս պետական մարմինները իրականացնում են **ՍՍՀՄ** նոր Սահմանադրությամբ, ինչպես նաև, այնուհետև՝ մինչև **ՍՍՀՄ** նոր Սահմանադրությունից բխող օրենսդրական ակտերի ընդունումը, Սահմանադրության ընդունումից առաջ հրատարակված օրենսդրությամբ նրանց վերապահվող լիազորությունները:

**ՀՈԴՎԱԾ 4.** Առաջարկել **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությանը մշակել և **ՍՍՀՄ** Գերագույն սովետի քննարկմանը ներկայացնել **ՍՍՀՄ** Գերագույն սովետի ընտրությունների օրենքի նախագիծ և **ՍՍՀՄ** Գերագույն սովետի ռեգլամենտի նախագիծ, ինչպես նաև որոշել **ՍՍՀՄ** օրենսդրությունը

ՍՍՀՄ նոր Սահմանադրությանը համապատասխանեցնելու աշխատանքի կազմակերպման կարգը։

**ՀՈԴՎԱԾ 5.** Առաջարկել **ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդին՝ մշակել և ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը ներկայացնել՝

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մասին օրենքի նախագիծ.

ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին օրենքի նախագիծ.

ՍՍՀՄ-ում պետական արբիտրաժի մասին օրենքի նախագիծ։

**ՀՈԴՎԱԾ 6.** «ՍՍՀՄ Սահմանադրության (Հիմնական օրենքի) ընդունման օրը համաժողովրդական տոն հայտարարելու մասին» **ՍՍՀՄ 1977** թվականի հոկտեմբերի 7-ի օրենքի կապակցությամբ **ՍՍՀ** Միության և միութենական հանրապետությունների աշխատանքային օրենսդրության 31-րդ հոդվածը «Մայիսի 9-ին՝ հաղթանակի օր» բառերից հետո լրացնել «Հոկտեմբերի 7-ին՝ **ՍՍՀՄ** Սահմանադրության օր» բառերով, այդ հոդվածից հանելով «Դեկտեմբերի 5-ին՝ **ՍՍՀՄ** Սահմանադրության օր» բառերը։

**ՀՈԴՎԱԾ 7.** Ժողովրդական դեպուտատների սովետներին, նրանց գործադիր և կարգադրիչ մարմիններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, պետական ու հասարակական մյուս մարմինների ղեկավարներին առաջարկվում է քննության առնել **ՍՍՀՄ** Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման կապակցությամբ այդ օրգանների գործունեության հետ առնչված հարցերի վերաբերյալ քաղաքացիներից ստացված առաջարկությունները ու դիտողությունները և միջոցներ ձեռնարկել դրանց իրականացման ուղղությամբ։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Լ. ԲՐԵԺՆԵՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 7 հոկտեմբերի 1977 թ.*




# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

*ՊԱՏՄԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ մարդու և մարդկային հասարակության անընդհատ առաջադիմության պրոցես է, որի ընթացքում նորի, առաջավորի ստեղծումն ու հասունացումը զուգորդվում է հնի, իր դարն ապրածի կործանման ու հաղթահարման հետ։ Մարդկության առաջընթացը մշտապես ուղեկցվել է հետադարձ թռիչքներով, մարդու զարգացումն ու ազատությունը սահմանափակող, տեխնիկական ու գիտական առաջադիմության որոշ արդյունքները նրա համար չարիքի վերածող երևույթներով։ Դրա համար էլ, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը «...համաշխարհային պատմությունը հարթ կերպով ու ճշտապահորեն առաջ ընթացող, առանց երբեմն հետընթաց հսկայական թռիչք կատարող մի բան պատկերացնելը դիալեկտիկական չէ, գիտական չէ, թեորիապես սխալ բան է» (Երկեր, հ. 22, էջ 416)։*

*Հասարակական զարգացման մեջ արտադրության միջոցների մասնավոր սեփականության առաջացումը հնարավորություն ստեղծեց արտադրաուժերի բուռն զարգացման համար, բայց և միաժամանակ ծնեց այնպիսի սոցիալական հարաբերություններ, որոնք մարդկության մեծամասնությանը դրեցին ստրկական, ճորտական, վարձակալական վիճակի մեջ, մարդկային հարաբերությունը հազարամյակներով հիմնեցին մարդկանց ու ժողովուրդների սոցիալական հակամարտության, բռնության, կողոպուտի, ավերիչ ու բնաջնջող պատերազմների վրա։ Այդպիսի հասարակական կարգերի գագաթնակետը դարձավ իմպերիալիզմը, որը սոցիալական հակամարտությունը հասցրեց ծայրաստիճանի, ծնեց մարդկության բուն իսկ գոյությանը սպառնացող մասսայական բնաջնջման զենքեր և համաշխարհային պատերազմներ։ Միայն մեր դարում իմպերիալիզմի սանձազերծած երկու համաշխարհային պատերազմների ընթացքում սպանվեց ավելի քան 70 մլն մարդ, ոչնչացվեցին մարդկային ստեղծագործ հանճարով ստեղծված բազմաթիվ արժույթներ, զգալիորեն փչացվեց և աղտոտվեց մարդկության օրրան և գոյատևման պայման հանդիսացող բնական միջավայրը։ Մեր դարն ավելի ցայտուն հաստատեց Կ. Մարքսի այն դրույթը, որ բուրժուազիան առաջադիմության է հասնում՝ ինչպես առանձին մարդ-*

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման տասը հնգամյա պլանները տնտեսական ու սոցիալական անշեղ առաջընթացի նշանաձողեր են, որոնցից ամեն մեկն ապահովում է նախորդի նկատմամբ զարգացման ավելի բարձր մակարդակ, ավելի ու ավելի խոր սոցիալական փոփոխություններ։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյա պլանը, որն այսօր հաջողությամբ իրականացվում է, տնտեսության շատ ու շատ բնագավառներում հասցնում է զարգացած սոցիալիստական երկրների բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ավելի մեծ քանակի, քան ամենազարգացած կապիտալիստական երկրներում։ Այսպես, արդեն իսկ 1976 թ. ՍՍՀՄ բնակչության մեկ շնչի հաշվով արտադրվում էր ավելի շատ պողպատ, նավթ, ցեմենտ, բամբակյա գործվածքներ, կաշվե կոշկեղեն, կենդանական յուղ և կաթ, քան կապիտալիստական ամենազարգացած երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ Դա կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի վճռական հաղթանակի դրսևորումն է, որը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, ապահովելու է սոցիալիզմի վերջնական հաղթանակը համաշխարհային մասշտաբով։

Այստեղից կարելի է եզրակացնել, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ ծնունդ առած սոցիալիստական հասարակարգին բնորոշ է երկրների ու ժողովուրդների զարգացման նախկին անհամաչափության հաղթահարում և նրանց զարգացման միակերպ բարձր մակարդակի հաստատում։ Եվ քանի որ այդ երևույթը սոցիալիստական երկրների օգնության շնորհիվ որոշակի չափով տեղի է ունենում նաև մի շարք զարգացող երկրներում, ապա դա կարելի է դիտել որպես համաշխարհային պատմական առաջընթացի նոր տենդենց, որը կյանքի է կոչվել Հոկտեմբերյան հեղափոխությամբ։

Մասնավոր սեփականատիրական կարգերի ծնած սոցիալական չարիքներից մեկը նվաճողական և, ի վերջո, ուժեղ պետությունների միջև աշխարհի բաժանման ու վերաբաժանման պատերազմներն են։ Գիտնականների հաշվումներով վերջին 5 հազար տարում ավելի քան 15.000 նման պատերազմներ են մղվել, որոնց ընթացքում սպանվել է ավելի քան երեք և կես միլիարդ մարդ, ընդ որում դրանցից մոտ 100 միլիոնը զոհվել է մեր դարում իմպերիալիզմի սանձազերծած երկու համաշխարհային և բազմաթիվ տեղական պատերազմներում։ Հոկտեմբերյան հեղափոխության առաջին արարչագործություններից մեկը հաշտության դեկրետն էր և նվաճողական պատերազմների վճռական դատապարտումը։ Եվ եթե նրա հաղթանակով հաստատված սոցիալիստական կարգերը ստիպված էին ռազմական գործողությունների դիմել՝ ապա սոսկ միայն մեր երկիրը ներխուժած իմպերիալիստական բանակներից ու նրանց վարձկաններից պաշտպանվելու համար։ ՍՍՀՄ-ը և սոցիալիստական համագործակցության երկրները, չնայած իրենց օրըստօրե աճող տնտեսական ու քաղաքական հզորությանը, ո՛չ միայն ոչ ոքի չեն սպառնում, այլև իրենց տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով ձգտում են ժողովուրդների կյանքից իսպառ վերացնել պատերազմների հնարավորությունը։ Այսօրվա պայմաններում, երբ իմպերիալիզմը ձգտում է կրկին սանձազերծել համաշխարհային պատերազմ ու անընդհատ տեղական պատերազմներ է մղում, սոցիալիստական համագործակցության երկրները վիթխարի ջանքեր են մղում սպառազինության մրցավազքը դադարեցնելու, միջազգային լարվածությունը թուլացնելու, տարբեր սոցիալական սիստեմների միջև տնտեսական ու քաղաքական խաղաղ համագործակցությունը զարգացնելու համար։ ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների մշակած խաղաղության ծրագիրն այսօր ամենալայն աջակցություն է գտնում ո՛չ միայն սոցիալիստական, այլև զարգացող ու կապիտալիստական երկրների ամենալայն աշխատավոր զանգվածների ու աշխարհի բոլոր առաջադեմ ուժերի կողմից։

Եվ դա միանգամայն բնական է, որովհետև խաղաղության ձգտումը ոչ թե սուբյեկտիվ ցանկություն է, տակտիկական լոզունգ, այլ սոցիալիստական հասարակական-տնտեսական կարգի բուն էությունից բխող անհրաժեշտություն և այդ իսկ առումով կարելի է ասել, որ սոցիալիզմը ծնել է մարդկության կյանքում պատերազմները իսպառ բացառելու, մարդկանց ու ժողովուրդների միջև



հավերժական խաղաղություն հաստատելու նկրտում, մարդկանց ու ժողովուրդների հարաբերություններում բռնությունը հաղթահարելու միտում, որն աստիճանաբար վերածվում է ժողովուրդների միջև համաշխարհային մասշտաբով հակամարտություն ու կեղեքումը բացառող բարեկամական հարաբերությունների հաստատման համամարդկային տենդենցի։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ հաղթանակի շնորհիվ տնտեսական, քաղաքական ու սոցիալական զարգացման նշված արմատական փոփոխությունների մեծագույն արդյունքը մարդկային անհատի վերափոխումն է՝ նոր մարդու և նրա սոցիալիստական ապրելակերպի ձևավորումը։ ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը որոշակիորեն նշեց, որ «...անցած 60-ամյակի կարևորագույն արդյունքն է սովետական մարդը։ Մարդ, որ կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում։ Մարդ, որը կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության։ Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը։ Դա մի այնպիսի մարդ է, որը լինելով ջերմագին հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 131)։

Հոկտեմբերյան հեղափոխությամբ ծնված սոցիալական կարգը ո՛չ միայն արմատականորեն փոխեց մարդկային անհատի տնտեսական-իրավական վիճակը, նրա կյանքի սոցիալական պայմանները, նրա և հասարակության փոխհարաբերության բնույթը, այլև ստեղծեց անհատի իսկապես համակողմանի զարգացման ռեալ հնարավորություն, որոնց հիման վրա ձևավորվեց նրա հոգևոր աշխարհի նոր բովանդակությունը։ Սոցիալիստական կարգերը, խորտակելով անհատի մասնավոր սեփականությամբ սահմանափակվող ազատությունը, անհատին տվեցին իրական ազատություն, որն անքակտելիորեն զուգակցվում է նրա հասարակական պարտականությունների հետ։ Այդ, և միայն այդ ճանապարհով էր հնարավոր բուրժուական ձևական դեմոկրատիայից անցնել սոցիալիստական լայն դեմոկրատիայի, որն ապահովում է անհատի (բոլոր անհատների) և հասարակության շահերի ներդաշնակ զուգակցումը, մարդկանց կենսագործունեության մեջ իրավաքաղաքական հարաբերությունների և բարոյականության միասնությունը, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի միասնությունը։ Սոցիալական ու հոգևոր այդ վերափոխումների բովում ծնվեցին ու անշեղորեն աճեցին հասարակության մեջ անհատի սոցիալական ակտիվությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը, ընդհանուր, հասարակական գործերի համար անհատական պատասխանատվությունը, ամենօրյա աշխատանքային հերոսությունը, հետադիմականի, մարդու ճնշման ու խտրականության նկատմամբ անհանդուրժողականությունը։ Դրանք սոցիալիզմի պայմաններում մարդկային անհատի բնավորության ու հոգևոր կերպարի բնորոշ գծերն են դարձել։

Ահա այս բոլորի հիման վրա այսօր կարելի է պնդել, որ սոցիալիստական հասարակության հասունության շնորհիվ մարդկության զարգացման մեջ հանդես է եկել բոլոր անհատների համակողմանի զարգացման և պատմական պրոցեսում նրանց ստեղծագործական դերի անշեղ աճի տենդենց, որը պատմության մեջ ժողովրդական զանգվածների աճող դերի օրինաչափության որակապես նոր դրսևորում է։

Այդ և նախորդ տենդենցների գործողության մեջ ի հայտ են գալիս հասարակական զարգացման բոլորովին նոր շարժիչ ուժեր, որոնք հայտնի չէին և չէին էլ կարող հայտնի լինել նախասոցիալիստական հասարակական-տնտեսական կարգերին։ Այդպիսի շարժիչ ուժեր են տնտեսական ու սոցիալական կյանքի պլանային ու համաչափ զարգացումը, հասարակության ու անհատի շահերի ներդաշնակությունը, հասարակության սոցիալական միասեռությունն ու բարոյաքաղաքական միասնությունը, անհատի համակողմանի զարգացումն

ու նրա սոցիալական նախաձեռնության անշեղ աճը, ժողովուրդների՝ պրոլետարական-սոցիալիստական ինտերնացիոնալիզմով բնութագրվող բարեկամությունը, սոցիալիստական մրցությունն ու անհատների, երկրների ու ժողովուրդների փոխադարձ օգնությունը և, վերջապես, հասարակության գիտական կառավարումն ապահովող քաղաքական ուժը՝ կոմունիստական կուսակցությունը:

*Դեռևս մեր դարի սկզբին Վ. Ի. Լենինը կոմունիստների կուսակցությունը բնութագրեց որպես մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո անցած վեց տասնամյակների ընթացքում Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն ի տես համայն մարդկության կանխագծեց ու իրականացրեց մեր երկրի սոցիալիստական, քաղաքական ու հոգևոր կյանքի արմատական վերափոխումները և դարձավ աշխարհի բոլոր պրոգրեսիվ ուժերին հզոր հենարան ծառայող, մարդկության առաջընթացի նոր տենդենցների ճանապարհը հարթող ու ամրապնդող քաղաքական հզոր գործոն: Հաստատ վստահությամբ կարելի է պնդել, որ ՍՄԿԿ և մյուս երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների անձնվեր ու հերոսական գործունեության շնորհիվ համաշխարհային կոմունիստական շարժումն այսօր դարձել է մարդկության սոցիալական առաջընթացն ապահովող ու գլխավորող խոշորագույն ու հզոր քաղաքական ուժը:*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի և նրա քաղբյուրոյի գլխավորությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ լուծում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համաշխարհային-պատմական խնդիրը: Այդ ընթացքի լուսավոր նշանաձողերից մեկը ՍՍՀՄ նոր Սահմանադրությունն է, որի մեջ ընդհանրացված ու իմաստավորված են մեր երկրում և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մի շարք այլ երկրներում զարգացած սոցիալիստական հասարակության մեծագույն նվաճումները: ՍՍՀՄ Սահմանադրության մեջ վավերագրված են ո՛չ միայն սոցիալիստական հասարակարգի առ այսօր ձեռք բերած մեծագույն նվաճումները, որոնք համապետական, և այժմ կարելի է ասել— համաժողովրդական գերագույն օրենքի ուժ են ստացել, այլև նշված են հասարակական առաջընթացի նոր տենդենցները, որոնց իրականացման ռահվիրան է Հոկտեմբերյան հեղափոխության մայր երկիրը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1977 թ. մայիսյան պլենումում, խոսելով նոր Սահմանադրության միջազգային նշանակության մասին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը արդարացիորեն նշեց, որ «...ՍՍՀՄ նոր Սահմանադրության՝ զարգացած սոցիալիզմի Սահմանադրության, կառուցվող կոմունիզմի Սահմանադրության ընդունումը կլինի ո՛չ միայն պատմական իրադարձություն մեր երկրի համար,* այլև հսկայական միջազգային նշանակություն ունեցող իրադարձություն: *Նրա կենսագործումը տևական խոր ազդեցություն կունենա մեր հայրենիքի սահմաններից շատ հեռու»:*

*Մեծ Հոկտեմբերի հաղթանակից անցել է ընդամենը վեց տասնամյակ՝ մարդու միջին կյանքից էլ պակաս, սակայն նրա վերափոխիչ ու բարերար ազդեցությունը ողջ մարդկության զարգացման, չարիքներից ու տառապանքներից զերծ լուսավոր ապագայի հիմքերի կազմավորման գործում՝ արդեն ամբողջ առաջավոր մարդկությունն է ընդունում: Եվ այդ իսկ առումով հետզհետե ավելի ակնհայտ է դառնում, որ* «Հոկտեմբերյան հեղափոխությունը մի այնպիսի սոցիալ-քաղաքական իրադարձություն է, որի վեհությունն ավելի ու ավելի խոր ու ցայտուն կերպով է բացահայտվում հասարակական առաջընթացի ուղիով մարդկության յուրաքանչյուր նոր քայլի հետ» *(ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին: Երևան, 1977, էջ 21):*

*Մենք հետզհետե ավելի ու ավելի ենք հեռանում Հոկտեմբերյան հեղափոխության՝ մարդկության նոր կյանքի պայծառ արշալույսից, բայց որքան ավելի ենք հեռանում, այնքան ավելի խորն ու համապարփակ ենք զգում դրա մեծությունը, մարդկության ճակատագրի, նրա ապագայի համար նրա ստեղծածի վեհությունը:*

# ՆՈՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՍՏԵՂԾԱՐԱՐԸ

**Ս. Ս. ԱՄԻՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԺԱՄԱՆԱԿԻ ՄՇՈՒՇԻ ՄԻՋՈՎ ապագան ճշտորեն կանխատեսելը հատուկ է մեծ անհատներին: Տակավին անցյալ դարի 70—80-ական թվականներին, երբ Ռուսաստանի պրոլետարիատը նոր էր պատմական ասպարեզ մտել, Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը կանխատեսեցին նրա կարևոր դերը համաշխարհային հեղափոխական շարժման մեջ, համոզված նշելով, «որ Ռուսաստանում անխուսափելի ու մոտ է վիթխարի սոցիալական հեղափոխությունը»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 32, стр. 549):

*Հիրավի, գիտական կոմունիզմի հիմնադիրների այդ կանխատեսումը լիովին իրականացավ: XX դարի սկզբին հեղափոխական շարժման վճռական օրրանը դարձավ Ռուսաստանը, իսկ նրա պրոլետարիատը՝ միջազգային բանվոր դասակարգի առաջավոր ջոկատը: Չնայած վերջինս համեմատաբար ուշ մտավ պատմական ասպարեզ, XIX դարի վերջին տասնամյակներին անցավ դասակարգային պայքարի մեծ դպրոց, աճեց ու առնականացավ, որդեգրեց իր գաղափարախոսությունը՝ գիտական կոմունիզմը, հասունացավ քաղաքականապես և XX դարի սկզբին դարձավ համաշխարհային հեղափոխական պրոցեսի դրոշակակիրը: Այդ իսկ ժամանակահատվածում ստեղծվեց նրա քաղաքական կազմակերպությունը՝ բոլշևիկների կուսակցությունը, որն իր հեղափոխական գործունեության շնորհիվ դարձավ միջազգային սոցիալիստական շարժման ավանգարդը: Դրանում վիթխարի դեր խաղաց Վլադիմիր Իլյիչ Լենինը, որը հետևողականորեն պայքարելով օպորտունիզմի դեմ, հեղափոխական մարքսիզմով զինեց Ռուսաստանի բանվոր դասակարգին: Ավելին, պատմական նոր պայմաններում՝ իմպերիալիզմի դարաշրջանում, զարգացնելով գիտական կոմունիզմի տեսությունը, Լենինը ճշտորեն բացահայտեց կոմունիստական հասարակական ֆորմացիային անցնելու ուղիները և հիմնավորեց Ռուսաստանի պրոլետարիատի առաջատար դերն այդ պատմական շրջադարձում: Նա եկավ այն խոր եզրակացության, որ իմպերիալիզմի փուլում պրոլետարական հեղափոխության հաղթանակը բոլոր կապիտալիստական երկրներում միաժամանակ հնարավոր չէ, այն կարող է հաղթանակել սկզբում մեկ կամ մի քանի երկրում առանձին վերցրած, այսինքն՝ իմպերիալիզմի թույլ օղակում: Լենինն այդ օղակը համարեց Ռուսաստանը, որտեղ պրոլետարիատը կարող էր ճեղքել կապիտալիզմի շղթան և դուրս գալ կոմունիստական քաղաքակրթության հաստատման ուղին: Նա գրում էր՝ «...մեծ կլինի վելիկոռուսական պրոլետարիատի* սոցիալիստական *դերը, որպես ...կոմունիստական հեղափոխության գլխավոր շարժիչի» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 21, էջ 122):*

*Զինված լենինյան տեսությամբ, բոլշևիկների կուսակցությունը Ռուսաստանի պրոլետարիատին առաջնորդեց սոցիալիստական հեղափոխության ուղիով: Օպորտունիստները, սկսած ռուս մենշևիկներից մինչև երկրորդ ինտերնացիոնալի լիդերները, պնդում էին, թե դրա համար հետամնաց Ռուսաստանում պայմաններ չկան, իսկ պրոլետարիատն էլ բնակչության փոքրամասնու-*

թյունն է կազմում։ Ավելին, Փետրվարյան հեղափոխությունից հետո մենշևիկները հայտարարեցին, թե ավարտվել է հեղափոխական պրոցեսը և Ռուսաստանը մտել է կլասիկ կապիտալիստական զարգացման շրջանը, որը կարող է տևել 50—100 տարի. այդ ընթացքում միայն կստեղծվեն սոցիալիզմին անցման անհրաժեշտ ու օբյեկտիվ նախադրյալներ, պրոլետարիատն էլ կդառնա բնակչության մեծամասնությունը և դրանից հետո միայն հնարավոր կդառնա սոցիալիստական հեղափոխությունը։

Բոլշևիկները բոլորովին հակառակ ծրագիր առաջադրեցին Ռուսաստանի ապագայի և պրոլետարիատի գործունեության համար։ Համաշխարհային պատմության այդ շրջադարձին Վլադիմիր Իլյիչ Լենինի հանճարը հսկայական ծառայություն մատուցեց մարդկությանը։ Այն լուսավորեց հասարակական զարգացման ընթացքը Ռուսաստանում, բացահայտեց պրոլետարական հեղափոխության հաղթանակի և սոցիալիզմին անցման որոշակի օբյեկտիվ ու սուբյեկտիվ նախադրյալները։ Քննադատելով օպորտունիստների այն թեզը, ըստ որի պրոլետարիատի պատմական առաքելության իրականացման վճռական պայմանը բնակչության մեջ նրա բարձր տեսակարար կշիռն է, Լենինը գրում էր. «Ամեն մի կապիտալիստական երկրում պրոլետարիատի ուժն անհամեմատ ավելի մեծ է, քան պրոլետարիատի բաժինը բնակչության ընդհանուր թվի մեջ։ ...Ուստի և պրոլետարիատը, նույնիսկ, երբ նա բնակչության փոքրամասնությունն է կազմում... ընդունակ է թե՛ տապալելու բուրժուազիային...» (**Երկեր**, հ. 30, էջ 343)։

Հոկտեմբերյան հեղափոխության տարում վարձու բանվորների թիվը Ռուսաստանում 15 միլիոն էր։ Առանձին վերցրած, դա մեծ բանակ էր։ Բայց 150 միլիոն բնակչություն ունեցող Ռուսաստանում պրոլետարիատն իրոք փոքրամասնություն էր և կազմում էր բնակչության 10 տոկոսը։ Չնայած դրան, նա գտնվում էր երկրի հասարակական-քաղաքական կյանքի կենտրոնում, և նրա հեղափոխական պայքարն էր կանխորոշում Ռուսաստանի ապագան։

Նկատենք, որ պրոլետարիատը Ռուսաստանում դարձել էր առավել մեծ հեղափոխական ուժ, քան եվրոպական երկրներում, որտեղ նա բնակչության մեջ փոքրաթիվ չէր։ Դրան նպաստել էր Ռուսաստանում բանվոր դասակարգի համակենտրոնացման առավել բարձր աստիճանը։ Այսպես, 1910 թվականին 500-ից ավելի բանվոր ունեցող ձեռնարկություններում էր կենտրոնացած Ռուսաստանի ֆաբրիկա-գործարանային բանվորների մոտ 55 տոկոսը, այն դեպքում, երբ զարգացած կապիտալիստական երկրի՝ ԱՄՆ-ի, խոշոր ձեռնարկություններում աշխատում էր բանվորների ընդհանուր թվի 33 տոկոսը։

Այնուհետև, ռուսական պրոլետարիատը կոփվել էր բուրժուադեմոկրատական երկու հեղափոխությունների կրակներում, քաղաքականապես իրոք հասունացել ու կուռ կազմակերպվել և ղեկավարվում էր լենինյանների կուսակցության կողմից։

Ռուսական պրոլետարիատը դարձել էր ազատագրական շարժման այնպիսի հեգեմոն, որն իր ետևից տանում էր նաև ոչ պրոլետարական աշխատավորական մասսաներին, ճնշված ազգերին, արտահայտելով նրանց կենսական շահերը։ Այս առնչությամբ քննադատելով «Զուտ սոցիալիստական հեղափոխության» օպորտունիստական տեսությունը, ըստ որի միայն պրոլետարիատն է հանդես գալիս բուրժուազիայի դեմ, Լենինը հիմնավորեց և ցույց տվեց, որ թեպետ բնակչության մեջ այդ հեղափոխական դասակարգը փոքրամասնություն է կազմում, բայց նա քաղաքական պայքարի մեջ է ներգրավել աշխատավոր զանգվածներին, մասնավորապես գյուղացիությանը, որի հետ դաշնակցած կարող էր տապալել կապիտալի տիրապետությունը։ Այդպես էլ ընթացավ պատմությունը։

1917 թ. հոկտեմբերին Ռուսաստանի պրոլետարիատը կատարեց հաղթական սոցիալիստական հեղափոխություն, իսկ լեգենդար «Ավրորա»-ի համազարկերը ազդարարեցին մարդկության պատմության նոր դարագլխի՝ կապիտալիզմի կործանման և կոմունիստական քաղաքակրթության հաստատման դարագլխի սկիզբը։



Մեծ Հոկտեմբերի հաղթանակը դարձավ XX դարի գլխավոր իրադարձությունը, որն արմատապես փոխեց մարդկության զարգացման ընթացքը։ Աշխարհի հեղափոխական վերափոխման արդի վիթխարի, պատմական պրոցեսի սկիզբը դրեց սովետական բանվոր դասակարգը։ Այդ արմատական հեղաշրջումն իրականացնող լայն մասսաների գլխավոր շարժիչը պրոլետարիատն էր, որին հասարակական զարգացման ընթացքն առաջ էր քաշել որպես շահագործողական կարգերի նկատմամբ պատմության կայացրած մահվան վճիռն իրականացնող ուժի։

Ինչպես շեշտվեց մեծ Հոկտեմբերի 60-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Հոկտեմբերյան հեղափոխության մեջ խորապես ու համակողմանիորեն բացահայտվեց բանվոր դասակարգի համաշխարհային ազատագրական մեծ առաքելությունը»։ Եվ դա կատարվեց սովետական բանվոր դասակարգի հեղափոխական մեծ պայքարի շնորհիվ։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո, ինչպես կանխատեսում էր Լենինը, չափազանց դժվարին կացություն ստեղծվեց Ռուսաստանի պրոլետարիատի և նրա նորաստեղծ պետության համար։ Երկրի վրա հարձակվեցին ներքին ու միջազգային հակահեղափոխական բոլոր ուժերը, 14 իմպերիալիստական պետություններ։ Իսկ պատմության փորձը ցույց է տվել, որ որքան դժվար է սոցիալիստական հեղափոխություն կատարելը, առավել դժվար է դրա պաշտպանությունը հակահեղափոխության գրոհներից։

Այդ առումով հերոսական էր սովետական բանվոր դասակարգի գործունեությունը։ Նա առաջինը ցուցադրեց սոցիալիստական հեղափոխության նվաճումների պաշտպանության չափազանց դժվարին, բայց ուսանելի մի օրինակ։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹՅԱՆ ռահվիրայի պատմական դերը սովետական բանվոր դասակարգը նվաճել է ո՛չ միայն մեծ Հոկտեմբերի հաղթանակով, այլև առավելապես նոր հասարակարգի կառուցման 60 տարիներին ծավալած հիրավի հերոսական գործունեությամբ, որի արգասիքը զարգացած սոցիալիզմի կառուցումն է ՍՍՀՄ-ում։

Կոմունիստական դարաշրջանի մեծ մանիֆեստը՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, ամփոփում է հենց սովետական բանվոր դասակարգի հերոսական այդ պայքարի վիթխարի արդյունքները, օրենսդրականորեն ամրապնդում դրանք, ամբողջ աշխարհին ակնհայտորեն ցուցադրում հեղափոխական դասակարգի պատմական առաքելությունն ու ստեղծագործական մեծ ուժը։

Ներքին ու միջազգային անհաղթահարելի թվացող դժվարություններ հարուցեց հատկապես անցման ժամանակաշրջանը։ Տասնյակ միլիոնավոր մարդկանց կյանքի պայմանների արմատական վերափոխումը և նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցումն ինքնին չափազանց բարդ մի խնդիր է, որն առավել բարդացավ Ռուսաստանի առանձնահատուկ պայմանների և մի շարք այլ պատմական հանգամանքների պատճառով։

Հիրավի, սոցիալիստական հեղափոխության խնդիրների լուծման գործում դժվարություններն այնքան շատ ու մեծ էին, որ որոշ գործիչներ հուսահատվում, իսկ ոմանք, Տրոցկուն հետևելով, պնդում էին, թե կապիտալիստական շրջապատման պայմաններում սոցիալիզմի կառուցումն անհնար է, մինչև որ Եվրոպայում չհաղթանակի պրոլետարական հեղափոխությունը և դրսից օգնություն չտացվի։

Թվում էր, թե շահագործող դասակարգերի տիրապետությունը շռնդյունով տապալած, 14 իմպերիալիստական պետությունների ինտերվենցիան և ներքին հակահեղափոխության փորձերը ջախջախած պրոլետարիատը կանգնած է երկընտրանքի առջև, իսկ նրա կատարած սոցիալիստական հեղափոխությունն էլ ձախողման է դատապարտված։ Ահա այդ ծանր ժամին նորից փայլատակեց Լենինի հանճարը և լուսավորեց նոր հասարակարգի ստեղծման թեև դժվարին, բայց հաստատուն ուղին, ցույց տվեց երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունները և առաջադրեց դրա կառուցման գիտականորեն մշակված պլանը։ Պրոլետարիատի մեծ առաջնորդը վճռական նշանակություն էր տալիս

բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքին։ «Մենք գիտենք,— ասում էր նա,— որ միայն գյուղացիության հետ համաձայնությունը կարող է փրկել սոցիալիստական հեղափոխությունը Ռուսաստանում...» (Երկեր, հ. 32, էջ 264)։

Լենինյան հարցադրումներն ամրապնդեցին պրոլետարիատի հավատն իր պայքարի հաղթական ելքի և Ռուսաստանի սոցիալիստական ապագայի նկատմամբ։ Պատմական կարճ ժամանակամիջոցում վերականգնելով ժողովրդական տնտեսությունը, պրոլետարիատն ուժերի գերագույն լարումով և հեղափոխական մեծ խանդավառությամբ, իր հետևից տանելով բազմամիլիոն գյուղացիությանը, մարտի նետվեց՝ իրականացնելու սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը։ Նախ ձեռնարկվեց երկրի ինդուստրացումը. խնդիր դրվեց ամենակարճ ժամանակամիջոցում արտադրամիջոցներ ներմուծող երկրից ՍՍՀՄ-ը վերածել դրանք արտահանող երկրի, այսինքն՝ 10—15 տարում կտրել և անցնել այն ճանապարհը, որի համար մյուս երկրներին անհրաժեշտ էին մի քանի տասնյակ տարիներ։

Հակառակ բոլոր թերահավատների, ովքեր գտնում էին, թե ինդուստրացումը հնարավոր չէ, բանվոր դասակարգն անվարան ձեռնամուխ եղավ այդ խոշոր միջոցառմանը՝ նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Երկրի ավելի քան 5,5 միլիոն բանվորները, որոնց կեսից ավելին արտադրություն էր եկել մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, անցել դասակարգային պայքարի կրակների միջով, առանց տրտնջալու տարել սով ու զրկանքներ, հանդես էին բերում մեծ նվիրվածություն հեղափոխության ու կուսակցության գործին։

Սովետական բանվոր դասակարգը խիզախում էր ինդուստրացման ուղիներում, ծավալում իր ստեղծագործական ուժերը, որոնք դրսևորվեցին սոցիալիստական մրցության առաջացման ու հետագա զարգացման մեջ։ Բանվոր դասակարգը ղեկավար դեր էր խաղում սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում։

Արդյունաբերության կառավարման բարձրագույն օրգանների ղեկավարների ավելի քան 50 տոկոսը դուրս էր եկել պրոլետարիատի շարքերից, ֆաբրիկաների և գործարանների դիրեկտորների $^{3}/_{4}$-ն անցյալում աշխատել էր անմիջապես հաստոցի մոտ։ 1927 թվականին երկրի բարձրագույն օրենսդրական մարմնում՝ ՍՍՀՄ-ի Կենտգործկոմում, 44 տոկոսը, իսկ քաղաքային սովետներում մոտ կեսը բանվորներ էին։

Բանվոր դասակարգի և սովետական ողջ ժողովրդի ջանքերով առաջին հնգամյակների տարիներին իրականացվեց երկրի ինդուստրացումը, տասը տարում գործարկվեց մոտ վեց հազար արդյունաբերական ձեռնարկություն, արդյունաբերական արտադրանքը 1937 թվականին, 1913-ի համեմատությամբ, աճեց ավելի քան 8 անգամ։

ՍՍՀՄ-ը հասավ տնտեսական լիակատար անկախության կապիտալիստական աշխարհից, զորացավ նրա պաշտպանունակությունը։ «ՍՍՀՄ-ի ինդուստրացումը բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի մեծ սխրագործությունն է, ժողովուրդ, որը չէր խնայում ո՛չ ուժ, ո՛չ միջոցներ, գիտակցաբար դիմում էր զրկանքների՝ երկիրը հետամնացությունից դուրս բերելու համար» (ՍՄԿԿ ծրագիրը, «Հայաստան» հրատ., 1974, էջ 18)։

Սովետական բանվոր դասակարգը համարձակորեն նոր հասարակարգի ուղին էր հարթում։ Նա ո՛չ միայն իրականացնում էր ինդուստրացումը, այլև ակտիվորեն մասնակցում գյուղի սոցիալիստական վերակառուցմանը՝ այն համարելով իր կարևոր խնդիրը։ Բանվոր դասակարգի համակողմանի օգնությամբ ու ղեկավարությամբ մանր տնտեսատեր գյուղացիությունը վերափոխվեց և ընտրեց սոցիալիզմի ուղին։

Այդ նույն ժամանակամիջոցում ծավալված կուլտուրական հեղափոխությունը աշխատավոր մասսաներին դուրս բերեց հոգևոր սարկությունից ու խավարից՝ հաղորդակից դարձնելով մարդկության կուլտուրայի նվաճումներին։

Այսպիսով, 30-ական թվականների կեսերին, բանվոր դասակարգի գլխավորությամբ, սովետական ժողովուրդը փառահեղ մի հաղթանակ ևս տարավ.



սոցիալիզմը ՍՍՀՄ-ում ռեալ իրականություն դարձավ։ Մարդկությունն առաջին անգամ գործնականում համոզվեց, որ պրոլետարիատը ստեղծագործական հզոր ուժ է, որ նա, թոթափելով բուրժուազիայի ու կալվածատերերի լուծը, կարողացավ համախմբել ողջ աշխատավոր ժողովրդին, պաշտպանել հեղափոխության նվաճումները, կոտրել լիովին ներքին թշնամիների դիմադրությունը և կապիտալիստական շրջապատման պայմաններում կառուցել կոմունիստական հասարակության առաջին փուլը՝ սոցիալիզմը։ Բացվեց կոմունիստական քաղաքակրթության մայրուղին։

Իրականացնելով հասարակական կյանքի արմատական հեղափոխական վերափոխումը, սովետական բանվոր դասակարգն այդ ընթացքում ինքն էլ վերափոխվեց, պրոլետարիատից վերածվելով սոցիալիստական դասակարգի։

Սովետական բանվոր դասակարգի սոցիալական բնույթի էական փոփոխությունը կատարվեց հասարակության հեղափոխական վերափոխման պրոցեսում, սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատմամբ, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի արմատավորմամբ։ ՍՍՀՄ-ում բանվորը դարձավ արտադրամիջոցների ու իր աշխատանքի տերը։ Գոյավորվեց սովետական բանվոր դասակարգի հոգևոր-բարոյական նոր կերպարը։ Անցման ժամանակաշրջանում հաղթահարվեցին ու վերացան պրոլետարիատին բնորոշ մի շարք հատկանիշներ, որոնք անխուսափելի էին մինչհեղափոխական ժամանակաշրջանում։ Իսկ դրանցից մի քանիսն ավելի խորացան նոր պայմաններում. օրինակ՝ հեղափոխական ոգին ու նորարարությունը, կարգապահությունն ու կազմակերպվածությունը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը և այլն։ Միաժամանակ ձեռք բերվեցին այնպիսի նոր հատկանիշներ, որոնք նշանավորեցին պրոլետարիատի վերափոխվելը սոցիալիստական հասարակության դասակարգի, նրա առաջատար ուժի։ Այդպիսիք են՝ պատասխանատվությունը գործարանի, հասարակության, երկրի գործերի համար, որը դրսևորվում է սոցիալիստական հայրենասիրությամբ, աշխատանքային խանդավառությունը, որն արտահայտվում է ստեղծագործական ակտիվությամբ, սոցիալիստական մրցության ծավալմամբ, անհաշտ վերաբերմունքը հին հասարակարգի մնացուկների, մանր բուրժուական հոգեբանության ու քաղքենիության նկատմամբ, բարձր գաղափարայնությունը, նվիրվածությունը կոմունիզմի գործին. ժողովուրդների բարեկամության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հատկանիշը, ընկերական փոխօգնության ու համագործակցության ձգտումը և այլն։

Սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում արագորեն աճեց սովետական բանվոր դասակարգի թիվը, որը 1939 թվականին հասավ մոտ 22 միլիոնի։

Այդ ժամանակաշրջանում էական փոփոխություններ կատարվեցին սովետական բանվոր դասակարգի ազգային կազմում։ Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման ու երկրի ինդուստրացման շնորհիվ նախկինում հետամնաց ազգային շրջաններում ծագեցին արդյունաբերական կենտրոններ, որոնք ժողովուրդների փաստական անհավասարության վերացման պրոբլեմի լուծման մեծ վկաներն էին։ Ազգային շրջանների ինդուստրիալ զարգացման հիման վրա աճեցին ու ձևավորվեցին բանվոր դասակարգի նոր ջոկատներ, որոնք իրենց բնույթով սոցիալիստական էին։

Սովետական բազմազգ բանվոր դասակարգի պայքարի ու զարգացման մեջ խոշոր դեր խաղաց նրա առաջատար ջոկատը՝ ռուս բանվոր դասակարգը, որն իր հեղափոխական կոփվածքով, արտադրական փորձով, կուլտուր-տեխնիկական մակարդակով օրինակ էր ծառայում միութենական հանրապետություններում ձևավորվող բանվոր դասակարգի ազգային ջոկատներին, անշահախնդիր օգնություն ցույց տալիս նրանց ազգային շրջաններում խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման, Ռուսաստանի արդյունաբերական կենտրոններում որակյալ բանվորների ազգային կադրերի, իսկ բուհերում մասնագետների պատրաստման, ինչպես նաև տեղերում կադրերի ուսուցումը կազմակերպելու գործում։

«Այդպիսի օգնությունը, հանուն ազգային ծայրամասերի հետամնացության հաղթահարման,— ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ իր զեկույց-

ման մեջ նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— հանուն նրանց ավելի արագ զարգացման հսկայական ջանքերի և, անենք ուղղակի, զոհաբերությունների դիմելու պատրաստակամությունը Ռուսաստանի պրոլետարիատին պատգամել էր Լենինը, որպես նրա ինտերնացիոնալ վեհ պարտքը։ Եվ ռուս բանվոր դասակարգը, ռուս ժողովուրդը այդ պարտքը պատվով կատարեցին։ Դա, ըստ էության, մի ամբողջ դասակարգի, ամբողջ ժողովրդի փառահեղ սխրանքն էր, որը կատարվեց հանուն ինտերնացիոնալիզմի։ Եվ դա, այդ սխրանքը, երբեք չեն մոռանա մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ հիսնամյակի մասին, «Հայաստան» հրատ., 1973, էջ 18—19)։

Սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում, սովետական բանվոր դասակարգի ազգային ջոկատների միջև հաստատվեցին փոխադարձ օգնության ու համագործակցության հարաբերություններ, որոնք արտահայտում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի զարգացման նոր աստիճանը, նրա նոր որակը՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմը։

ԵՐԵՍՆԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՎԵՐՋԵՐԻՑ ՍՍՀՄ-ը մտավ կոմունիստական հասարակարգի կառուցման նոր փուլ, որի բովանդակությունը սոցիալիզմի, նրա տնտեսական ու քաղաքական հիմքերի ամրապնդումն ու հետագա զարգացումն էր, երկրում զարգացած սոցիալիզմի կառուցումը։ Իր շուրջը համախմբելով աշխատավորների մյուս հասարակական խմբերին, սովետական բանվոր դասակարգը հայրենասիրական մեծ խանդավառությամբ և ձեռք բերած համաշխարհային պատմական նվաճումների համար օրինական հպարտությամբ ձեռնամուխ եղավ այս նոր ժամանակաշրջանի խնդիրների կենսագործմանը։

Սակայն շուտով սովետական մարդիկ ստիպված եղան ընդհատել իրենց ստեղծարար աշխատանքը, զենք վերցնել, մահ ու կենաց պայքարում գերմանական ֆաշիզմից պաշտպանել մեծ Հոկտեմբերի նվաճումները, իրենց սոցիալիստական հայրենիքը։

Թե՛ մարտի դաշտում և թե՛ թիկունքում բանվոր դասակարգը կուսակցության հուսալի հենարանը հանդիսացավ։ Նրա նվիրվածության ու կազմակերպվածության շնորհիվ կուսակցությունը կարողացավ լուծել պատերազմի շրջանի ամենադժվարին խնդիրները և ապահովել պատմական մեծագույն հաղթանակը իմպերիալիզմի ամենառեակցիոն ու հարվածային ուժերի հանդեպ։ Մեծ Հայրենականի օրերին սովետական բանվոր դասակարգը կատարեց մի նոր ու անօրինակ սխրագործություն։

Գրեթե նույնպիսի լարվածությամբ և ուժերի գերագույն լարումով բանվոր դասակարգն աշխատեց պատերազմից հետո՝ քայքայված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու և առաջ մղելու համար։ Բուրժուական տնտեսագետները գտնում էին, որ մեկ սերնդի կյանքի ընթացքում հազիվ թե վերականգնվի ՍՍՀՄ-ի տնտեսությունը։ Մինչդեռ սովետական բանվոր դասակարգի հիրավի հերոսական ջանքերով ընդամենը երեք տարում արդյունաբերությունը վերականգնվեց նախապատերազմյան մակարդակին, իսկ մինչև չորրորդ հնգամյակի վերջն այն աճեց 73 տոկոսով, նախատեսված 48-ի փոխարեն։ Դրանք զարմանահրաշ բարձր տեմպեր էին, որ երբևէ չէր տեսել կապիտալիստական աշխարհը։

Հիսնական թվականներին ժողովրդական տնտեսությունը մեծ վերելք ապրեց։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ինչպես նաև արդյունաբերության ընդլայնման ճանապարհով խոշոր չափով ամրապնդվեց սոցիալիզմի նյութատեխնիկական բազան, աճեց սովետական երկրի հզորությունը։ Մեծ նվաճումներ ձեռք բերվեցին նաև սոցիալ-կուլտուրական զարգացման բնագավառներում։ Այդ հիմքի վրա 60-ական թվականներին երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիզմի փուլը, և կուսակցությունն առաջադրեց կոմունիզմի ծավալուն շինարարության ծրագիրը։

Հարկ է նշել, որ հետպատերազմյան շրջանում փոխվեցին կոմունիստական քաղաքակրթության հաստատման ասպարեզում սովետական բանվոր դա-



սակարգի գործունեության միջազգային պայմանները, որոնք դարձան ավելի նպաստավոր։ Վերացավ ՍՍՀՄ-ի կապիտալիստական շրջապատումը։ Սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից։ Մեկ տասնյակից ավելի երկրներ նույնպես ընտրեցին սոցիալիզմի ուղին։ Ինչպես նշված է Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Մեծ Հոկտեմբերի սկզբնավորած հեղափոխական պրոցեսը հասավ որակապես նոր բնագծի, ձևավորվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Արմատապես փոխվեց ուժերի հարաբերակցությունը միջազգային ասպարեզում»։ Կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի ստեղծման պատմական պրոցեսը դարձավ հաստատուն և անկասելի։ Նոր պայմաններում ընդլայնվեց սովետական բանվոր դասակարգի ինտերնացիոնալ խնդիրների շրջանակը։ Նա սոցիալիզմի կառուցման իր փորձը հաղորդեց մյուս երկրների բանվոր դասակարգին, ցույց տալով նրանց համակողմանի օգնություն։ Սովետական բանվոր դասակարգը հավաստեց իր եղբայրներին, որ ինքը միայնակ առաջ չի գնա և ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցումը դիտում է որպես համաշխարհային ամբողջ սոցիալիստական սիստեմի ժողովուրդների կողմից կոմունիստական հասարակարգի կերտման բաղկացուցիչ մասը։

Ընդ որում, այդ սիստեմի օրինաչափությունների և առավելությունների օգտագործումը, տարբեր երկրների աշխատավորների փոխօգնությունն ու համագործակցությունը ապահովում են սոցիալիզմի կառուցման ժամկետները կրճատելու հնարավորություն, բացում սոցիալիստական երկրների՝ կոմունիզմին միաժամանակյա անցման հեռանկար։ Այս ամենը, անշուշտ, չի նշանակում, թե դրանով սպառվում է սովետական բանվոր դասակարգի՝ որպես կոմունիստական քաղաքակրթության ռահվիրայի, պատմական դերը։ ՍՍՀՄ-ը հանդիսանում է սոցիալիստական մեծ համագործակցության առաջատար երկիրը, իսկ սովետական բանվոր դասակարգը՝ դեպի կոմունիզմ ընթացող առաջին սոցիալական ուժը։

Զարգացած սոցիալիզմը նշանավորում է սովետական բանվոր դասակարգի ստեղծարար գործունեության նոր ու ավելի բարձր փուլը։ Ինչպես նշեցին ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները, նա այսօր էլ շարունակում է առաջատար դեր խաղալ երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի ապահովման գործում։ Աճում է բանվոր դասակարգի ներգործությունը կոմունիստական շինարարության բոլոր ոլորտներում, հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Սովետական հասարակության զարգացման այդ կարևոր օրինաչափությունն իր արտացոլումն է գտել ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որտեղ որոշակի նշվում է, որ ստեղծվել է աշխատավորների հասարակական խմբերի մեծ ու անխախտ միասնություն, ձևավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, որի առանցքն ու առաջատար ուժն է հանդիսանում բանվոր դասակարգը։ Այն եղել ու մնում է հասարակության հիմնական արտադրաուժը, որի աշխատանքով են գլխավորապես ստեղծվում երկրի հարստությունները, կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Ժողովրդական տնտեսության այն բնագավառները, որտեղ ընդգրկված է բանվոր դասակարգը, տալիս են հասարակական համախառն արտադրանքի մոտ 90 տոկոսը։ Բանվորները սովետական երկրի աշխատավորների ամենամեծաքանակ խումբն են։ Նրանց թիվը հասնում է մոտ 72 միլիոնի, որը կազմում է աշխատող բնակչության 61 տոկոսը։ Ընդ որում, բանվորների 86 տոկոսն աշխատում է նյութական արտադրության մեջ, իսկ մոտ 14 տոկոսը՝ ոչ արտադրական ճյուղերում։ Հատկանշական է, որ նրանց ավելի քան 45 տոկոսը կանայք են, որոնք խոշոր ավանդ են ներդնում կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Դա սոցիալիզմի մեծ նվաճումներից է։ Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը նշում էր. «Մեզ հարկավոր է, որպեսզի կին-բանվորուհին ո՛չ միայն օրենքով, այլ նաև կյանքում ձեռք բերի հավասարություն տղամարդ-աշխատավորի հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 473)։ Այդ խնդիրը հաջողությամբ է լուծվել մեր երկրում։

Վերջին հնգամյակների տարիներին մի նոր աստիճանի են բարձրացել սո-

վետական բանվոր դասակարգի աշխատանքային ակտիվությունն ու ստեղծագործական ուժերի ծաղկումը, որն արտահայտվեց սոցիալիստական մրցության նոր ձևերի ու նախաձեռնությունների տարածման ու զարգացման, կոմունիստական աշխատանքի շարժման խորացման մեջ։ Բանվոր դասակարգը կարևորագույն դեր է խաղում գիտատեխնիկական առաջընթացի ապահովման գործում։ Դրա փայլուն վկայությունն է նրա ակտիվ մասնակցությունը նաև գյուտարարների ու ռացիոնալիզատորների մասսայական շարժմանը։ Այսօր ավելի քան 7,5 միլիոն բանվորներ գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ են։ Որպես հիմնական արտադրաուժի՝ սովետական բանվոր դասակարգի ջանքերով ապահովվել է հասարակական արտադրության այնպիսի դինամիկ զարգացում, որը տասը տարին մեկ կրկնապատկում է երկրի վիթխարի չափերի հասնող տնտեսական պոտենցիալը։ Բավական է նշել, որ իններորդ հնգամյակի վերջում հիմնական արտադրաֆոնդերի արժեքը հասավ 800 միլիարդ ռուբլու, արդյունաբերական արտադրանքի 19 կարևոր տեսակների արտադրության ծավալով ՍՍՀՄ-ը գրավեց աշխարհում առաջին տեղը։

ԻՆՉՊԵՍ ՀԱՅՏՆԻ Է, ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ նշանավորեց սովետական հասարակության քաղաքական կազմակերպության զարգացման բարձր աստիճանը, նրա համաժողովրդական բնույթը, որը օրենսդրականորեն ամրապնդում է ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում տված իր զեկուցման մեջ, անդրադառնալով սովետական քաղաքական սիստեմի այդ մեծ փոփոխությանը, սահմանադրական հանձնաժողովի նախագահ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Հասուն սոցիալիզմի կառուցման շնորհիվ, այն բանի շնորհիվ, որ բնակչության բոլոր խավերն անցել են բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական դիրքերը, որպես պրոլետարիատի դիկտատուրա ծնունդ առած մեր պետությունը նույնպես վերաճել է համաժողովրդական պետության»։ Այս կապակցությամբ առաջարկվեց սովետներն անվանել ժողովրդական դեպուտատների սովետներ։

Սա, ըստ էության, խոշորագույն նվաճում է կոմունիստական քաղաքակրթության հաստատման ճանապարհին։ Այն կրկին ակնբախ ցուցադրում է բանվոր դասակարգի ազատագրական մեծ առաքելությունը. նա պատմության մեջ միակ դասակարգն է, որ գրավելով իշխանությունը, չի ձգտում հավերժացնել իր դիկտատուրան, այլ այն օգտագործում է իրականացնելու անցումը դեպի անդասակարգ հասարակարգը։ Վերացնելով շահագործող դասակարգերին և սոցիալական անտագոնիզմը հասարակական կյանքից, կառուցելով աշխատավորների միասնական հասարակարգ, պրոլետարիատի դիկտատուրան մեր երկրում դադարեց անհրաժեշտություն լինելուց։ Կոմունիստական շինարարության գործը շարունակում է համաժողովրդական պետությունը։ Այդ խոշոր փոփոխությունը, սակայն, չի բացառում բանվոր դասակարգի՝ որպես ամենակազմակերպված ու ամենահեղափոխական ուժի առաջատար դերը երկրի հասարակական-քաղաքական կյանքում։ Նրա այդ դերն իրականացվում է համաժողովրդական պետության և սովետական ժողովրդի ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության, ողջ գործունեությամբ։ Բացի այդ, հետզհետե աճում է բանվոր դասակարգի տեսակարար կշիռը ղեկավար մարմիններում և կուսակցության սոցիալական կազմում։ Այսպես, օրինակ, եթե 1962 թվականին ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների մեջ բանվորները կազմում էին 23,5, ապա այսօր՝ ավելի քան 33 տոկոսը։ Իսկ տեղական սովետներում բանվոր դեպուտատները կազմում են 40,5 տոկոսը։ Ժողովրդական վերահսկողության մարմիններում աշխատում են 4,5 միլիոն բանվորներ, այսինքն՝ ժողովրդական վերահսկիչների կազմի 46 տոկոսը։ Բանվոր դասակարգը համարվում է կուսակցական և պետական ղեկավար աշխատողների համալրման գլխավոր աղբյուրը։ Հենց նրա շարքերից, ժողովրդի խորքից է կուսակցությունն հիմնականում առաջ քաշում տաղանդավոր, ընդունակ ղեկավարներ կոմունիստական շինարարության բոլոր բնագավառների համար։ Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, երկր-



կոմների և մարզկոմների այժմյան քարտուղարների, մինիստրների սովետների նախագահների, երկրամասային ու մարզային գործկոմների նախագահների ավելի քան 80 և ՍՍՀՄ մինիստրների և պետական կոմիտեների նախագահների մոտավորապես 70 տոկոսն իր գործունեությունն սկսել է որպես բանվոր ու գյուղացի։ Երկրի խոշորագույն արդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորների կեսից ավելին անցյալում եղել են բանվորներ։

Համաշխարհային մասշտաբով ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում կոմունիստական շինարարության բարդ խնդիրների լուծման համար, սովետական հասարակության առաջատար ուժից՝ բանվոր դասակարգից, պահանջվեց զարգացման որակական նոր աստիճան։ 60—70-ական թվականներին նրա սոցիալական զարգացման մեջ կատարվեցին այնպիսի խոշոր տեղաշարժեր, առաջ եկան այնպիսի տենդենցներ, որոնք այդ աշխատավոր դասակարգը դարձրել են գրեթե անճանաչելի, 30—40-ական, անգամ 50-ական թվականների համեմատությամբ։ Ահա թե ինչու ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Ժամանակակից սովետական բանվոր դասակարգը տարբերվում է ո՛չ միայն նախահեղափոխական պրոլետարիատից, այլև 30-ական թվականների բանվոր դասակարգից, երբ ձեռք բերվեց սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում։ Աճեց նրա դերը որպես հասարակության սոցիալ-քաղաքական ու տնտեսական առաջատար ուժի» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 653)։

Այդ դերի կատարման կարևոր պայման է նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի մեծ աճը։ Բավական է նշել, որ եթե սոցիալիզմի հաղթանակից հետո, 1939 թվականին հազար բանվորից ընդամենը 84-ն ունեին բարձրագույն և միջնակարգ կրթություն, ապա 1975 թվականին՝ մոտ 700-ը։

Հասուն սոցիալիզմը մեր երկրում նշանավորեց սովետական բոլոր հանրապետությունների բանվոր դասակարգի զարգացման բարձր փուլը, նրա քանակական ու որակական նշանակալից աճը։ Ազգային հանրապետություններից յուրաքանչյուրում բանվոր դասակարգը դարձել է ամենամեծաթիվ ու հզոր սոցիալական ուժը, որն առաջատար դեր է խաղում կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Այսպես, օրինակ, սոցիալիզմի հաղթանակից հետո, 1939 թվականին բանվոր դասակարգը Սովետական Հայաստանում կազմում էր հանրապետության բնակչության ընդամենը 17 տոկոսը(դեռևս շատ փոքրաթիվ մի ուժ), իսկ 1975 թվականին նրա տեսակարար կշիռը բնակչության մեջ հասավ 62 տոկոսի։ Եթե 1940 թվականին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ աշխատում էր 90 հազար, ապա 1975 թվականին՝ մոտ 700 հազար բանվոր։ Կարևոր է նաև նշել, որ եթե սոցիալիզմի կառուցման, ամրապնդման ու հետագա զարգացման ժամանակաշրջանում սովետական հանրապետություններում աճում էին հիմնական ազգի բանվորների թիվն ու տեսակարար կշիռը, ապա հասուն սոցիալիզմի արդի փուլում ուժեղացել է մեկ ուրիշ տենդենց. հետզհետե ամեն մի հանրապետության բանվոր դասակարգը դառնում է ավելի բազմազգ։ Դրան նպաստում են այնպիսի օբյեկտիվ գործոններ, ինչպիսիք են միգրացիոն պրոցեսների, ՍՍՀՄ տնտեսական կյանքի ինտեգրացիայի և, ընդհանրապես, մեր բովանդակ կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսների ուժեղացումը, տրանսպորտի բոլոր տեսակների զարգացումը, բնական հարստությունների բացահայտումն ու մշակումը և նոր խոշոր արդյունաբերական կենտրոնների ստեղծումը։ Առանձնապես մեծ դեր են խաղում խոշոր ու հարվածային կառույցները, որոնք ստեղծվում են ՍՍՀՄ-ի ժողովուրդների ներկայացուցիչների համատեղ ջանքերով։

Ժամանակակից սովետական բանվոր դասակարգը ներկայացնում են տարբեր ազգությունների տասնյակ միլիոնավոր կրթված, տեխնիկապես գրագետ, քաղաքականապես հասուն մարդիկ, որոնց աշխատանքն ավելի ու ավելի է մոտենում ինժեներատեխնիկական աշխատողների աշխատանքին։ Աճում է նրանց հասարակական ակտիվությունը։

Խիստ միաձույլ ու միասնական այդ հզոր ինտերնացիոնալ ուժը հաջողությամբ է իրականացնում կոմունիստական քաղաքակրթության ռահվիրայի իր պատմական դերը։

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Մ. Հ. ԱԴՈՆՑ**
ՀՍՍՀ պետպլանին առընթեր տնտեսագիտության և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր, տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ տնտեսության ամենաառաջատար ճյուղն է։ Արդի ժամանակաշրջանում որևէ երկրի տնտեսական հզորությունն առաջին հերթին որոշվում է արդյունաբերության զարգացման մակարդակով, նրա թողարկած արտադրանքի ծավալով։ Արդյունաբերությունը ժողովրդական տնտեսությանը մատակարարում է մեքենաներ և աշխատանքի այլ միջոցներ, էներգիա և արժեքավոր հումքի բազմաթիվ տեսակներ։ Այն թողարկում է նաև ժողովրդական սպառման ապրանքների զգալի մասը։

Նախահեղափոխական Հայաստանը ցարական Ռուսաստանի տնտեսապես հետամնաց երկրամասերից էր։ Սակայն Անդրկովկասի բնական շատ արժեքավոր հարստություններ չվրիպեցին ռուս և օտարերկրյա կապիտալիստների ուշադրությունից և դեռ XIX դարի կեսերից սկսվեց Բաքվի նավթահանքերի, Վրաստանի մարգանեցի և Հայաստանի պղնձի հարուստ հանքերի գիշատիչ շահագործումը։ Որոշ զարգացում ստացավ գյուղատնտեսական հումքի մի շարք տեսակների սկզբնական վերամշակման արտադրությունը։ Արդյունաբերության զարգացմանը նպաստեցին նաև ստրատեգիական նկատառումներով Անդրկովկասում կառուցված ճանապարհները, հատկապես երկաթուղային տրանսպորտը։

Ռուս և օտարերկրյա կապիտալիստները շահագործում էին միայն այն բնական հարստությունները, որոնք առասպելական շահույթներ էին ապահովում, այդ իսկ պատճառով Անդրկովկասում արդյունաբերությունը դանդաղ էր զարգանում։

Նախահեղափոխական Հայաստանն ուներ հետամնաց ագրարային տնտեսություն, արդյունաբերական արտադրանքը կազմում էր հասարակական ամբողջ արտադրանքի 18—20 տոկոսը, որի գերակշռող մասը թողարկվում էր տնայնագործական եղանակով. խոշոր ձեռնարկություններ էին համարվում Ալավերդու, Ղափանի պղնձահանքերը և Շուստովի գինու ու կոնյակի գործարանը Երևանում։

Հայաստանի առանց այն էլ թույլ արդյունաբերությունը ծայրահեղ քայքայման հասավ առաջին համաշխարհային պատերազմի և դաշնակցական կառավարության կարճատև տիրապետության տարիներին։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը մարդկային հասարակության պատմության նոր դարաշրջան բացեց։ Մեծ Հոկտեմբերը ազատություն բերեց ցարական ինքնակալության լծի տակ ճնշված ժողովուրդներին, որոնք ռուս մեծ ժողովրդի օգնությամբ ո՛չ միայն ազատագրվեցին բուրժուակալվածատիրական շահագործումից, այլև գաղութային կախվածությունից ու ազգային ճնշումից։

Ժողովրդական տնտեսության վերականգնումից հետո սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի կա-



ռուցման դժվարին գործին։ Երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրայի ու գիտության աննախընթաց վերելքի շնորհիվ նախկինում հետամնաց ազգային շրջանները վերածվեցին սոցիալիստական զարգացած հանրապետությունների։

Արագ զարգացան նաև Սովետական Հայաստանի տնտեսությունն ու կուլտուրան։ Բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի ծավալով Հայաստանն այժմ գրեթե հասել է ՍՍՀՄ միջին մակարդակին։ Այն հինգ անգամ գերազանցում է Թուրքիայի, 5,4 անգամ՝ Իրանի մակարդակին, որոշ չափով գերազանցում է եվրոպական այնպիսի զարգացած երկրի, ինչպիսին Իտալիան է։

Հայաստանի ժողովրդական տնտեսությունը կազմում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության անբաժան մասը, օրգանապես ինտեգրացված է նրա հետ։

Ինչպես նշված է ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի 15-րդ հոդվածում, «ՍՍՀՄ էկոնոմիկան կազմում է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս...»։ ՍՍՀՄ յուրաքանչյուր հանրապետություն երկրի մյուս տնտեսական շրջաններից ստանում է իրեն հարկավոր արտադրանքը և արտահանում սեփական արտադրանքի այն տեսակները, որոնց թողարկման համար նպաստավոր պայմաններ ունի։

1975 թ. Հայկական ՍՍՀ-ն իր արտադրանքի 23,6 տոկոսն արտահանել է ՍՍՀՄ տնտեսական մյուս շրջանները և միաժամանակ արտադրական ու ժողովրդական սպառման համար իր օգտագործած արտադրանքի 26,1 տոկոսը ստացել է միութենական մյուս հանրապետություններից։

Հայաստանի ժողովրդական տնտեսության ճյուղերից առավել արագ է զարգացել արդյունաբերությունը, որի շնորհիվ արմատապես փոխվել է ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքը։ 1975 թ. հանրապետության ազգային եկամտի ընդհանուր ծավալում արդյունաբերության տեսակարար կշիռը կազմել է 66,9 տոկոս։ Արդյունաբերական արտադրության մեջ արտադրամիջոցների արտադրության տեսակարար կշիռը կազմել է 67, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 33 տոկոս։ Ժողովրդական տնտեսության այդպիսի կառուցվածքը հատուկ է բարձր ինդուստրիալ զարգացում ունեցող երկրներին։

1977 թ. հոբելյանական տարում Հայկական ՍՍՀ արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, կաճի 315 անգամ։ Նույն ժամանակամիջոցում ՍՍՀՄ արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 145 անգամ։

Այժմ Հայաստանի արդյունաբերությունը, միջին հաշվով, մեկ օրում արտադրում է 29 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 1.200 տոննա հանքային պարարտանյութ, 42 մետաղահատ հաստոց, 22 ավտոմոբիլ, 30 հազար զույգ կաշվե կոշիկներ, 12 հազար ժամացույց, 372 կենցաղային սառնարան և շատ այլ արտադրանք։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել են մոտ 645 արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ, այդ թվում 18 խոշոր էլեկտրակայաններ, մոտ 150 մեքենաշինական ու մետաղամշակման, 18 քիմիական և նավթաքիմիական գործարաններ, 110 թեթև արդյունաբերության, 46 սննդային և փայտամշակման, 74 շինանյութերի արդյունաբերության ձեռնարկություններ։ ՀՍՍՀ արդյունաբերությունն այժմ ունի մոտ 100 ճյուղ։ Միայն մեքենաշինությունն ու մետաղամշակումը կազմված են 16 ճյուղերից, որոնց թվում այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսիք են՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, սարքաշինությունը, հաստոցաշինությունը, ռադիոտեխնիկան և էլեկտրոնիկան, ավտոմոբիլային արդյունաբերությունը և այլն։

Մեքենաշինական գործարանների թվում կան այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Հայէլեկտրագործարանը, էլեկտրասարքավորումների, Երևանի և Կամոյի կաբելի գործարանները, Երևանի սարքաշինական, ճշգրիտ

էլեկտրասարքերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանները, ժամացույցների «Սևան» արտադրամիավորումը, Կիրովականի «Ավտոմատիկա» և ճշգրիտ հաստոցների, Լենինականի հղկող հաստոցների, Չարենցավանի «Ցենտրոլիտ» գործարանները, Երևանի ավտոմոբիլային և ավտոպահեստամասերի, ռելեի և «Էլեկտրոն», Դիլիջանի «Իմպուլս» գործարանները և այլն։ 1975-ին Հայաստանի մեքենաշինության մեջ զբաղված արդյունաբերական-արտադրական անձնակազմի թիվը կազմել է 124,5 հազար մարդ։ Այժմ մեքենաշինությունը տալիս է Հայաստանի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 24,2 տոկոսը։

Հայաստանի մեքենաշինությունը թողարկում է մոտ 500 տեսակի արտադրանք, որոնց թվում՝ շարժական էլեկտրակայաններ, փոփոխական հոսանքի գեներատորներ և էլեկտրաշարժիչներ, ուժային տրանսֆորմատորներ, էլեկտրալամպեր, կաբել և էլեկտրալարեր, մետաղահատ հաստոցներ, կենտրոնախույս պոմպեր, կոմպրեսորներ, տարբեր տեսակի հաստոցներ և սարքեր, ավտոմեքենաներ և այլն։

Հանրապետության ժողովրդական տնտեսության համար ստեղծված է հզոր ու հուսալի էներգետիկ բազա։ Խոշոր էլեկտրակայաններից են՝ Գյումուշի հիդրոէլեկտրակայանը՝ 224 հազար կիլովատ կարողությամբ, Տաթևինը՝ 157, Քանաքեռինը՝ 102, Երևանի ջերմաէլեկտրակայանը՝ 550, Հրազդանինը՝ 300 հազար կիլովատ կարողությամբ և, վերջապես, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը՝ 800 հազար կիլովատ կարողությամբ, որն ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան Սևան—Հրազդան կասկադի բոլոր 7 հիդրոէլեկտրակայանները միասին վերցրած։

Անդրկովկասում առաջին ատոմային էլեկտրակայանը կառուցված է Հայաստանում։ Հոկտեմբերյանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթի կարողությունը, որն արդեն շահագործման է հանձնված, 407 հազար կիլովատ է։ Հայկական ՍՍՀ բոլոր էլեկտրակայանների գումարային կարողությունը կազմում է 2,5 մլն կիլովատ։ 1975 թ. արտադրվել է 9,3 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Էլեկտրաէներգիայի արտադրության ընդհանուր ծավալում հիդրոէլեկտրակայանների տեսակարար կշիռն աստիճանաբար կնվազի, իսկ ատոմային էլեկտրաէներգիայի բաժինը կմեծանա։

Այժմ Հայաստանն իր արտադրած էլեկտրաէներգիայով լրիվ բավարարում է սեփական պահանջները և նույնիսկ օգնում եղբայրական Ադրբեջանին ու Վրաստանին։ 1975 թ. արտադրված էլեկտրաէներգիայի 52,5 տոկոսն օգտագործել է արդյունաբերությունը, 9,8 տոկոսը՝ գյուղատնտեսությունը և 8,5 տոկոսն օգտագործված է կոմունալ-կենցաղային կարիքների համար։ Հետագայում օգտագործվող էլեկտրաէներգիայի ընդհանուր ծավալում կոմունալ-կենցաղային կարիքների, ինչպես նաև գյուղատնտեսության համար օգտագործվող էլեկտրաէներգիայի տեսակարար կշիռը մեծանալու է։

Մեծ զարգացում է ստացել Հայաստանի արդյունաբերության հին ճյուղերից մեկը՝ գունավոր մետալուրգիան։ Եթե 1913 թվականին արդյունաբերության այդ ճյուղը միայն պղինձ էր արտադրում, ապա այսօր պղնձից բացի թողարկում է ալյումին, մոլիբդենի և ոսկու կոնցենտրատ։ Արտադրած մոլիբդենի ծավալով միութենական հանրապետությունների մեջ Հայաստանը գրավում է երրորդ տեղը։

Հայկական ՍՍՀ-ն ունի ժամանակակից քիմիական արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերը։ Քիմիական արդյունաբերության ձեռնարկություններն արտադրում են սինթետիկ կաուչուկ, արհեստական մանրաթել, ջութ, հանքային պարարտանյութեր, ծծմբաթթու և մի քանի տարբեր տեսակի այլ թթվուտներ, քիմիական ռեակտիվ նյութեր, ապակե էլեկտրամեկուսացուցիչ նյութեր, պլաստմասսա և պոլիմերային այլ նյութեր, ռետինատեխնիկական առարկաներ, ավտոդողեր, ռետինե կոշկեղեն և կենցաղային քիմիայի բազմատեսակ արտադրանքներ։ Քիմիական արդյունաբերության արտադրանքի գերակշռող մասն արտահանվում է մեր երկրի տարբեր շրջաններ։ Կազմակերպված է նաև միկրոբիոլոգիական արդյունաբերություն։ Այդ ճյուղի ամենախոշոր ձեռնար-



կությունը Չարենցավանի լիզինի գործարանն է, որն արհեստական սպիտակուց է արտադրում անասուններին կերակրելու համար։

Հանրապետության բժշկական արդյունաբերությունն այժմ ունի երկու գործող ձեռնարկություն՝ Երևանի վիտամինային պրեպարատների և քիմիական դեղերի գործարանները։ Ընթացիկ հնգամյակում Սիսիանի շրջանում (Դաստակերտում) կառուցվում է բժշկական տեխնիկայի նոր գործարան։

Հայաստանը հարուստ է բնական ամենատարբեր շինանյութերով, ունի տուֆի, բազալտի, գրանիտի, կրաքարի, կավի, ավազի, պեռլիտի, պեմզայի, մարմարի անսպառ պաշարներ։ Այդ իսկ պատճառով մեզ մոտ արագորեն զարգանում է շինանյութերի արտադրությունը։ Հանրապետությունում լայնորեն ծավալվում է նաև շինարարությունը, որը ևս պահանջում է շինանյութերի մեծ քանակություն։ Արդյունաբերության այս ճյուղն ունի մոտ 90 ձեռնարկություն, որոնց թվում Հրազդանի և Արարատի ցեմենտի, Արթիկ-տուֆի, Անիպեմզայի, Արթիկի տուֆաբլոկի և Ջաջուռի կրի գործարանները, Մարմարաշենի քարե բլոկների կոմբինատը, Արագածի պեռլիտի գործարանը, շինարարական իրերի, երկաթբետոնե կոնստրուկցիաների կոմբինատները և այլ ձեռնարկություններ։

Այս տարի հանրապետությունում կարտադրվեն զանազան շինանյութեր, 1,1 մլն հատ շինարարական քարի բլոկներ, 780 հազար քմ տուֆի և ֆիլզիտի երեսպատման սալիկներ, 92 մլն հատ ասբոցեմենտի շիֆեր, ասբոցեմենտի և կերամիկական խողովակներ և այլ տեսակի շինանյութեր։

Արտադրված գրեթե ամբողջ գաջը և խողովակներն օգտագործվում են հանրապետության կարիքները հոգալու համար, մնացած շինանյութերի մի մասն արտահանվում է երկրի տարբեր շրջաններ։ Միութենական հանրապետությունները հատկապես մեծ պահանջ են ներկայացնում Հայաստանի շինարարական տուֆի, ֆիլզիտի և տրավերտինի նկատմամբ։

Հայկական ՍՍՀ արդյունաբերության երիտասարդ ճյուղերից է ապակու արդյունաբերությունը։ Հանքային ջրերի, ոչ ալկոհոլային խմիչքների, գինու ու կոնյակի, պահածոների արտադրությունն ունի ապակե տարաների մեծ պահանջ։ Հանրապետությունում ներկայումս գործում են ապակու արդյունաբերության 2 ձեռնարկություն՝ Արզնու «Հայբյուրեղ» միավորումը և Լենինականի լուսատեխնիկական ապակեղենի գործարանը։ «Հայբյուրեղ» միավորումը 1977 թ. կարտադրի 400 հազար հատ բյուրեղապակյա իրեր, որոշ քանակի տեսակավոր ապակեղեն և 150 մլն շիշ։ 1978 թ. շահագործման կհանձնվի Հոկտեմբերյանի ապակու գործարանը, որը բացառապես ապակե տարաներ կարտադրի պահածոների արդյունաբերության համար։

Թեթև արդյունաբերության խնդիրն է ժողովրդական սպառման ապրանքներով բավարարել հանրապետության բնակչության պահանջները և որոշ տեսակի արտադրանքներ արտահանել երկրի մյուս շրջանները։ Մեր հանրապետությունում այժմ թողարկվում են թեթև արդյունաբերության արտադրանքի գրեթե բոլոր տեսակները։ Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության գլխավոր ճյուղերն են՝ բամբակե, բրդե ու մետաքսե գործվածքների արդյունաբերությունը, տեքստիլ-գալանտերեայի, տրիկոտաժի, կարի, կոշկեղենի, կաշվի ու մորթեղենի արդյունաբերությունը։

Բամբակեղենի արդյունաբերությունը 1975-ին թողարկել է 133 մլն ռուբլու արտադրանք։ Այդ ճյուղի խոշոր ձեռնարկություններն են՝ Լենինականի Մյասնիկյան ապստամբության անվան արտադրական բամբակագործական տեքստիլ միավորումը, Լենինականի Լուկաշինի անվան մանվածագործական ֆաբրիկան, Երևանի գործվածքեղենի, «Արագած» մանվածքեղենի, դեկորատիվ գործվածքեղենի ֆաբրիկաները, Կիրովականի մանվածքեղենի գործարանը, Ալավերդու տեքստիլ, Մարալիկի բամբակե մանվածքեղենի ֆաբրիկաները։ Այդ ձեռնարկություններից ամենախոշորը Մյասնիկյան ապստամբության անվան արտադրական բամբակագործական տեքստիլ միավորումն է, որի տարեկան արտադրանքը կազմում է ավելի քան 100 մլն ռուբլի, իսկ աշխատողների թիվը՝ 5.500 մարդ։

Բրդեղենի արդյունաբերության համախառն արտադրանքը 1975 թ. կազմել է 147 մլն ռուբլի։ Ճյուղի գլխավոր ձեռնարկություններն են Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատը, մահուդի ֆաբրիկան և Իջևանի գորգի կոմբինատը։ Այդ ճյուղի մեջ են մտնում նաև տեղական արդյունաբերության «Մասիս» միավորումն՝ իր երեք ձեռնարկություններով և «Հայգորգ» ֆիրման՝ իր 14 բաժանմունքներով։ Մետաքսի արդյունաբերությունն ունի մեկ ձեռնարկություն՝ Երևանի մետաքսի կոմբինատը՝ 3.000 աշխատողներով, որտեղ տարեկան արտադրանքի արժեքը 55 միլիոն ռուբլի է։

Իր թողարկած արտադրանքի ծավալով և աշխատողների քանակով թեթև արդյունաբերության ճյուղերից երկրորդը տրիկոտաժեղենի արտադրությունն է։ Այդ ճյուղով Հայաստանը միութենական հանրապետությունների մեջ հինգերորդ տեղն է գրավում։ Ճյուղի ձեռնարկությունները 1975-ին թողարկել են 171 մլն ռուբլու արտադրանք։

Տարեցտարի աճում է բնակչության պահանջարկը պատրաստի հագուստեղենի նկատմամբ։ Հաշվի առնելով այդ, վերջերս մեծ միջոցներ են հատկացվում արդյունաբերության այդ ճյուղի զարգացմանը։ Դրա շնորհիվ Հայաստանում 1975 թ. թողարկվել է 191 մլն ռուբլու արտադրանք, այս տարի այն կհասնի 215 մլն ռուբլու։

Հանրապետության թեթև արդյունաբերությունում բարձր զարգացման է հասել կոշկեղենի արտադրությունը։ Այդ ճյուղն ունի 11 ձեռնարկություն, որոնցից ամենախոշորը «Մասիս» ֆիրմայի գլխամասային ֆաբրիկան է։ «Մասիս» ֆիրման տարեկան տալիս է մոտ 45 մլն ռուբլու արտադրանք, որի մեծ մասն առաքվում է երկրի խոշոր արդյունաբերական կենտրոններ։ Բարձրորակ արտադրանքի մի մասն էլ արտահանվում է արտասահմանյան երկրներ։

Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերությունը 1975 թ. թողարկել է 100 մլն մետր բամբակե, 4,6 մլն մետր բրդյա, 18,2 մլն մետր մետաքսե գործվածքներ, 2,4 մլն քմ գորգ, 47,9 մլն զույգ գուլպեղեն, 46,5 մլն հատ ներքին, 15,4 մլն արտաքին տրիկոտաժ, 10,7 մլն զույգ կաշվե կոշկեղեն։ Թեթև արդյունաբերության արտադրանքի մի շարք տեսակների փաստացի ծավալը գերազանցում է ռացիոնալ նորմաներով հաշվարկած բնակչության պահանջները։ Օրինակ, բնակչության մեկ շնչի տարեկան ռացիոնալ նորման է 8 զույգ գուլպա, 1975 թվականին փաստորեն արտադրված է 17 զույգ, համապատասխանորեն՝ 9 և 17 հատ ներքին տրիկոտաժ։

Բնակչության հարաճուն պահանջների բավարարման և բարեկեցության բարձրացման համար կարևոր դեր ունի սննդի արդյունաբերությունը։ Արդյունաբերության այդ ճյուղը ևս Հայաստանում արագ թափով զարգացել է սովետական իշխանության տարիներին։ Հայկական ՍՍՀ սննդի արդյունաբերությունը բազմաթիվ ճյուղեր ունի, որոնցից միութենական մասնագիտացման ճյուղերն են գինու և կոնյակի, պտղի ու բանջարեղենի պահածոների, ծխախոտի, հանքային ջրերի և խորդենու եթերայուղի արտադրությունը։ Թվարկվածներից բացի գործում են սննդարդյունաբերության մի ամբողջ շարք ճյուղեր, որոնք հիմնականում բավարարում են տեղի բնակչության ամենօրյա պահանջները։

Հանրապետության սննդարդյունաբերությունը 1975 թվականին արտադրել է 48 հազար տոննա միս, 15,4 հազար տոննա երշիկեղեն, 118,5 հազար տոննա թարմ կաթնամթերք, 332,9 մլն պայմանական տուփ պահածո, 290 հազար տոննա հացաբուլկեղեն, 784 հազար դեկալիտր կոնյակ, 8.911 հազար դեկալիտր գինի, 5.412 հազար դեկալիտր գարեջուր, 9.119 մլն հատ սիգարետ և ծխախոտի գլանակ։

Սննդարդյունաբերության մասնագիտացված ճյուղերի արտադրանքի նշանակալի մասն արտահանվում է մեր երկրի մյուս շրջանները։ Սակայն միաժամանակ սննդի շատ տեսակներ ստանում ենք միութենական մյուս հանրապետություններից։ Այսպես, օրինակ, ներմուծում ենք մեծ քանակությամբ հացահատիկ, ալյուր, ձավարեղեն, միս, բուսական ու կենդանական յուղ, շաքար և այլ սննդամթերքներ։



Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվել է բազմաճյուղ, մասնագիտացված ու համակենտրոնացված, ժամանակակից տեխնիկայով զինված, առաջավոր ճյուղային կառուցվածք ունեցող արդյունաբերություն։ Ձեռնարկությունների մեծ մասը թողարկում է որակյալ, բարձր տեխնիկական մակարդակի արտադրանք, որի զգալի մասն արտահանվում է ո՛չ միայն մեր երկրի բազմաթիվ տնտեսական շրջաններ, այլև արտասահմանյան շատ երկրներ։

Հայաստանի արդյունաբերության արտադրանքն այժմ արտահանվում է 80 արտասահմանյան երկրներ, այդ թվում գրեթե բոլոր սոցիալիստական և մեծ թվով զարգացող ու զարգացած կապիտալիստական երկրներ։ Այդ ամենը պերճախոս վկայում է Սովետական Հայաստանի արդյունաբերության զարգացման բարձր մակարդակի մասին։

Երբեմնի հետամնաց ագրարային տնտեսություն ունեցող նախահեղափոխական Հայաստանը վեց տասնամյակից պակաս ժամանակաընթացքում տնտեսության ու տեխնիկայի զարգացման այնպիսի աննախընթաց թռիչք է կատարել, այնպիսի ծաղկուն արդյունաբերություն է ստեղծել, որ ի վիճակի է արդի զարգացած կապիտալիստական երկրներ արտահանել բարձր արտադրողական մեքենաներ ու սարքավորումներ։

Սովետական Հայաստանի օրինակը ևս մեկ անգամ վկայում է այն մասին, որ տնտեսության սոցիալիստական սիստեմը մեծագույն առավելություններ ունի կապիտալիզմի նկատմամբ։

Ավելի փայլուն են Հայկական ՍՍՀ արդյունաբերության զարգացման հեռանկարները։ ՍՄԿԿ XXV համագումարի հաստատած տասներորդ հնգամյա պլանով նախատեսվում է շարունակել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացումը։ 1980 թվականին, 1975 թ. համեմատությամբ, հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 47 տոկոսով։ Կշարունակվի արդյունաբերության ճյուղային կառուցվածքի բարելավումը, ավելի արագ կզարգանա «Ա» խումբը, իսկ այդ խմբի մեջ առավել արագ կզարգանան նրա առաջատար ճյուղերը՝ էներգետիկան ու մեքենաշինությունը։

Տասներորդ հնգամյակում էներգետիկայի համախառն արտադրանքը կաճի 54,2 տոկոսով. 1980 թ. կարտադրվի 14,5 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա՝ 1975-ի 9,2 մլրդ կվտ-ժամի դիմաց։ Նշանակալի չափով կկատարելագործվի էներգետիկ տնտեսության կառուցվածքը. արտադրված էներգիայի ընդհանուր քանակում կմեծանա ջերմաէներգիայի տեսակարար կշիռը, իսկ թողարկված էլեկտրաէներգիայի ընդհանուր քանակում՝ ատոմային էլեկտրաէներգիայի տեսակարար կշիռը։

Ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացի, հանրապետության աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և քաղաքների հետագա զարգացման համար հատուկ դեր ունի մեքենաշինությունը։ Ընթացիկ հնգամյակում պահպանվելու են մեքենաշինության զարգացման արագընթաց տեմպերը, որի շնորհիվ նրա տեսակարար կշիռը արդյունաբերական համախառն արտադրանքում 1975 թվականի 24,2 տոկոսից 1980 թվականին հասնելու է 28,8 տոկոսի։

Հաշվի առնելով Հայաստանի ժողովրդական տնտեսության մի շարք առանձնահատկությունները, հատուկ ուշադրություն է նվիրվելու մեքենաշինության աշխատատար և նվազ մետաղատար արտադրությունների զարգացմանը։ Մեքենաշինության ճյուղային կառուցվածքում ևս որոշ փոփոխություններ են կատարվելու. մեքենաշինության արտադրանքում ընդլայնվելու է ռադիոէլեկտրոնիկայի, սարքաշինության, ավտոմոբիլային արդյունաբերության և միջճյուղային արտադրությունների բաժինը։ Որոշ ձեռնարկություններ մասնագիտանալու են տեխնոլոգիական պրոցեսները կարգավորող և վերահսկող սարքերի արտադրության բնագավառում։ Տասներորդ հնգամյակում մեքենաշինության աշխատողների թիվն ավելանալու է 28 հազար մարդով և 1980 թվականին հանրապետության ամբողջ արդյունաբերության մեջ զբաղված 364

*հազար մարդուց 153 հազարն աշխատելու է մեքենաշինական ձեռնարկություններում։*

*Ընթացիկ հնգամյակում գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքը կաճի 40 տոկոսով, արագ տեմպերով կզարգանա ոսկու արտադրությունը։ Պղնձի ձուլման ծավալը կաճի ոչ մեծ չափերով, իսկ ալյումինի արտադրությունը բացառապես կավելանա գլանվածքի, հատկապես ալյումինի փոլգայի արտադրության ընդլայնման հաշվին։ Կպահպանվեն մոլիբդենի արտադրության աճման նախորդ հնգամյակի տեմպերը։ Համեմատաբար աղքատ հանքերի օգտագործման նպատակով արմատական տեխնիկական վերակառուցման կենթարկվի մոլիբդենի արդյունաբերությունը։*

*Հատուկ ուշադրություն է հատկացվելու փոքր տոննաժի քիմիական հումք վերամշակող, ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ճյուղերի և կենցաղային քիմիայի զարգացման վրա։*

*Նկատելի տեմպերով կզարգանա նաև շինանյութերի արդյունաբերությունը։ Այդ ճյուղի համախառն արտադրանքը տասներորդ հնգամյակում կաճի 22,3 տոկոսով։ Համեմատաբար արագ տեմպերով կաճի մի շարք արդյունավետ նոր շինանյութերի արտադրությունը։ Պեռլիտի հումքի բազայի վրա կկազմակերպվի տարբեր տեսակի ջերմամեկուսիչ և ձայնամեկուսիչ առարկաների արտադրությունը։ Երկաթբետոնե կոնստրուկցիաների և դետալների արտադրությունը հնգամյակում կավելանա մոտ 1,5 անգամ։ Չափազանց արագ տեմպերով կզարգանա ապակու արդյունաբերությունը. շշերի արտադրությունը կավելանա 80 տոկոսով, իսկ տեսակավոր ամանեղենինը՝ 5,6 անգամ։*

*Զարգացման բարձր տեմպեր կունենան նաև միկրոբիոլոգիական և բժշկական արդյունաբերությունը։ Աբովյանի բիոքիմիական գործարանում 1980-ին կարտադրվեն 550 տոննա միկրոբիոլոգիական նյութեր բույսերի պաշտպանության համար, միաժամանակ կսկսվի մաքուր ամինաթթուների արտադրությունը։ Չարենցավանի լիզինի գործարանը ևս նշանակալի չափերով կավելացնի իր արտադրանքը։*

*Բժշկական արդյունաբերության արտադրանքը հնգամյակում կաճի 2,5 անգամ։ Կընդարձակվի վիտամինային պրեպարատների Երևանի գործարանը։ Այստեղ կառուցված նոր արտադրամասում կարտադրվի 60 տոննա «B» վիտամին։ Երևանի դեղանյութերի գործարանի նոր կառուցված արտադրամասում հնգամյակի վերջում կարտադրվեն 245 մլն ամպուլ ներարկման դեղեր։*

*Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերությունը 1980 թվականին կթողարկի ավելի քան 1 մլրդ ռուբլու արտադրանք։ Նշանակալի չափերով կավելանա բամբակե և բրդյա գործվածքների, գորգերի, տրիկոտաժի, գուլպաների, կարի, կոշկեղենի արտադրությունը։ Թեթև արդյունաբերության արտադրության աճը հիմնականում կապահովվի գործող ձեռնարկությունների վերակառուցման ու ընդարձակման հաշվին։*

*Հանրապետության սննդի արդյունաբերությունը կթողարկի մոտ 1,2 մլրդ ռուբլու համախառն արտադրանք։ Զգալիորեն կավելանա պահածոների, գինու, կոնյակի, հանքային ջրերի, գարեջրի, ծխախոտի, մսի ու թարմ կաթնամթերքների, ալյուրի ու ձավարի, հրուշակեղենի ու շաքարի արտադրությունը։*

*Մեծ զարգացում են ունենալու նաև արդյունաբերության մնացած ճյուղերը, հատկապես համակցված կերի արտադրությունը։*

*Հայկական ՍՍՀ արդյունաբերությունը հաջողությամբ կատարեց տասներորդ հնգամյակի առաջին տարվա պետական պլանային առաջադրանքները։ Գերակատարվել է նաև ընթացիկ տարվա անցած 9 ամիսների համախառն արտադրանքի պլանը։*

*Ոգևորված ձեռք բերված հաջողություններով, հանրապետության արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ կկատարեն ու կգերակատարեն հոբելյանական տարվա պետական պլանները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։*

# Անուններ՝ ձուլված բնությանը

## ԲԵՂՄՆԱՎՈՐ ՈՒՂԻ

Սովետական Հայաստանի առաջին տարիների ուսումնական ու գիտական օջախներից է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտը: Այն ծնվեց, որ հաղագործին ցույց տար քարքարոտ տարածություններում հող ստեղծելու, սարահարթերի թեք լանջերը յուրացնելու, ծանր աշխատանքները մեքենայացնելու գիտական եղանակները, որ ստեղծեր խաղողի ու պտղատու կուլտուրաների՝ մինչև երեսուն աստիճան ցրտին դիմացող, բարձրորակ և բարձր բերքատու սորտեր: Թեև ինստիտուտն ստեղծվեց ուշացումով, բայց հասցրեց օգնության ձեռք մեկնել նաև ամբողջ երկրին:

Գիտական օջախի նվաճումների մասին են խոսում ՍՍՀՄ ԺՏՆ ցուցահանդեսում ու միջազգային համտեսներում ստացած 21 դիպլոմներն ու վկայականները, 24 ոսկե, 16 արծաթե, 10 բրոնզե մեդալները: Կոլեկտիվի անդամներին շնորհվել է գյուտի 12, նոր սորտերի 42 հեղինակային վկայական, երկու մարդ արժանացել է Հայաստանի պետական մրցանակի դափնեկրի, երկուսը՝ գիտության վաստակավոր գործչի կոչման:

Ինստիտուտի հաջողությունների գաղտնիքներից են նաև տարբեր երկրների գիտական օջախների հետ հաստատված լայն կապերը: Մեր Միությունում և արտասահմանյան մի շարք երկրներում վաղուց ի վեր լայնորեն կիրառվում են ինստիտուտում ստեղծված գինու, կոնյակի, սպիրտի և խաղողահյութի արտադրության նոր եղանակներն ու սարքավորումները:

Ինստիտուտի առաջնահերթ խնդիրները եղել և մնում են մեր հանրապետության այգեգործության զարգացման վերաբերյալ Հայաստանի կոմկուսակցության առաջադրած ժամանակակից պահանջները, որոնք ավելի հստակորեն շարադրվել են ՀԿԿ XXVI համագումարում, ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան ու հուլիսյան և հատկապես 1977 թ. ապրիլյան պլենումներում: Ընդունված որոշումներով գիտագործնական մի շարք հրատապ պրոբլեմներ են դրվել նաև ինստիտուտի առջև, որի կոլեկտիվի 250 անդամներից 84-ը կոմունիստներ են: Նրանք են գրեթե բոլոր գիտական կարևորագույն նորույթների հեղինակներն ու առաջատար մասնագետները:

Փորձադաշտն էլ յուրահատուկ լաբորատորիա է, ավելի հարուստ և ընդարձակ՝ փռված տասնյակ հեկտարներով: Յուրաքանչյուր շարքի սկզբում, ցուցատախտակին նշված են նոր սորտերի անունները ու մի քանի համարներ, որոնցից միայն դրանց հեղինակն է գլուխ հանում: Խոշորապտուղ «Սևանի» խոշոր ողկույզների արանքից հազիվ են նշմարվում ծանրաբեռ, վտիտ վազերը: «Ներկառատի» հյութն այնքան մուգ է, որ կարելի է օգտագործել ներկատներում, իսկ երբ փորձում ես նորաստեղծ սև քիշմիշ «Ախթամարի» համը, քաղցրությունից շրթունքներդ կպչում են իրար: Այդպես անծայր շարքերով երբեմնի քարքարոտ ու փշոտ խոպանը զարդարում են «Ուրարտուն», «Տոկունը», «Տիգրանին», «Շահումյանին», «Սուսաննան»... ավանդական տեսակների համեմատությամբ իրենց առավելությունները հաստատած ավելի քան հիսուն նոր սորտ: Այսպիսին է ամուսիններ Սուրեն Պողոսյանի և Սուսաննա Խաչատրյանի շուրջ քառասուն տարվա համատեղ աշխատանքի արդյունքը:

Ինստիտուտի խաղողի սելեկցիայի բաժնի վարիչ, Լենինի անվան համամիութենական գյուղատնտեսական գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Ս. Պողոսյանի ավելի քան 180 և կենսաբանական գիտությունների դոկտոր, կոմունիստ Ս. Խաչատրյանի շուրջ ութսուն աշխատությունները, հոդվածներն ու մենագրությունները լայն գիտական բնույթ ունեն, սակայն դրանց հիմնական նշանակությունը, վերջնական արդյունքը խաղողի այդ հինգ տասնյակ սորտերն են: Այդ սորտերն իրենց գինու որակով հաղթող են ճանաչվել միջազգային համտեսներում, նվաճել տասներեք ոսկե, նույնքան էլ արծաթե մեդալներ:

Սորտերից մի քանիսը տալիս են բարձրորակ խաղողահյութ: Հեղինակները նպատակահարմար են գտնում դրանք բազմացնել առանձին՝ հատկապես խաղողահյութ արտադրելու համար: Ս. Պողոսյանի և Ս. Խաչատրյանի ստեղծած սորտերից տասներեքն արդեն շրջանացվել է: Արարատյան դաշտի տնտեսություններում դրանցով հիմնադրվել է շուրջ 400 հեկտար այգի: Բացի այդ, ցրտադիմացկուն վեց նոր

սորտ արտադրական փորձարկման մեջ է Էջմիածնի, Արտաշատի և Աբովյանի շրջաններում: Տասներորդ հնգամյակի առաջին տարում սորտափորձարկման հանձնվածներին ավելացան նոր անուններ՝ «Երևանյան մուսկատ», «Բերքառատ» և «Մեծամոր» սեղանի խաղողները, գինու խաղողի չորս սորտ, որոնցից «Կարմրենին», «Մերձավանը» և «Մեղրաբույրը» ցրտադիմացկուն են, իսկ «Առատաբերը» օժտված է բարձր շաքարայնությամբ:

Սոֆյա Ագուլյանը հրեսնական թվականներից միչուրինական է: Ուզում էր մեծ գիտնականի ստեղծած սորտերն արմատավորել, բայց առարկում էին՝ «Դրանք Հայաստանի համար չեն»: Քառասունհինգ տարում ապացուցեց իր տեսակետը: Եվ այսօր նրա ստեղծած սորտերը, երկրի բազմաթիվ վայրերից բացի, արմատավորվել են նաև հենց Միչուրինսկում: Պտուղների սելեկցիային է նվիրել ստեղծագործական կյանքի քառասունհինգ տարիները՝ վաստակով ծանրաբեռ, վաստակով իմաստավորված:

Կենսաբանական գիտությունների թեկնածու, Հայաստանի պետական մրցանակի դափնեկիր, «Պատվո նշան» շքանշանակիր, կոմունիստ Սոֆյա Ագուլյանի անունը գրանցված է պտղատուների տասնյակ նոր սորտերի անձնագրերում: Այդ սորտերով այգիներ են հիմնադրվել Մարտունու, Սպիտակի, Կամոյի, Արթիկի, Ախուրյանի և Հայաստանի նախալեռնային ու լեռնային այլ շրջաններում: Առաջին անգամ ծնունդ առնելով Լենինականում՝ Ագուլյանի հիմնադրած այգում, այդ ցրտադիմացկուն սորտերը հասել են նույնիսկ Տամբով, Վորոնեժ ու Ալթայ: Ելակի շատ տեսակներ հիացմունք են պատճառում իրենց տեսքով, համով, բարձր բերքատվությամբ: Շատերը, նույնիսկ այդ կուլտուրան մշակողները, չգիտեն, որ դրանք ունեն անուններ՝ «Արևիկ», «Ռուբինե», «Լոռի», «Լենինականի», և որ դրանք լեռնային պտղաբուծության երախտավոր Սոֆյա Ագուլյանի ստեղծագործություններն են: Նրա հետ նույն բաժնում երկար տարիներ բեղմնավոր աշխատանք է տարել գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Պետրոս Կարանյանը, որի ստեղծած տանձի չորս սորտեր շրջանացված են մեր հանրապետությունում և նրա սահմաններից դուրս: Այդ սորտերի համար Պ. Կարանյանը ևս արժանացել է Հայաստանի պետական մրցանակի դափնեկրի կոչման:

Այդպիսի սորտերը միայն Ագուլյանի ստեղծածները չեն: Շուրջ երեքուկես տասնամյակի ընթացքում գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Էմմա Գաբրիելյան-Բեկետովսկայան մեր Միության և արտասահմանյան երկրների բազմաթիվ վայրերից բերել ու Հայաստանի պայմաններում փորձարկել է կեռասենու ութսուն, բալենու քառասուն, ինչպես նաև նռան, թզի, ճապոնական արմավի, ձիթապտղի բազմաթիվ սորտեր: Դրանցից «Նապոլեոն սև» կեռասը յուրաքանչյուր ծառից տալիս է մինչև 172, «Նապոլեոն վարդագույնը»՝ 104, «Աելիտան»՝ 128 կգ բերք: Հավանության են արժանացել գեղեցիկ ու խոշորապտուղ «Գեներալսկայան», սև ու նույնպես խոշորապտուղ «Նեգրիտյանկան»:

Գիտնականն ստեղծել է սերկևիլի բազմաթիվ սորտեր, որոնք արմատավորված են Հայաստանի տասնութ շրջաններում և մյուս հանրապետություններում: Ուշագրավ է արդեն շրջանացված «Անի» սորտը: Այն փարթամորեն աճում է, քիչ պահանջկոտ է տեղական հողակլիմայական պայմանների նկատմամբ: «Անին» յուրաքանչյուր հեկտարից տալիս է 250 ցենտներ բերք: Էմմայի հետ է նաև դուստրը՝ Ալեման: Նա շարունակում է դեղձենին կորիզով բազմացնելու գիտական աշխատանքը, որը կիսատ է թողել նրա հանգուցյալ հայրը՝ գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Ալեքսեյ Բեկետովսկին:

Պտուղների սելեկցիայի ու լեռնային պտղաբուծության բաժնում ստեղծվել է տանձի, խնձորի, դեղձի, ծիրանի, սերկևիլի, սալորի, կեռասի և այլ պտուղների 39 սորտ, որից ինը՝ շրջանացված է: Արտադրության մեջ դրանց արդյունավետությունը յուրաքանչյուր հեկտարից կազմում է 400—800 ռուբլի, իսկ օգուտների ընդհանուր գումարը կրկնակի գերազանցում է դրանց սելեկցիային հատկացված միջոցները:

Ի մի բերելով սելեկցիոն աշխատանքի արդյունքները, ինչպես նաև հաշվի առնելով տասներորդ հնգամյակի ու հետագա տարիների հեռանկարային պլաններն ու կոմունիստների առաջարկները, ինստիտուտի դիրեկցան մշակել է խաղողագործության ու պտղաբուծության զարգացման կոնկրետ միջոցառումներ: Տարբեր գոտիների համար ընտրվել են համապատասխան սորտեր: Առաջարկվել է Արարատյան դաշտում ու նախալեռնային գոտիների ցածրադիր մասերում, ծովի մակերևույթից մինչև 1.100—1.200 մետր բարձրության վրա հիմնականում տարածել խաղողը, դեղձենին ու ծիրանենին, որոշակի տեղ է տրվում նաև սալորենու և տանձենու ամառային սորտերին: Պտղատու կուլտուրաների սորտեր են ընտրվել նաև Դարալագյազի, Զանգեզուրի ցածրադիր վայրերի, Լոռի-Փամբակի, Շիրակի և Սևանի ավազանի գոտիների համար: Լուծվել են խաղողի՝ սեղանի ու տեխնիկական սորտերի հարցերը: Այսպես, առաջարկվում է Արարատյան դաշտում ընդլայնել



գերվաղահաս, վաղահաս և այլ սորտերի տարածությունները, որի շնորհիվ կերկարաձգվի սեղանի խաղողի օգտագործման ժամանակաշրջանը, ինչպես նաև սառնարանային պահպանության համար կարտադրվի բավարար քանակությամբ խաղող:

Սուրեն Պողոսյանի և Սուսաննա Խաչատրյանի համատեղ ստեղծած սորտերն ունեն բազմաթիվ հատկանիշներ, որոնց հիմնավոր ուսումնասիրության համար անհրաժեշտ է ևս մեկ կյանք՝ 40—50 ստեղծագործական տարիներ: Դա հանձըն առավ նրանց որդին, կենսաբանական գիտությունների դոկտոր, կոմունիստ Կարեն Պողոսյանը՝ իր ղեկավարած բույսերի ֆիզիոլոգիայի ու կենսաքիմիայի բաժնում:

Բեղուն աշխատանք են կատարում գիտությունների դոկտորներ Մկրտիչ Համբարձումյանը, Սեդա Մարությանը, Մարիա Սարկիսովան և բաժնի մյուս առաջատար գիտաշխատողները:

Կոմունիստ գիտնականները բացահայտել են խաղողի ու պտղատու կուլտուրաների ցրտադիմացկունության ֆիզիոլոգիական ու կենսաքիմիական հատկանիշները: Դրա շնորհիվ առանձնացվել են մի շարք սորտեր, որոնք հեռանկարային են Արարատյան դաշտի առանձին վայրերում և նախալեռնային շրջաններում՝ առանց այգեթաղի խաղողագործության համար: Բույսերի պաշտպանության բաժնի վարիչ, գիտությունների դոկտոր Ա. Առաքելյանը և կրտսեր գիտաշխատող Է. Նիկողոսյանը մշակել և արտադրության մեջ փորձարկել են բացարձակ արդյունավետ միջոց արևելյան պտղակերի դեմ, որը ոչնչացնում էր դեղձի բերքի 95 տոկոսը: Այդ նպատակով ծախսված յուրաքանչյուր մեկ ռուբլու դիմաց ստացվում է 25 ռ. 40 կ. լրացուցիչ եկամուտ: 1975 թ. այդ միջոցը կիրառվել է Հայաստանի հյուսիս-արևելյան շրջաններում՝ 4.000 հեկտարի վրա: Միլդյու (չոռ) հիվանդության դեմ գյուղատնտեսական գիտությունների թեկնածու, կոմունիստ Գոհար Ղամբարյանի առաջարկած եղանակի ներդրման շնորհիվ տասը տոկոսով ավելանում է խաղողի բերքատվությունը: Դրա տված օգուտը հանրապետությունում տարեկան կազմում է 5,6 մլն ռուբլի:

### ՀՈՂԻ ԱՄԵՆ ՄԻ ԹԻԶԸ...

Հայաստանի տարածքի իննսուն տոկոսը լեռներ, բարձրավանդակներ, լանջեր ու թեքություններ են: Կուսակցության ու կառավարության նոր ծրագիրը, ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը պահանջում են գյուղատնտեսական մշակության համար իրացնել նոր տարածություններ: Նորը հարցի հրատապությունն է, իսկ հարցը շատ հին է հատկապես Հայաստանում, ուր դարեր շարունակ քարը քարին են դնում, հողով ծածկում, ծառ տնկում, ստանում արևահամ ծիրան, դեղձ ու խաղող:

Ինստիտուտի ագրոտեխնիկայի բաժնի վարիչ, գյուղատնտեսական գիտությունների դոկտոր, կոմունիստ Ռուբեն Երգեսյանը երեքուկես տասնամյակում հետազոտեց լեռնաստորոտներին բնակվող մարդկանց ծանր աշխատանքի փորձը: Այդ փորձի և իր հետազոտությունների հիման վրա կոմունիստ գիտնականն առաջարկեց թեք լանջերի այգետնկման և մշակության տեխնոլոգիան՝ դարավանդավորման միջոցով: Առաջարկը հավանության է արժանացել ու լայն կիրառություն գտել: Այդ եղանակով հիմնված է 700 հեկտար այգի, որից 400-ը բերք է տալիս: Բացի այդ, հանրապետության մի շարք շրջաններում արդեն դարավանդավորվել են 1.500 հեկտար թեքություններ: Այդ եղանակի ուսումնասիրությունները շարունակվում են:

Այգեգործության զարգացման բնագավառում ՀԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների, տասներորդ հնգամյակի և հետագա տարիների հեռանկարային ծրագրի իրականացմանը զգալիորեն կնպաստեն գործարկված ու կառուցվող ոռոգման համակարգերը: Միայն Ազատի ջրամբարի մի մասը, որը շահագործման կհանձնվի այս տարի, կոռոգվի 7.100 հեկտար տարածություն, Ախուրյանի ջրամբարը և Թալինի ոռոգիչ համակարգի երկրորդ հերթը՝ 35 հազար հեկտար, Որոտանի համակարգը՝ 6.000, Ջողազինը՝ 5.000 հեկտար: Այդ հողատարածքների զգալի մասը կհատկացվի այգեգործությանը:

Ինչպե՞ս կազմակերպել այդ հողերի այգետնկումը, որ արագացվի բերքի ստացումը: Այդ հարցի պատասխանը դարձյալ նախապատրաստել է կոմունիստ Ռ. Երգեսյանը: Գյուղատնտեսության ներկայիս մասնագետներից շատերը մանկությունից գիտեն անվանի գիտնականին: Նրան տեսել են իրենց գյուղերում, կոլտնտեսությունների այգիներում ուսումնասիրություններ կատարելիս, այգիներ տնկելիս: Անջրդի այգեգործությունը Ռ. Երգեսյանն սկսել է ուսումնասիրել Հայրենական պատերազմից անմիջապես հետո: Ծովի մակերևույթից 600—900 մետրր բարձրության վրա՝ Կողբում, Նոյեմբերյանում, Սարի գյուղում, Ուզունթալայում և այլ վայրերում տարբեր տարիներ, տարբեր պատվաստակալների վրա նա փորձարկել է խաղողի 15 սորտ: Եվ ահա Ջողազի պրոբլեմին նվիրված խորհրդակցությունում Ռ. Երգեսյանն առաջարկում է համակարգի գործարկումից եր-

կու-երեք տարի առաջ՝ 1977 թվականից անջրդի պայմաններում սկսել ապագա ոռոգելի տարածությունների այգետնկումը, որպեսզի բերքի ստացումը նույնքան ժամանակով արագացվի:

— Իսկ եթե երաշտ լինի՞, և տնկիները չորանա՞ն,— առարկում են տնտեսությունների ղեկավարները,— ո՞վ պետք է պատասխան տա հարյուր հազարավոր տնկիների արժեքի և ապարդյուն աշխատանքի համար:

— Երկու-երեք տարի տնկիները կդիմանան և կարմատակալեն, իսկ երբ հասնի բերքատվության շրջանը, ոռոգման համակարգն օգնության կհասնի,— գիտնականն այդ հաստատում է տարբեր գյուղերում 25—30 տարի առաջ իր հիմնադրած այգիներով, որոնք մինչև այժմ դիմանում և լավ բերք են տալիս:

Առաջարկն ընդունվում է:

Դարձյալ հողը, այս անգամ արդեն կիսաանապատային, քարքարոտ հողը: Մի կողմից՝ լանջերի դարավանդավորում, այգետնկման նպատակով սանտիմետրերով հարթ տարածությունների ստեղծում, մյուս կողմից՝ հազարավոր հեկտարներով հարթություններ, ի սկզբանե անմշակ, հողազերծ: Դրանք քարեր են, քարի ու ավազի խառնուրդներով լեռնացած տարածություններ: Այդպիսի հողերի նախատնկարկային մշակման ուսումնասիրությամբ են զբաղված խաղողի ագրոտեխնիկայի բաժնի մի խումբ աշխատողներ՝ գյուղատնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Արտյոմ Մելքոնյանի ղեկավարությամբ: Նրանց առաջարկները լայնորեն կիրառվում են Արարատյան դաշտի, Կենտրոնական և Հյուսիս-արևելյան գոտիներում:

Կոմունիստ գիտնականներ Արտյոմ Մելքոնյանի, Ռուբեն Երգեսյանի, Յուրի Բարսեղյանի, Վիկտոր Օհանյանի առաջարկով իրականացվում են նաև վազերի միակողմանի ձևավորման ու պլանտաժի թարմացման միջոցառումները, որոնք հնարավորություն են ընձեռում մեքենայացնելու այգեթաղը, այգեբացը և միջվազային տարածությունների մշակումը: Առաջարկներն արդեն ներդրվել են 2.500 հեկտարի վրա և տարեկան տալիս են կես մլն ռուբլու օգուտ:

Պտուղների ագրոտեխնիկայի բաժնի աշխատողները (գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Գուրգեն Եսայան, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Վիկտորյա Միքայելյան և ուրիշներ) մշակել և արտադրության մեջ ներդնում են պտղատու այգիների տընկման ու մշակման առաջավոր ագրոտեխնիկա՝ այգիների խիտ տնկման, նոր, կիսաանապատային քարքարոտ հողատարածքներում հողի պահպանման արդյունավետ համակարգեր, ուսումնասիրում տեղասորտային տեսանկյունով պտղատու այգիների ձևավորման ու էտի եղանակները:

Գիտության և արտադրության կապի կարևորագույն օղակ է տնկարկների ու պատվաստակալների բաժինը, որը ղեկավարում է գյուղատնտեսական գիտությունների թեկնածու, կոմունիստ Լևոն Ափոյանը: Այստեղ, ինչպես ասվում է արդյունաբերության մեջ, «մասսայական արտադրության» են նախապատրաստվում ընտեղծված նոր սորտերի նմուշները:

ՀԿԿ XXVI համագումարն ամենայն սրությամբ պահանջեց զգալի չափով ընդարձակել խաղողի այգիները, վերակառուցել ցածր արդյունավետ, մեքենայական մշակության համար ոչ հարմար այգիների մի մասը, վերացնել տնկարկների նոսրությունը: Այդ պահանջներն իրականացնելու նպատակով տասներորդ հնգամյակի յուրաքանչյուր տարում պետք է արտադրել խաղողի ու պտղի երեքուկես մլն մաքրասորտ, բարձրորակ արմատակալներ: Պահանջը մեծ է, ուստի բաժնի կոլեկտիվը հետևողական աշխատանք է կատարում ինստիտուտի փորձատնկարաններում ու հենակետերում: Առաջարկվել է, ներկայիս 14-ի փոխարեն, ստեղծել չորս կամ հինգ խոշոր, մասնագիտացված պետական տնկարաններ և դրանց մշակությունը դնել արդյունաբերական հիմքերի վրա: Բերքատվությունն արագացնելու նպատակով նախատեսված է Աշտարակի շրջանի Կարպիի և Օհանավանի պետական տնտեսությունների բազայի վրա հիմնել խնձորենու և տանձենու՝ արտասահմանից ստացված թզուկային սորտերի հազար հեկտար արտադրական այգի: Այդ շնորհակալ գործին ակտիվորեն է մասնակցում Լ. Ափոյանը:

## ՄԻ ՔԻՉ... ԹՎԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի խաղողի այգիները զբաղեցնում են Սովետական Միության նույն կուլտուրայի տարածքի երեք տոկոսը, իսկ հայկական կոնյակը երկրի կոնյակի արտադրության մեջ գրավում է առաջին տեղը: Քիչ չեն գինու և կոնյակի ավանդական տեսակները, որոնց պահպանումն ու նորերի ստեղծումը հուսալի ձեռքերում են: Այդ գործը ջանասիրությամբ է իրականացնում ինստիտուտի գինու և կոնյակի տեխնոլոգիայի բաժինը, որը ղեկավարում է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ, կոմունիստ Լևոն Ջանփոլադյանը: «Նեկտարենի», «Աշնակ», «Ազատենի», «Նազելի», «Շուշան»՝ ահա նոր մակնիշի բարձրորակ գինիների ոչ լրիվ ցանկը: Բաժնի առաջարկների արմատավորման շնորհիվ հարստացվել է սեղանի, թընդեցված գինիների ու շամպայնի տեսականին, կատարելագործվել է ավանդական գինիների արտադրության տեխնոլոգիան, ուսումնասիրվել կոնյակի քիմիկո-տեխնոլոգիական հիմունքները: Ինստիտուտի սելեկցիոն սորտերից այստեղ ստացված գինիները միութենական ու միջազգային համտեսներում ստացել են 18 ոսկե և 16 արծաթե մեդալներ:

Լայն ճանաչում է գտել Լ. Ջանփոլադյանի ղեկավարությամբ և տեխնիկական գիտությունների թեկնածուներ, կոմունիստներ Կոնստանդին Խաչատրյանի ու Ալեքսանդր Սամվելյանի մասնակցությամբ ստեղծված շիթային ռեակտորը, որն օգտագործվում է գինեգործության տարբեր տեխնոլոգիական պրոցեսներում: Տեխնիկական գիտությունների թեկնածու Սերգեյ Ջոհրաբյանի առաջարկով ստեղծված կոնյակի սպիրտի թորման ապարատը ներդրվել է Միության բազմաթիվ գործարաններում և Ալժիրում: Այժմ մեր երկրի կոնյակի սպիրտի վաթսուն տոկոսն ստացվում է այդ ապարատի միջոցով: Ապարատի արմատավորումը տարեկան տալիս է 4,9 միլիոն ռուբլու տնտեսում: Բարձր արդյունավետություն ունի տեխնիկական գիտությունների թեկնածու Ծովինար Պետրոսյանի մշակած կոնյակի սպիրտի հնեցման տեխնոլոգիան (պուլսացիայի եղանակով), որը կիրառվում է Հայաստանում և երկրի մի շարք գործարաններում:

Տարվա բոլոր եղանակներին պահածոների արդյունաբերության համաչափ աշխատանքն ապահովելու համար արդյունավետ է գործում պտուղների տեխնոլոգիայի և վերամշակման բաժինը, որը ղեկավարում է տեխնիկական գիտությունների թեկնածու, կոմունիստ Վլադիմիր Այգենբերգը: Այստեղ մշակվել է մրգերի արագ սառեցման, կոմպոտների, մուրաբաների, հյութերի և այլ տեսակի պահածոների համար սառեցված պտուղների վերամշակման տեխնոլոգիան: Մինչ այդ սառեցված պտուղները սևանում էին, կորցնում պիտանիությունը: Արագ և խորը սառեցման եղանակը մեծ օգնություն է պահածոյագործներին, մինչդեռ թարմ մրգերի սեզոնայնությունն ու դրանց պահպանման կարճ ժամկետները նրանց դնում էին դժվարին կացության մեջ: Սառեցված մրգերից ու պտուղներից պատրաստված պահածոները բարձր գնահատականի են արժանացել հանրապետական ու միութենական համտեսներում:

Խաղողի և խնձորի երկարատև պահպանման արդյունավետ եղանակները ներդրվում են նոր կառուցված երեսուն մրգապահեստներում ու պետական տնտեսություններում: Բաժնում մըշակվել է խաղողի հյութի արտադրության չորս եղանակ, որոնք մինչ այդ գործողների համեմատությամբ տեխնոլոգիական պրոցեսն արագացնում են 200 անգամ: Դրանցից երկուսն արդեն ներդրվում են Հայաստանում, Ուկրաինայում, միջինասիական հանրապետություններում և Բուլղարիայում: Սառեցման կենսաքիմիական պրոբլեմների լուսաբանման գործում կարևոր ներդրում ունի տեխնիկական գիտությունների թեկնածու Սուրեն Մինասյանը:

Միկրոբիոլոգիայի բաժնում, որը ղեկավարում է պրոֆեսոր, կոմունիստ Բորիս Ավագյանը, մշակվել է հոսքի ընթացքում գինու սառը ստերիլիզացիայի եղանակը: Դրա կիրառումը միայն Հայաստանում տարեկան տալիս է մեկուկես մլն ռուբլու օգուտ: Նույն բաժինն առաջարկել է կենսաբանական ակտիվ նյութերի ստեղծման նոր եղանակ, նյութեր, որոնք խառնվում են գինեգործության թափոններից ստացված կերի հետ: Միության մասշտաբով այդ առաջարկի արմատավորմամբ տարեկան կստացվի 75 մլն ռուբլու օգուտ:

Նոր սորտերը, հողի մշակման եղանակները, նոր տեխնոլոգիաներն ու մեքենասարքավորումները ընդհանրացնում են այն մեծ փորձը, որ մասնիկ առ մասնիկ կուտակվել, ամբողջացվել ու հասունացվել են անցած հիսուն տարիներին: Դրանք ամփոփում են ինստիտուտի հիմնադիրների մտահղացումները, ծաղկափոշիների առաջին տրամախաչումները, հողի ու արևի հետ կապված նրանց երազանքները: Գիտական նորույթների հեղինակները, կյանքի կոչելով դրանք, պատվով են կատարել աշակերտի իրենց պարտքը, և այսօր հիսնամյա բարձունքից երախտագիտությամբ են հիշում իրենց ուսուցիչների անունները: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Նորայր Սիսակյանն այստեղ ստեղծել է կենսաքիմիայի լաբորատորիան, տեխնիկական գիտությունների դոկտոր Գեորգի Աղաբալյանցը եղել է դիրեկտոր, լուծել գինեգործության մի շարք պրոբլեմներ, պրոֆեսոր Նիկոլայ Պրոստոսերդովը նորույթներ է մտցրել գինեգործության տեխնոլոգիայում: Գիտության վաստակավոր գործիչ Անաստասիա Վերմիշյանը, գյուղատնտեսական գիտությունների թեկնածուներ Գրիգոր Սանթրոսյանը, Արտավազդ Ամիրջանյանը, Ալեքսեյ Բեկետովսկին, ինստիտուտի հիմնադիրներից՝ Արիադնա Յափուջյանը և էլի ուրիշ անխոնջ ու նվիրված մարդիկ, որոնց հիշատակը չեն մթագնել հիսուն տարիները, դրել են անսասան հիմնաքարեր, ավանդույթներ են ստեղծել ու թողել աշակերտներ:

## ԱՊԱԳԱ ԱՅԳԻՆԵՐԸ ԵՎ ԱՅՍՕՐՎԱ ԽՈՉԸՆԴՈՏՆԵՐԸ

Միայն ընթացիկ հնգամյակում հանրապետությունում պետք է հիմնվի խաղողի ու պտղի 9.000 հեկտար արդյունաբերական այգի: Այդ տարածություններում հնարավոր չի լինի արմա-

տավորել բարձրորակ սորտեր, եթե շարունակվի գիտության ու արտադրության կապի ներկայիս վիճակը: Կոմունիստներն իրենց ժողովներում բազմիցս քննադատել են այն երևույթը, երբ ինստիտուտում ստեղծված խաղողի բարձր շաքարայնությամբ, բարձր բերքատու սորտերը արմատավորվում են Միության շատ շրջաններում, նույնիսկ արտասահմանում, իսկ Հայաստանում, հակառակը, իջնում է խաղողի շաքարայնությունն ու միջին բերքատվությունը:

Հատկապես վերջին երկու-երեք տարիներին ինստիտուտի կուսժողովներում խոր ու բազմակողմանի քննարկվել են կոլեկտիվին հուզող գրեթե բոլոր պրոբլեմներն ու խնդիրները:

ՀԿԿ XXVI համագումարի որոշումները քննարկելուց հետո կուսբյուրոն ու դիրեկցիան մշակել են հատուկ պլան, որի համաձայն գիտնականները, կուսակցության շրջանային կոմիտեների հետ համատեղ, խորհրդակցություններ են անցկացրել Էջմիածնի, Արտաշատի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Թալինի, Իջևանի, Ազիզբեկովի, Նոյեմբերյանի, Շահումյանի և այլ շրջաններում, ցուցումներ և ուղղություն տվել այգեգործներին: Այդ խորհրդակցություններում, ինչպես նաև ինստիտուտի կուսակցական ժողովներում ու գիտխորհրդի նիստերում ծավալված ստեղծագործական բանավեճերը հանգում են հետևյալին. այգեգործության ներկա վիճակը չի համապատասխանում ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջներին, այն անկայուն է, որը և խախտում է գյուղատնտեսական արտադրության համաչափ զարգացումը: Այսօրվա և առավել ևս վաղվա պահանջներին չեն համապատասխանում խաղողի և պտղի արտադրության մակարդակը, այգեգործության վարման ձևերն ու մեթոդները: Անբավարար են խաղողի ցրտադիմացկուն բարձրարժեք սորտերի արագացված բազմացման, պտղատու կուլտուրաների լավագույն սորտերի ընտրության, այգիների մշակության աշխատատար պրոցեսների համակողմանի մեքենայացման, ինտենսիվ, մասնավորապես պալմետրային այգիների մշակության, գինու, կոնյակի, պահածոների արդյունաբերության մեջ նորագույն տեխնոլոգիական ռեժիմների արմատավորման աշխատանքները, չնայած այդ բնագավառներում ինստիտուտը ներկայացրել է բարձրարժեք առաջարկներ:

Ահա ինստիտուտի կոմունիստներին հուզող գլխավոր հարցերից ևս մեկը, թերևս ամենագլխավորը՝ արդյոք շատ երկար չէ՞ «գիտություն-արտադրություն» ուղին, շա՞տ չեն, արդյոք, այդ ճանապարհի խոչընդոտները: Յուրաքանչյուր սորտ տաս-տասնհինգ տարվա քննություն է անցնում ինստիտուտի լաբորատորիաներում, գիտնականների աշխատասենյակներում, ջերմատներում ու հենակետերում: Հաստատված առաջարկը վերստին նույնպիսի երկար ճանապարհ է բռնում պետական սորտափորձարկման կայաններում, միջանկյալ այլ գիտական հաստատություններում, գյուղատնտեսության մինիստրությունում, և հեղինակի կյանքը հաճախ չի հերիքում արտադրության մեջ տեսնելու դեռևս երիտասարդության տարիներին իր ստեղծած լավագույն սորտը:

Կուսակցական ժողովը դեռևս 1974 թ. ապրիլին հարց է հարուցել՝ ստեղծել խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտաարտադրական միավորում, որը, ինչպես նշել են կոմունիստները, պետք է ներդնի գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները, ապահովի բարձր բերքատու սորտերի տնկանյութի արտադրությունը և այգեգործության մասնագիտացումը: Այդ հարցի կարևորությունն ավելի սրությամբ շեշտվեց նաև ՀԿԿ Կենտկոմի 1977 թ. ապրիլյան պլենումում, Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ. «Ստեղծված դրությունը հրամայաբար պահանջում է, որ հանրապետությունում լուծվի խաղողի և պտղատու կուլտուրաների տընկանյութի արտադրության գիտաարտադրական միավորում կազմակերպելու հարցը՝ նպատակ ունենալով լիովին ապահովել հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների պահանջմունքը՝ այդ ճյուղերի զարգացման գլխավոր սխեմային համապատասխան»: Այս պահանջները կատարելու համար ինստիտուտի կոլեկտիվը բազմապատկել է իր եռանդը: Հարկ է հիմնովին փոխել փորձարարական բազաների գործունեությունը, բարելավել գիտական և արտադրական այգիների մշակության վիճակը, ընդհանրացնել արտադրության առաջավոր փորձը:

Կադրերի ուսուցման, գիտական ուսումնասիրությունների ու հետևողական որոնումների հետ ծնունդ են առել ինստիտուտի երկրորդ հիսնամյակի առաջին ծրագրերը, որոնք ոչ միայն գիտական խոշոր կանխագծումներ են, այլև մարդու առօրյա պահանջը հողից, կուսակցության ու կառավարության, ամբողջ ժողովրդական տնտեսության պահանջը գյուղատնտեսության այդ ճյուղի նկատմամբ: Այդ ծրագրերի իրականացումը դեռ շատ ջանքեր պետք է խլի գիտնականներից ու շատ քրտինք՝ հողի աշխատավորից:

ՄԱՎՐ ԴԱՆԻԵԼՅԱՆ

## ՄԱՐԴԻԿ և ՏԱՐԻՆԵՐ

# Վավերացված է ժամանակի կնիքով



ՄԱՐԴՈՒ ԱՊՐԱԾ ԿՅԱՆՔԸ, ըստ էության, այնքան ավելի նշանակալից է, որքան ավելի շատ են տվյալ ժամանակաշրջանի հատկանշական իրադարձությունների հետ նրա շփման կետերը: Անհատի կենսագրությունը նման դեպքերում ինչ-որ չափով նույնանում է ժամանակի այդ որոշակի հատվածի հետ. կենսագրական մի քանի շտրիխ՝ և անսխալ կարելի է որոշել մարդու ապրած տարիները:

Այդպիսին է և Գարեգին Սահակյանի կյանքը: Աչքի եմ անցկացնում իմ գրառումները և ինձ թվում է՝ արդեն ընթերցված հուշագրություններ եմ թերթում: Այդ կենսագրության մեջ ծանոթ շատ բան կա՝ և՛ իրադարձություններ ու տարեթվեր, և՛ դեմքեր ու դեպքեր, բայց ավելի շատ ծանոթ է այդ կյանքի համապատկերը, այն ընդհանուր ֆոնը, որի վրա տեղի են ունեցել դրա բովանդակությունը կազմող իրադարձություններն ու դեպքերը:

Թերևս ճիշտ է ասված, թե ամեն մի սերունդ ունի իր տիպական կենսագրությունը: Կարելի է միայն ավելացնել՝ կենսագրության տարբերակները: Նույն սերնդի մարդկանց կյանքը շատ բանով կարող է ընդհանուր լինել, որքանով որ նույնն է ընդհանուր հայտարարը՝ ժամանակը: Բայց ամեն մի սերունդ իր սոցիալական խըմբերն ու խավերն ունի, իսկ դրանք միմյանցից տարբերվում են կենսապայմաններով, գործունեության ոլորտներով, հաճախ նաև՝ հետապնդած նպատակներով: Գարեգին Սահակյանի անցած ուղին, ընդհանուր գծերով, բնորոշ է մեր դարին հասակակից սերնդի մարդկանց, ավելի ստույգ՝ սերնդի այն հատվածի, որը կյանք է մտել հեղափոխության կանչով և իր հավատամքով ծառայել նրա իդեալներին:

Ընդունված չէ սեփական կենսագրությունը փուլերի բաժանել, բայց Գարեգին Սահակյանն իր 76-ամյա կյանքից առանձնացնում է մի շրջան, ու երբ անցածը վերհիշելու առիթ է լինում, սկսում է այդ շրջանից: Եվ դա իր բացատրությունն ունի: Արդեն միայն տարեթվերը ինքնին շատ բան են ասում՝ 1914—1920: Եվ, որպես լրացուցիչ տեղեկություն, հիշատակում է նաև բնակավայրը՝ Բաքուն: Սա ևս ինչ-որ բան նշանակում է: Յոթ անհանգիստ տարիներ՝ ամբողջ երկրի համար. պատերազմ, Փետրվարյան հեղափոխություն, հետո մեծ Հոկտեմբեր ու քաղաքացիական կռիվներ... Իսկ Բաքվում, ավելի ճիշտ՝ Անդրկովկասում, այդ ամենին ավելացան նաև «տեղական» բնույթի իրադարձություններ՝ կոմունայի հաղթանակն ու անկումը, սովետական կարգերի հաստատումը Ադրբեջանում և Հայաստանում... Իրադարձությունների այդ շղթայի մեջ Սահակյանի համար բախտորոշ էր մանավանդ կոմունայի շրջանը, որը էապես պայմանավորեց նրա ուղին, աշխարհայացքը, եթե կուզեք՝ ողջ էությունը:

ՆԱ ԲԱՔՈՒ ԵԿԱՎ, երբ ընդամենը տասներեք տարեկան էր: Հայրենի Ծավ գյուղում ավարտել էր տարրական դպրոցը և, հենց որ յուրայիններին այցի գալուց հետո Բաքվում աշխատող համագյուղացիները պատրաստվել էին այնտեղ վե-

բաղառնալ, միացել էր նրանց: Հանքափոր Խաչատուրը որդուն Ղափանից ուղեկցել էր մինչև Նախիջևան, հասցրել գնացքին և, պահ տալով հայրենակիցներին, ետ վերադարձել: Մեծ ու անտարբեր քաղաքում բախտի քմահաճույքին թողնված գյուղական երեխայի սովորական ճակատագիր... Ոչ մի լուսավոր կետ, հույսի ոչ մի շող, թե այս օտար քաղաքը կարող է ապաստան դառնալ անօգնական պատանու համար: Ասենք, նա առանձնապես պատրանքներ էլ չուներ: Ուրիշ բան, եթե կենդանի լիներ հորեղբայրը՝ Թևատրոսը, որն ավելի վաղ էր հիմնավորվել Բաքվում, և որի հետ ողջ գերդաստանը իր հույսերն էր կապում: Բայց նրան նենգաբար սպանել էին այս նույն քաղաքում, այն նույն նավթահանքում, ուր բանվորություն էր անում: Ո՞վ էր սպանել, ինչո՞ւ: Այդպես էլ ոչ ոք չուզեց պարզել: Տարեց բանվորները համոզված ասում էին, թե դա օխրանկայի սարքած բանն էր. Թևատրոսը բանվորների համար հեղինակություն էր և այդ ազդեցությունը գործի էր դնում ոչ այն ձևով, ինչպես դա կցանկանային պաշտոնական իշխանությունները: Ինչևէ, հիմա նա չկար, հիմա ինքը մնացել էր դեմ-հանդիման այս նավթաշխարհի հետ, ուր նրան ուղարկել էին մարդ դառնալու հույսով և ուր, «ոտքը տեղ բռնելուց հետո», նա պետք է մտածեր նաև գյուղում մնացածների մասին:

Անչափահաս պատանուն դա ուժից վեր բան չէր թվում: Գյուղում երեխաները շուտ են հասունանում թե՛ հոգսը հասկանալու, թե՛ այն հոգալու առումով: Միայն թե աշխատանք լիներ: Համագյուղացիներից այստեղ դիրք ունեցող մարդիկ կային ու նա, ի վերջո, դիմեց նրանց օգնությանը: «Արամազդի» նավթահանքերից մեկում օժանդակ բանվորի գործ տվեցին՝ 20 կոպեկ օրավարձով, ու տեղավորեցին Բիբի-Հեյբաթի հանրակացարանում: Սա արդեն ինչ-որ բանի նման էր: Համենայնդեպս, սոված ու անգործ չի թափառի փողոցներում:

Աչքաբաց էր ու գրաճանաչ՝ այնպես թե այնպես չորրորդ դասարան էր ավարտել: Նկատեցին այդ բարեմասնությունները և, որոշ ժամանակ անց, հանքի գրասենյակ փոխադրեցին՝ որպես հեռախոսավար: Աշխատանքը նրան դուր էր գալիս ոչ այնքան իբրև այդպիսին, որքան «մեծ մարդկանց» հետ շփվելու համար ընձեռած հնարավորությամբ: Կատակ բան չէ. զանգում էր ինքը՝ «Արամազդի» ամենակարող կառավարիչ Մարգուլովը և զանազան կարգադրություններ անում: Իրեն՝ Խաչատուրի որդի Գարեգին Սահակյանին: Շոյվում էր նրա պատանեկան ինքնասիրությունը և, վերադառնալով հանրակացարան, ոչ առանց թավականության հայրենակիցներին «հաղորդակից էր դարձնում» օրվա նորույթներին, որոնք ոչ այլ ինչ էին, եթե ոչ գրասենյակային սովորական անեկդոտներ: Ջահելները աչքերը չռած լսում էին նրան և, գուցե, ինչ-որ տեղ նաև նախանձում. «Տես, է՜, մեզնից ուշ եկավ, բայց մեզնից շուտ մարդամեջ մտավ»: Մեծերը ծիծաղում էին նրա անմեղ պարծենկոտության վրա, իսկ Արշակ ամին՝ համագյուղացիներից ամենատարեցը, կես-կատակ, կես-լուրջ ասում էր՝ «Խաչատուրի որդին դեռ սոցիալիստ էլ կդառնա»: Ի՞նչ նկատի ուներ, ի՞նչ էր հասկանում նա «սոցիալիստ» ասելով, դժվար էր գուշակել: Արդյո՞ք այն, որ ինքը հետևում էր լրագրերին, թե այն, որ կապերի մեջ էր գրասենյակի աշխատակիցներ Գարգալոյանի ու բանվոր Ֆեոդորովի հետ, որոնք «ստաչկոմի» ակտիվ անդամ էին, կամ գուցե այն, որ իրեն՝ այդքան երիտասարդ, արդեն «ստաչկոմի» քարտուղար էին դարձրել... Գուցե և պարզապես նախազգացո՞ւմ էր...

Այսպես, թե այնպես՝ նա իրոք «սոցիալիստ» դարձավ:

ՍԿՍՎԵՑ ԱՆՄԵՂ հանձնարարություններից: Ֆեոդորովն ու Գարգալոյանը մերթ ընդ մերթ նրան ուղարկում էին ինչ-որ տեղից «գրասենյակային թղթեր» բերելու: Սովորական փաթեթներ էին, որոնց պարունակության մասին իրեն ոչինչ հայտնի չէր: Բայց մի օրինաչափություն նա, այնուամենայնիվ, կարողացավ հայտնագործել. փաթեթները տեղ հասցնելու հաջորդ օրը բանվորների մոտ թռուցիկներ էին երևում: Միշտ ինքնամփոփ ու սակավախոս Գարգալոյանը քթի տակ փնթփնթաց ու խուսափեց պատասխանել, իսկ Ֆեոդորովը, ձեռքը նրա ուսին դնելով, ասաց՝ «Ճիշտ ես կռահել: Աշխատիր զգույշ լինել»:

Տարիներ անցան: Ու մի օր լուր ստացվեց Փետրվարյան հեղափոխության մասին: Ոգևորությանը չափ չկար: Ի՞նչ էր իրենից ներկայացնում այդ ժամանակավոր կառավարությունը՝ նա այնքան էլ հստակ չէր պատկերացնում, բայց արդեն այն հանգամանքը, որ ցարը տապալվել էր, նրան անսահման ուրախություն էր պատճառում:

Մարդիկ տարբեր կերպ էին արտահայտում այդ օրերի իրենց ոգևորությունը: Բնավ վերջին միջոցը չէր նաև ոգելից խմիչքը: Այդ ընդհանուր տրամադրությունից չխուսափեց և Գարեգինը, որին, ի դեպ, մինչ այդ անծանոթ էր օղու հոտը: Հիմա էլ չի կարողանում հասկանալ՝ անփորձությունի՞ց էր, թե՞ իրոք շատ էր խմել. Կասպիականը ծնկներից էր թվում: Եվ ինչպե՜ս էլ այդ վիճակում հայտնվեց նավթահանքում: Հայտնվեց ու սկսեց բղավել. «Ասացե՛ք, մարդիկ, ո՞ւմ համար ենք մենք աշխատում, մինչև երբ պիտի տզրուկները ծծեն բանվոր դասակարգի արյունը»: Դա դեռ ոչինչ, հեղափոխությունը նոր էր կատարվել, կոչերի ու լոզունգների հեղինակներին կարող էին ի նկատի առնել, բայց չպատժել: Իսկ նա նաև պատժելու առիթ տվեց: Ձեռքը գցեց էլեկտրական վահանակին ու իջեցրեց լծակը: Էներգիան անջատվեց, նավթահանքում աշխատանքը կանգ առավ: Լուրը հասցրին ձեռնարկատերերին, և Մարգուլովի կարգադրությամբ վտարվեց աշխատանքից: Սպառնում էին դատական գործ բացել:

Բայց հիմա արդեն մարդիկ կային, որոնք շահագրգռված էին նրա ճակատագրով և որոնց կարծիքի հետ նույնիսկ Մարգուլովի համար հեշտ չէր հաշվի չնստել: Գործի դրվեցին այդ լծակները: Գարեգինը մնաց նավթահանքում: Նրա աշխատատեղն այս անգամ արդեն ծովի մեջ խրված մի տախտակամած էր: Այստեղից նա պոմպով ջուր էր մղում նավթահանքի ռեզերվուարները:

ԲԱՔՎՈՒՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԹՆՈԼՈՐՏԸ շիկանում էր օր-օրի: Ամեն մի կուսակցություն ջանում էր ընդլայնել իր ազդեցության ոլորտը, բայց բոլորի համար պարզ էր, որ ամենաազդեցիկ քաղաքական ուժն այստեղ բոլշևիկների կազմակերպությունն էր: Ի դեպ, իրադարձությունների հետագա ընթացքը նույնպես համոզիչ կերպով այդ հաստատեց: Բաքվի կոմիտեն այնքան իրեն ամուր էր զգում, որ Հոկտեմբերի հաղթանակից ընդամենը մեկ շաբաթ անց որոշում ընդունեց իշխանությունը սովետների ձեռքը վերցնելու մասին:

Հոկտեմբերը ուժերի վերախմբավորման իմաստով կարծես ամեն բան միանգամից իր տեղը դրեց: Հիրավի, անմոռանալի օրեր... Իսկ կոմունան՝ Բաքվի պրոլետարիատի հպարտությունն ու պարծանքը... Ինչպիսի՜ երջանկություն՝ լինել պատմական այդ իրադարձության մասնակիցն ու վկան. պրոլետարիատը դարձել է դրության տերը, իշխանությունը պատկանում է նորին մեծություն բանվոր դասակարգին... պատկերացնո՞ւմ եք պատմական մոմենտի հուզականությունը, այն բերկրանքն ու ցնծությունը, որ համակել էին նավթաշխարհի մարդկանց...

Հոկտեմբերը ստիպեց նոր ձևով նայել իրականությանը: Մինչև հիմա ապրած կյանքը մի տեսակ նախերգանքի էր նման արդեն: Բուն կյանքը նոր էր միայն սկսվում: Ովքեր չեն ապրել այդ պահը, դժվար կպատկերացնեն որակական այդ անցումը: Մինչ այդ նրանք պայքարում էին կյանքի ընթացքը փոխելու համար, հիմա իրենք են պատասխանատու այդ ընթացքի համար: Սա՞ չէ, արդյոք, բանվոր դասակարգի պատմական առաքելությունը...

Ինչե՜ր միայն չստեղծեց պրոլետարիատի հեղափոխական միտքը ճակատագրական այդ օրերին: Նրա մտքի սքանչելի արգասիքներից էին Բաքվի պանծալի բանվորական մարտական դրուժինաները, որոնց առաջին անդամներից էր Գարեգին Սահակյանը: Նա ընդգրկված էր այն պահակախմբում, որին վստահված էր պաշտպանության շտաբի հսկողությունը: Այստեղ հաճախ էին այցելում Ջափարիձեն, Ֆիոլետովը, Կորգանովը, Սոլնցևը, Ավագյանը և, իհարկե, Շահումյանը: Հուզմունքով է մտաբերում Շահումյանի հետ իր մի հանդիպումը: Այդ օրը նա հսկում էր շտաբի գլխավոր մուտքը, իսկ դա մեծ պատիվ էր դրուժիննիկի համար: Անսպասելիորեն շտաբ եկավ Շահումյանը: Հրացանը սեղմեց ուսին և ձգվեց փայտի պես: Շահումյանը նայեց ու ժպտաց: Հետո, քայլերը դանդաղեցնելով, հարցրեց. «Իսկ դուք գիտե՞ք, թե ինչ եք պաշտպանում»: «Իհարկե, հեղափոխության շտաբը», հետևեց վստահ ու համարձակ պատասխանը: Շահումյանը նորից ժպտաց. «Այդպես էլ սխալ չէ: Բայց ավելի ճիշտ կլինի ասել՝ պաշտպանության շտաբը»:

Որպես դրուժինայի անդամ, նա այդ շրջանում կապված էր առավելապես «Ծովային ակումբի» հետ, որն ըստ էության Բայիլովի բոլշևիկյան կենտրոնն էր: Եվ, ինչպես դրուժիննիկներից շատերը, ակտիվորեն մասնակցում էր ագիտացիոն աշխատանքին՝ պարզաբանում էր բոլշևիկյան լոզունգների իմաստն ու նշանակությունը, տարածում թռուցիկներ, կոչեր, լրագրեր...

«Ծովային ակումբը» քաղաքական դաստիարակության լավ դպրոց եղավ: Կուսակցական հանձնարարությունները նա կատարում էր մեծ պատրաստակամությամբ, դրանք հարազատ էին նրա ակտիվ խառնվածքին և, այդ ինքն էլ զգում էր, հղկում ու զարգացնում էին քաղաքական աշխատանքի ճաշակը: Այդ իմաստով շատ բան էին տալիս հատկապես այլ կուսակցությունների ներկայացուցիչների հետ բանավեճերը: Բայիլովում հաճախ նման բանավեճեր էին լինում դաշնակցության ներկայացուցիչների հետ: Այստեղ մեծ թիվ էին կազմում հայ բանվորները, իսկ դրանց մի մասի վրա դաշնակցությունը նկատելի ազդեցություն ուներ: Շահումյանը, ինչպես և մյուս լենինյանները, չէին զլանում մեկ-երկու ժամ կտրել իրենց սուղ ժամանակից և տրամադրել նման բանավեճերի: Ու նրա հիշողության մեջ մնացել է բանավիճող Շահումյանը: Առանձնապես տպավորվել է այդ հանդիպումներից մեկը: Նախ խոսեց դաշնակցության ներկայացուցիչը: Նրա ճառի ողջ իմաստն այն էր, թե ազգն ուժեղ է իր միասնությամբ, թե հայ ժողովուրդն իր ներքին կյանքում իրավունք չունի թույլ տալու այնպիսի մի շռայլություն,

ինչպիսին դասակարգային պայքարն է, և այլն, և այլն: Հռետորական արվեստը, պետք է ասել, խորթ չէր այդ մարդուն: Եվ հետո՝ ազգայնական քարոզները պարարտ հող միշտ էլ գտնում են: Դաշնակցականներն այս բանավեճին նախապատրաստվել էին առանձին խնամքով: Ավելորդ չէ հիշել այսպիսի մի մանրամասնություն. նրանք հենց այստեղ ցուցակագրում էին իրենց համակրողներին, ցուցադրական շքեղությամբ հանդերձավորում ու զինում, իսկ դա, հատկապես երիտասարդության վրա, որոշակի ներգործություն էր ունենում:

Հազիվ թե հարկ կա վերհիշելու, թե ինչ ասաց Շահումյանը: Նրա ելույթը մի ներբող էր ինտերնացիոնալիզմին: Խոսում էր կրքոտ, առանց փքուն արտահայտությունների և նախորդ հռետորին պարզապես ջախջախեց փաստերի լեզվով ու տրամաբանության ուժով: Հակամետ դասակարգերի համերաշխության պատրանքը, եթե որևէ մեկն այն ուներ, հիմնովին հօդս ցնդեց:

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՌԵԱԿՑԻԱՆ ու ներքին հակահեղափոխությունը կործանեցին կոմունան: Դա Բաքվի պրոլետարիատի սրտին հասցված ամենածանր հարվածն էր, որը չսպիացող վերքի նման միշտ զգացնել կտա իրեն: Սկսվեց ահավոր մի շրջան՝ կոտորած, թալան, բռնություն, ծաղրուծանակ... Նավը, որով նա հեռանում էր Բաքվից, տախտակամածի վրա ընդունել էր կառամատույցում խռնված ամբոխի աննշան մասը միայն: Ականջին հիմա էլ ասես դեռ հնչում են այդ օրհասական ողբն ու ճիչը: Կորցնելով փրկության ամեն մի հույս, մարդիկ իրենց ծովն էին նետում՝ Բաքու ներխուժած թուրքերի դատաստանից խույս տալու համար: Հեռացող նավից նա սարսափով տեսավ, թե ինչպես այդ նույն ձևով իրենց կյանքին վերջ տվեցին մանկության ընկերը՝ Թավադին, նրա կինը և դեռատի աղջիկը:

Ահա թե ինչպիսի կերպարանք ուներ այդ հակահեղափոխություն կոչվածը: Հետագայում շատ բան տեսավ: Նաև՝ ֆաշիզմ: Բայց անմարդկայինը միշտ նրան պատկերանում էր նախ այս տեսարանով:

Նա պատմում է, իսկ ես գրի եմ առնում: Ու չգիտեմ ինչպես թղթին փոխանցել խոսքի մեջ զգացվող ինքնակշտամբանքի այդ երանգը. կարծես մեղավոր է նահատակված ընկերների առջև, որ հանգամանքների բերումով, այնուամենայնիվ, ողջ է մնացել:

Ամիսներ էին անցել: Էնզելիից մի նավ էր գալիս Բաքու: Այնտեղ էր վերադառնում նաև Գարեգին Սահակյանը: Մեկնեցին մոտ 500 հոգով, կենդանի մնաց հազիվ մի քանի տասնյակը: Մյուսները սովի ու համաճարակի զոհ դարձան: Ողջ մնալու համար երևի պարտական էր իր նախանձելի ֆիզիկական տվյալներին: Բայց այն, ինչ այժմ պահպանվել էր նրանից, «բնօրինակի» հետ միայն մոտավոր նմանություն ուներ: Պահանջվեց մի քանի ամիս՝ փոքր-ինչ մարդավայել տեսքի գալու համար: Եվ առաջին բանը, որ ձեռնարկեց, «Ծովային ակումբ» այցելելն էր: Ամբողջովին տակնուվրա էր արված: Ռեակցիան հաշվեհարդար էր տեսնում ոչ միայն մարդկանց, այլև այն ամենի նկատմամբ, ինչը ուղղակի կամ անուղղակի առնչվում էր կոմունայի հետ:

ՋԱՐՄԱՆԱԼԻ ՄԱՐԴԻԿ ԵՆ այդ կոմունիստները: Կանխազգացո՞ւմը, հոտառությո՞ւնը, բնա՞զդը, թե՞ մի ավելի զորեղ ուժ միշտ նրանց օգնում է փնտրելու և գտնելու միմյանց, նույնիսկ ամենաանհավանական իրադրություններում: Նոր էր գործի անցել, երբ հանդիպեց վաղեմի ընկերներից մեկին՝ Շնչենկոյին: «Մենք կանք և գործում ենք», ասել էր նա ու պատվիրել հանդիպել Ֆեոդորովին: Վերջինս էլ նրան հայտնել էր, որ կուսբջիջը վերսկսում է իր ընդհատակյա գործունեությունը, որ Բաքվում բոլշևիկները ամենաեռանդուն կերպով համախմբում են իրենց ուժերը, որ նրանք մոտ ապագայում վճռական ճակատամարտի կելնեն:

1919-ի վերջերին, երբ նոր էր լրացել 18 տարին, այդ նույն բջիջը նրան ընդունեց կուսակցության շարքերը: Շուտով նա արդեն բջջի քարտուղարն էր: Զանգեզուրցի նավթագործները սրամտում էին, թե Ծավը Բաքվում իր բոլշևիկյան կազմակերպությունն ունի: Եվ, իրոք, այս բջջում նրա հայրենակիցներից շատերը կային՝ Սերգո Անտոնյան, Հայրապետ Համբարձումյան, Անանիա Պետրոսյան, Նիկոլայ Հարապետյան և ուրիշներ:

Բոլշևիկները եռանդուն կերպով համալրում էին իրենց շարքերը, և դա բարոմետրի ստույգությամբ արտահայտում էր ժամանակի տրամադրությունն ու ոգին: Շատ բան հիշեցնում էր կոմունայի նախօրյակը: Մոտալուտ հեղափոխական գոտեմարտերի մասին էր ավետում բանվորական մարտական դրուժինաների աննկարագրելի ակտիվացումը: Դրուժինան, որին ղեկավարում էր Գարեգին Սահակյանը, գրեթե չէր տարբերվում սովորական զինվորական ստորաբաժանումներից. քաղաքից դուրս կանոնավոր զորավարժություններ էին անում և նույնիսկ զբաղվում զենքի ու զինամթերքի հայթայթմամբ:

Մոտենում էր վճռական գրոհը: 1920 թ. ապրիլի 27-ին, ինչպես բոլոր դրուժինաները, իրենց ջոկատը ևս զինվեց մարտական պատրաստության կանոններով ու առաջադրանք ստացավ: Լույս 28-ի գիշերը գրոհի անցան: Հրահանգը կատարվում էր ամենայն ճշգրտությամբ:



Նախ շրջապատեցին ոստիկանատունը, զինաթափեցին ու ձերբակալեցին ոստիկաններին, հետո, այլ ջոկատների միացած, գրավեցին Բայիլովի զորանոցը և, վերջապես, չեզոքացնելով պահակային ծառայությունը, Բայիլովի բանտից ազատեցին բոլոր քաղբանտարկյալներին:

Այսպես էր քաղաքի բոլոր շրջաններում:

Առավոտյան երեք զրահագնացք մտավ կայարան: Դրանով սկսվեց 11-րդ կարմիր բանակի մուտքը: Բաքուն, նրա հետ և ողջ Ադրբեջանը, հռչակվեցին սովետական:

Մայիսի 1-ին Բայիլովում վիթխարի միտինգ էր կազմակերպված: Իրեն ևս հանձնարարեցին ելույթ ունենալ: Հիմա հիշում է մարդկային ծովը, որ ձուլված էր Կասպիականի ջրերին...

Մայիսի սկզբներին մարտական դրուժինաներին առաջադրանք տրվեց հետապնդել քաղաքից ճողոպրած հակասովետական բանդաների պարագլուխներին, որոնք ապաստանել էին Մաշտաղայում: Առաջադրանքն առանձին կարևորություն էր ստանում նրանով, որ Մաշտաղան սպառնում էր վերածվել յուրատեսակ Վերսալի:

Երեք օր Մաշտաղան շրջափակման մեջ պահեցին: Զայրույթը հազիվ էր զսպում. ինչպե՜ս կուզենար իր նահատակված ընկերների վրեժը լուծելու համար բնաջնջել այս որջը: Բայց ոչ, հեղափոխությունն իրավունք չունի իջնելու հակահեղափոխության մակարդակին: Ամեն բան կարվի օրինական ձևով: Ի վերջո, բանդան անձնատուր եղավ: Պետք էր տեսնել, թե ինչպիսի խայտաբղետ տեսք ուներ այն՝ մուսավաթականներ ու ցարական գեներալներ, մենշևիկներ ու դաշնակցականներ, կադետներ ու էսէռներ... Եվ ինչպե՜ս էլ գտել էին միմյանց: Հեղափոխությունն ինչ-որ ընդհանուր բան ունի էլեկտրական դաշտի հետ: Այն հասարակական ուժերի բևեռացման իմաստով նույնն է անում, ինչ երկրորդը՝ լիցքավորված մասնիկների համար, երբ դրական ու բացասական յուրաքանչյուր լիցք անմիջապես գտնում է իր համապատասխան բևեռը:

Ինչպե՜ս այստեղ չհիշեր դաշնակցության ներկայացուցիչների հետ այն նշանավոր բանավեճը: Կուզենար ուղղակի մոտենալ հիմա նրանցից մեկն ու մեկին, բռնել օձիքից ու հարցնել. «Ասացե՛ք, սիրելի պարոն, իսկ այս ամենն ինչպե՞ս է համատեղվում ձեր տեսության հետ...»:

ՄՏՔՈՎ ԱՆԳԱՄ ՉԷՐ ԱՆՑՆՈՒՄ, թե բանվորական դրուժինայով սկսվելու էր իր կյանքի մի նոր շրջանը՝ զինվորական ծառայությունը: Այդ օրերին Ադրբեջանի կուսկենտկոմին կից ստեղծվում էր առաջին կոմունիստական գունդը, որը կոչված էր պահպանելու ներքին կարգ ու կանոնը, և կոմպլեկտավորվում էր արտադրության մեջ աշխատող ու մարտական դրուժինաներում ներգրավված կոմունիստներից: Իրեն ևս կանչեցին: Ու դրանից էլ սկսվեց:

1920-ի ամռանը 11-րդ կարմիր բանակի հայ զինվորներից ու հրամանատարներից կազմավորվեց առաջին հայկական գունդը, որն այնուհետև համալրվեց Ղազախ-Շամշադինի ապստամբ գյուղացիներից: Գարեգին Սահակյանը սկզբից ևեթ գնդի կուսկազմակերպության քարտուղարն էր ու 5-րդ վաշտի քաղղեկը:

Հոկտեմբերին գունդն արդեն Գանձակի շրջանում էր: Դադարը թվում էր անսովոր, բայց հենց այդ դադարի պահին էլ գյուղացիները լավ առիթ ունեցան համոզվելու, որ նոր բանակը ոչ այլ ինչ է, եթե ոչ նույն աշխատավոր ժողովրդի շարունակությունը: Բանակայինները լինում էին գյուղերում, օգնում դաշտային աշխատանքներին, կազմակերպում խրճիթ-ընթերցարաններ, ներկայացումներ տալիս...

Դադարը տևեց մոտ երկու ամիս: Ինչպես և պետք էր սպասել, Հայաստանում նույնպես օր-օրի իրադրությունը հասունանում էր սովետական կարգերի հաստատման համար: Նոյեմբերի վերջերին, 11-րդ բանակի այլ զորամասերի թվում, հայկական գունդը ևս առաջադրանք ստացավ՝ ընդհուպ մոտենալ սահմանագծին և պատրաստ լինել օգնելու Հայաստանի ապստամբած աշխատավորությանը: Ոգևորությունը համակել էր բոլորին: Վատ զինված, թերասնված, հնամաշ հանդերձանքով, բայց խանդավառված իր առաքելությամբ, հայկական գունդը ժամ առ ժամ կրճատում էր այն տարածությունը, որ բաժանում էր մայր հայրենիքից: Չորրորդ վաշտի քաղղեկ Եղիա Չուբարը նույնիսկ երգ էր հորինել ազատ Հայաստանի մասին: Գնդի համար յուրատեսակ հիմն էր դարձել այն: Զինվորները քայլում էին փոշոտ ճամփաներով ու դաշտերով և, իհարկե՝ ավանսով, փառաբանում իրենց ազատ Հայաստանը:

Կար այսպիսի մի լոզունգ՝ հեղափոխության մարտիկը չպետք է անգրագետ լինի: Զինվորներին այն շատ էր դուր եկել: Ու հիմա ժամանակը չէին կորցնում: Շարքերի առջևից քայլում էին գրաճանաչ զինվորները, թիրախների վրա բարձրացնում տառերը, իսկ շարքերը ետևից կրկնում էին՝ ա, բ, գ... Տակավին ձևավորման պրոցեսում բանակը կրում էր իր դաստիարակչական-լուսավորական առաքելության սաղմերը:

ՍԱՀՄԱՆՆ ԱՆՑՆԵԼՈՒ հրաման տրվեց: Այդպիսի ապրումներ երկրորդ անգամ էր ունենում: Առաջինը՝ կոմունայի օրերին: Այստեղ դրան ավելանում էր մի այլ բան՝ հանդիպումը հայրենի հողի հետ: Ի՜նչ հրաշալի զգացում է դա...

Հինգերորդ վաշտն առաջապահ զորամասերից էր: Դրանք սովորաբար իրենց վրա են ընդու-

նում հակառակորդի առաջին հարվածը: Բայց այն «հարվածը», որ վաշտն այստեղ ընդունեց, բոլորովին այլ կարգի էր: Բերկրանքի, ժողովրդական ցնծության ալիքն էր դա: Միայն «Կրիվոյ մոստի» մոտ դաշնակցական կառավարության պահակային զորախումբը փորձեց դիմադրություն ցույց տալ: Համոզվելով, սակայն, որ անիմաստ է, անձնատուր եղավ:

Իրադարձությունները, որ տեղի ունեցան նոյեմբերի 29-ի օրը, մեր նոր պատմության հիմնաքարերը դարձան: Սովետական իշխանության հաստատումը հաղթական երթի էր նման: Միայն Դիլիջանում անհասկանալի դադար տրվեց: Երբ այդ կապակցությամբ 11-րդ բանակի հրամանատար Գեկկերին հայտնել էին, թե դա արվում է դաշնակցական կառավարության խնդրանքով, որպեսզի մայրաքաղաքի հանձնումը հասցնեն նախապատրաստել, փորձառու զորավարը խիստ բարկացել էր. «Զինվորականները, ասել էր, չպետք է հավատան նման հեքիաթների: Առա՜ջ, և ուրիշ ոչինչ...»:

ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ հեղաբեկումները, ինքնաբերաբար, մարդկանց առջև դնում են փոփոխված պայմաններին հարմարվելու պրոբլեմը: Սակայն այս նոր կենսաձևի մոդելը «մշակված» էր այնպիսի ճշգրտությամբ, որ այդ խնդիրը լուծվեց առանց հատուկ ճիգերի: Կյանքը մեկեն հունի մեջ մտավ: Տառապած ժողովուրդը, որ կարոտ էր խաղաղ աշխատանքի, չհապաղեց օգտվել ընձեռված հնարավորությունից և անմիջապես ձեռնամուխ եղավ բզկտված ու բազմաչարչար երկրի նորոգմանը:

Ո՞րն էր իր տեղն այս նոր կյանքում: Զինվորականի կարիերան նրան առանձնապես չէր գայթակղում: 20-ականի սկզբներին համաշխարհային հեղափոխության հեռանկարն այնքան մոտ էր թվում և, բնականաբար, այնքան անհարիր զենքի ու զորքի պահպանման հետ, որ նա բանակի վերացումը ամենամոտ ապագայի հարց էր համարում: Սակայն ավելի հեռատես մարդիկ այլ կերպ էին մտածում: Եվ այդ հեռատես մարդիկ բանակի քաղբաժնին կից ստեղծեցին ռազմաքաղաքական դպրոց ու իրեն էլ առաջարկեցին սովորել այնտեղ: Նկատենք, որ այդ դղրդալից ցուցանակի տակ դըպրոցը, այնուամենայնիվ, միանգամայն խաղաղ գործերով էր զբաղված: Սովորողների համար իբրև հիմնական ձեռնարկ ծառայում էին «Կոմունիզմի այբուբենը» և Սեգալի «Տնտեսագիտությունը»: Դասախոսների ընտրությունը ևս ինչ-որ բան նշանակում էր. Հայկ Ազատյան, Աշոտ Հովհաննիսյան... մարդիկ, որոնք շատ հեռու էին ռազմատենչ ծրագրեր ոգորելու մտքից:

Կարճատև այս դասընթացները վերջանալու հաջորդ օրը՝ փետրվարի 15-ին, պետք է կայանար շրջանավարտների երեկո: Հանդերձանք տվեցին: Առաջին անգամ՝ բոլորովին նորը: Այդ նույն երեկոյին պետք է կատարվեին նաև նշանակումները: Բայց երեկոն տեղի չունեցավ: Գիշերը տագնապի ազդանշան տրվեց: Շարքով քաղաքից դուրս տարան: Այստեղ դպրոցի դիրեկտոր Ալեքսանդրովը հայտնեց, որ Բաշ Գառնիի շրջանում բանդիտներ են երևացել: Հարկավոր է վերացնել: Սահակյանը նշանակվեց ստորաբաժանման քաղղեկ, իսկ մինչև հրամանատար նշանակվելը կատարելու էր նաև դրա պարտականությունները:

Ինչպես հետո պարզվեց, «Բաշ-Գառնիի շըրջանում բանդիտների երևալը» դաշնակցականների փետրվարյան ավանտյուրայի ազդանշաններից մեկն էր: Իսկ դա նշանակում էր, որ իրենք գործ էին ունենալու զինված ու մարտական պատրաստության բերված հակառակորդի հետ: Աղբաշի մոտ տեղի ունեցավ առաջին ընդհարումը: Ջոկատը 13 զոհ տվեց, խիստ սառնամանիքից շատերը ցրտահարվեցին: Ուժերը վերախմբավորելուց հետո կրկին գրոհի անցան: Հակառակորդը ետ շպրտվեց: Տարվելով գրոհով, իրենք, սակայն, չէին նկատել, որ թևերից ոչ ոք չի աջակցում: Տոկ գյուղի մոտ ծուղակի մեջ ընկան: Երևանի բանտից ազատվեց միայն ավանտյուրայի ջախջախումից հետո:

Նոր նշանակում՝ այս անգամ արդեն ՉԿ-ի հատուկ զորամասում, որպես շտաբի քաղղեկ ու կուսկազմակերպության քարտուղար: Եվ առաջին պարգևը. հատկապես վտանգավոր բանդիտների մի խմբի լիկվիդացման գործում ցուցաբերած անձնական արիության համար նա պարգևատրվում է կաշվե պիջակով և ատրճանակով:

ՉԿ-ն՝ «կուսակցության զինված մասը», հրապուրում էր նրան արդեն իսկ իր կոչման կարևորությամբ: Աշխատանքի անցնելով, նկատեց, սակայն, որ գործի նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքը, ոչ սակավ դեպքերում, բնավ էլ համամասնական չէր այդ նույն գործի լրջությանը: Եվ դա ուներ իր բացատրությունը: ՉԿ-ն, հատկապես նրա շարքային կազմը, համալրվել էր թեկուզև նվիրված, բայց այդ գործի համար անփորձ մարդկանցով: Երեկվա ռամիկը, պետական ծառայության վերաբերյալ իր նահապետական ըմբռնումներով, այս կարևոր ապարատի աշխատանքի ոճի մեջ տնավարության որոշակի տարրեր էր բերել իր հետ: Հարկավոր էր նրան սովորեցնել կատարողական կարգապահության արվեստը, տոգորել պետական կատեգորիաներով մտածելու և գործելու ունակությամբ՝ հարցեր, որոնց լուծման մեջ քիչ ավանդ չէր ներդնում շտաբի քաղղեկն ու կուսկազմակերպության քարտուղարը:

Քանական թվականների սկզբին չեկիստների առջև ծառացած կարևորագույն պրոբլեմներից մեկը բանդիտիզմի դեմ մղվող պայքարն էր: Ստանձնելով Նախիջևանի ՉԿ-ին կից հատուկ ջոկատի կոմիսարի պարտականությունները, նա շատ լավ գիտեր, որ հարվածի սլաքն ուղղվելու էր բանդիտների դեմ: Բայց ջոկատի հետ առաջին ծանոթությունը թևաթափ արեց: Մեր օրերում նույնիսկ դժվար է պատկերացնել, որ իրենց բարձր կազմակերպվածությամբ ու հըղկվածությամբ աչքի ընկնող անվտանգության մարմինների ծնունդը ուղեկցվել է նման ծանր երկունքով: Այդպես էր գոնե ծայրամասերում: Եվ Նախիջևանը բացառություն չէր: Դժվար է ասել, թե այդ ջոկատն ինչպես էր կոմպլեկտավորվել, ինչ սկզբունքով էին ընտրվել զինվորները: Մի բան, սակայն, պարզ էր. նրանցից շատերն իրենց բարոյաքաղաքական ու մարտական հատկանիշներով պարզապես պիտանի չէին այն լուրջ խնդիրների կատարման համար, որ դրվում էին ջոկատի առջև: Ինչ վերաբերում է հրամանատարին, ապա նա մխրճվել էր աղի վաճառքի հետ կապված մութ գործարքների մեջ և հենց Նախիջևանի ՉԿ-ի որոշմամբ էլ ձերբակալվեց: Ջոկատի հրամանատար նշանակեցին իրեն:

Զինվորների մի մասին վտարեց ջոկատից, իսկ նրանց դեմ, ովքեր չարաշահել էին պաշտոնական դիրքը, քրեական գործ հարուցվեց: Ջոկատը համալրեց նոր ուժերով: Կա չեկիստի իդեալական կերպարը՝ Ձերժինսկին, և այդ ապարատին զինվորագրված յուրաքանչյուր ոք իր գործերն ու վարքագիծը պետք է ստուգի նրանով. այսպես էր սովորեցնում զինվորներին:

Շուտով բավական մարտունակ մի միավորում ստեղծվեց: Եվ առաջին լուրջ օպերացիան, որ իրագործեցին, Բիչանակում բույն դրած բանդիտների լիկվիդացումն էր: Ավազակների այդ խումբը կտրել էր Զանգեզուրը Երևանի հետ կապող ճանապարհը և ահ ու սարսափի մեջ էր պահում Սիսիանի ու Նախիջևանի շրջակա գյուղերի բնակչությանը:

Բանդիտների հետ նա նաև իր «անձնական» հաշիվն ուներ: Ընդամենը մեկ տարի առաջ իրեն՝ հանրապետական ՉԿ-ի հրահանգչին, հանձնարարեցին Գորիս մեկնել: Պատահական զուգադիպությամբ այնտեղ էր գնում նաև կուսկենտկոմի կինբաժնի հրահանգչուհի Աշիկ Շադունցը՝ կենսուրախ մի աղջիկ, որը, չնայած երիտասարդ տարիքին, արդեն հայտնի էր նոր կյանքի մեջ կանանց ներգրավման ասպարեզում ծավալած իր ակտիվ գործունեությամբ: Նախիջևանից սկսած ճանապարհը պետք է ձիով անցնեին: Վտանգավոր ժամանակներ էին, և ուղեկցող զինվոր տրամադրեցին: Բարեհաջող տեղ հասան: Անչափ ուրախ էին իրենց այս ծանոթության համար և պայմանավորվել էին Երևանում հանդիպել:

Ի՞նչ զգացում էր այդ՝ հիմա նույնիսկ ինքն իր համար չի ուզում պարզել: Բայց եթե այն մարդուն հուզում է ավելի քան կես դար հետո ևս, ապա դա ինչ-որ բան նշանակում է:

Գորիսից Ղափան մեկնեց՝ երկար ընդմիջումից հետո յուրայիններին տեսության: Հետո Երևան վերադարձավ բոլորովին այլ ճանապարհով: Եվ այն, ինչ լսեց այստեղ, մինչև հոգու խորքը ցնցեց նրան: Ետդարձի ճանապարհին Բիչանակում բանդիտները հարձակվել էին Աշիկի ու նրան ուղեկցողների վրա: Վերջիններիս տեղնուտեղը սպանել էին, իսկ Աշիկին պահել էին մի քանի օր և տանջամահ արել ամենաքստմնելի ձևով:

Հիմա նա դրանց հետ հանդիպման էր գնում: Ի՞նքն էր փնտրում այդ հանդիպումը. Նախիջևանում նշանակում ստանալը ինչ-որ չափով ի՛ր նախաձեռնության արդյունք էր:

Տասնութ օր մնացին Բիչանակում: Վերջապես հետքը գտան: Բանդիտները ոչ միայն ամենալկտի ձևով մերժեցին անձնատուր լինելու առաջարկը, այլև անմիջապես կրակ բացեցին: Պատասխան հարվածն անխնա էր: Բանդիտների մի մասը ոչնչացվեց, այդ թվում և դրանց պարագլուխ Ասադը: Մյուսներին հետապնդեցին և շուրջկալի մեջ առան, երբ փորձում էին Արաքսն անցնել: Բանդան լիկվիդացվեց: Մարդիկ ազատ շունչ քաշեցին:

Բանդիտիզմի դեմ մղվող պայքարը քաղաքական կարևորության խնդիր էր և մեծապես դրանով էր պայմանավորված սովետական իշխանության հեղինակությունը: Աշխատավորները տեսնում ու համոզվում էին, որ նոր կարգը իրենց ոչ միայն հողի ու երկրի տեր է դարձրել, այլև ամեն ինչ անում է մարդկանց անդորրն ու խաղաղությունն ապահովելու համար:

Սկսվեց խաղաղ աշխատանքի, հետևաբար և՝ խաղաղ հոգսերի մի տևական շրջան: Վերջապես նա կարող էր մտածել հիմնավոր կրթություն ստանալու մասին:

Իմ ձեռքի տակ է այդ տարիների նրա արխիվը. լրագրեր, փաստաթղթեր՝ բնօրինակներով ու պատճեններով, գրագրություններ, լուսանկարներ... Կենսագրական վավերագրեր են դրանք ու վկայություններ անձնական լայն հետաքըրքրությունների, որոնք թե՛ ծառայության և թե՛ ուսումնառության տարիներին երբեք չեն ամփոփվել անմիջական պարտականությունների նեղ շրջանակներում: Խունացած ու ժլատ վավերագրերը նա լրացնում է իր բացատրություններով՝ կենդանություն տալով ցամաքած տողերին, ընդլայնելով այդ սկզբնաղբյուրների պարունակած ինֆորմացիայի սահմանները: Չի ե-

ղել նոր կյանքի կառուցման մի բնագավառ, որով չափրեր ու չհետաքրքրվեր նա՝ տնտեսական շինարարությանը վերաբերեր խոսքը, թե՛ կուսակցական շինարարությանը, գաղափարական պայքարին, թե՛ աշխատանքի ոճին...

Ահա «Наша правда» լրագրի՝ հիսունհինգ տարի առաջ լույս տեսած հնամաշ համարներից մեկը: Այստեղ զետեղված է «Ճանապարհից մի շեղվիր» խորագրով ոչ մեծ մի հոդված, որն ավելի շուտ բաց նամակի է նման: Հեղինակը դիմում է զինվորական իր կոլեգային և կոչ անում բարելավել աշխատանքի ոճը: Նրան լրջորեն մտահոգում է ոմանց մոտ դրսևորվող բյուրոկրատիզմը, որն անհարիր է նոր բանակի էությանը:

Երևանի ռազմաքաղաքական դպրոցում ուսանելու շրջանում նա գլխովին նետվում է տրոցկիզմի դեմ մղվող պայքարի մեջ: Սովորածը կյանքում դրսևորելու յուրատեսակ պրակտիկա էր դա, որտեղ նա գաղափարական մկրտության լավ դպրոց անցավ:

Հոկտեմբերյանի Նորապատ գյուղի տարեց բնակիչները լավ են հիշում սահմանապահ ստորաբաժանման կոմիսարին, որը, Սարգիս Լուկաշինի համաձայնությամբ, այդ վայրն ընտրեց իր վերաբնակեցվող հայրենակիցների համար ու դարձավ գյուղի հիմնադիրներից մեկը:

Հայաստանի կոմկուսի V համագումարի մասնակիցները նույնպես գուցե դեռ կհիշեն այն զանգրահեր պատգամավորին, որը ողջույնի ջերմ խոսքով դիմեց Գերմանիայից ժամանած պատվիրակությանը:

Լենինգրադի ռազմաքաղաքական ակադեմիայում ուսանելու տարիներին նա կուսակցության մարզային կոմիտեի ամենաակտիվ արտահաստիքային հրահանգիչներից էր:

Յարոսլավլի և Թբիլիսիի զինվորական հոսպիտալների պետն ու կոմիսարը կարճ ժամանակամիջոցում հասավ այն բանին, որ դրանք իրենց ցուցանիշներով օրինակելի դարձան Միության մեջ:

Նորից լրագրեր... «Կարմիր զինվորի» 1936 թ. հոկտեմբեր-նոյեմբերի երկու համարներում տպագրված է «Հեղափոխական օրինականության մասին» ծավալուն հոդվածը, որի հեղինակն է Անդրկովկասյան օկրուգի զինվորական տրիբունալի հայկական բաժնի նախագահը: Դա կրքոտ խոսք է՝ ի պաշտպանություն հեղափոխական օրինականության, ընդդեմ նրանց, ովքեր արդարադատությունը փոխարինում են սովետական քաղաքացիների դեմ «գործեր սարքելով»:

...Սեղմ տողերի մեջ ամփոփված է նրա կյանքը, ավելի ճիշտ՝ այդ կյանքի փուլերը, որի առավել հուժեղ ակորդներից մեկը դարձավ մեծ Հայրենականը: Պատերազմը նա սկսեց Կովկասի նախալեռներում և ավարտեց գերմանական հողում: Հեղափոխության ու կուսակցության վետերանի ծառայությունները գնահատվել են բազմաթիվ շքանշաններով և մեդալներով: Նա միութենական կարգի անհատական կենսաթոշակառու է:

Գարեգին Սահակյանը գրեթե հասակակից է իր դարին: Պատահական զուգադիպություն, որը, սակայն, զուրկ չէ սիմվոլիկ իմաստից: Ծնվել է դարի հետ, առնականացել է դարի հետ ու նրա գլխավոր ուղղությանը ծառայելու մեջ է գտել իր կյանքի իմաստը: Դրա համար էլ այդ կյանքի վրա ժամանակի կնիքը կա, ու նրա մեջ իր շեշտված արտահայտությունն է գտել այդ նույն ժամանակի ոգին:

Անձնական արխիվը թերթելիս ես աչքի անցկացրի նրա ինքնակենսագրությունը: Շարադրված էր բավական հանգամանորեն և, այդուհանդերձ, ամեն բան այնտեղ ներկայացված էր խոշոր պլանով: Այդպես է լինում, երբ կյանքը չի մանրատվում, երբ այն ի սպաս է դրվում մեծ նպատակների:

Ռ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04417 Պատվեր 2117 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ 14.700: Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 15/X—1977 թ. ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:*




## СОДЕРЖАНИЕ



### К 60-ЛЕТИЮ ВЕЛИКОГО ОКТЯБРЯ



### ЛЮДИ И ГОДЫ

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԹՈՔԵՐԻ ՎԻՐԱՀԱՏՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴ

*Թոքերի վիրահատությունը խիստ բարդ է և դժվար: Օրինակ, որպեսզի բրոնխներից հեռացվի ուռուցքը, պահանջվում է բացել կրծքավանդակը, սրտապարկի խոռոչը (ուր գտնվում են սիրտն ու արյունատար խոշոր անոթները), կտրել թոքերի հյուսվածքները: Կենդանի օրգանիզմի այդպիսի խոր ներթափանցմամբ միայն հնարավոր է մոտենալ վնասվածքի նենգ օջախին: Բայց բժիշկները կատարում էին այդ բարդ վիրահատությունը, որովհետև դա էր հիվանդի փրկության միակ ելքը:*

*Այժմ արդեն հնարավոր է կատարել թոքերի վիրահատություն առանց կրծքավանդակի բացման: Բրոնխոսկոպի հետ ուլտրաձայնային ճկուն ռադիոհաղորդափողի կոմբինացիան հնարավորություն է ընձեռում «հասնելու» մինչև ուռուցքը, նույնիսկ եթե այն գտնվում է բրոնխների ամենախոր մասում: Այդ նպատակով սովետական բժիշկներ Պետրովը, Սարգսյանը և ինժեներ Բորիսովը ստեղծել են հարմար ու հուսալի գործիք: Ուլտրաձայնային ռադիոհաղորդափողի օգնությամբ արդեն կատարվել են բրոնխների տասնյակ վիրահատություններ:*

### ԿՈՆՎԵՅԵՐՆԵՐ՝ ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Խոշոր գրադարաններում անհրաժեշտ է լինում ըստ հարկերի շատ գրքեր բաժանել: Լվովի «Կոնվեյեր» արտադրամիավորման նոր փոխադրամիջոցի ներդրումը հնարավորություն կընձեռի ազատվելու այդ աշխատատար գործից: Դա ծրագրային սարքով ուղղահայաց-փակ կոնվեյեր է, որն ըստ հարկերի բաժանում է գրականություն: 22 խցիկներից յուրաքանչյուրը տեղափոխում է 12 կգ բեռ՝ մոտ 100 մ բարձրության վրա:*

### ՄԻԱՅՆ ՇԱՐԺԻՉԸ ՓՈԽԵԼՈՎ

*Չեխոսլովակյան «Ագրոշին» ձեռնարկությունն ստեղծել է գյուղատնտեսական փոքրաչափ սարքերի մի ամբողջ համակարգ՝ գութաններ, քաղհանող և հող փխրեցնող, ցանող, հնձող և սրսկող մեքենաներ, 110 կգ բեռնունակությամբ տրանսպորտային բեռնասայլակներ: Յուրաքանչյուր հարմարանք ունի երկու անիվ, պտույտափոխանցիչ և ձեռքով վարելու սարք: Չկա միայն շարժիչը, որի համար էլ տեղ է թողնված կցաշուրթերով ամրացման համար: Սարքերի ամբողջ կոմպլեկտին, որը բնականաբար աշխատում է տարվա բոլոր ամիսներին, սպասարկում է 5,2 ձիաուժ հզորությամբ մեկ երկտակտ մոտոր: Այն փոխվում է ընդամենը մի քանի րոպեում: Այդպիսի սարքերն անհրաժեշտ են մարգագետիններին, ջերմոցներին, սելեկցիոն տեղամասերին, այգիներին և քաղաքային պուրակներին:*

### ԷՀՄ-Ն ԵՎ ՀԵՌԱԽՈՍԸ

*Հեռախոսային ցանցն օրվա տարբեր ժամերի ունենում է տարբեր բեռնվածություն: Անխափան կապի ապահովման համար ԱՀԿ-ի աշխատանքն անհրաժեշտ է մշտապես կարգավորել: «Ֆիլիպս» (ԳՖՀ) ֆիրմայի լաբորատորիայում ստեղծվել է մասնագիտացված ԷՀՄ, որը կարգավորող սարքերի հետ ապահովում է ցանցի լարվածության և կապի 10 հազար կանալների գծերի հաճախականության ավտոմատ կանոնավորումը: ԷՀՄ-ն ազդանշաններ է տալիս կառավարող սարքերին, որոնք մեկ ակնթարթում յուրաքանչյուր աբոնենտի համար ընտրում են առավել հարմար ռեժիմ:*

### ԿԱԹԻ ԱՆԱԼԻԶԸ՝ ԿԵՍ ՐՈՊԵՈՒՄ

*Ընդամենը 30 վայրկյան է պահանջվում անգլիական «Գրուբ Պարսոնս» ֆիրմայի ստեղծած «Մինի-Իրմա» մակնիշի ինֆրակարմիր անալիզատորի համար, որպեսզի որոշվի կաթի սպիտակուցների, յուղայնության ու կաթնաշաքարի տոկոսային պարունակությունը: Այն կոմպակտ է, աշխատում է ավտոմատ ռեժիմով: Դրա առավելություններից է շահագործման պարզությունը. չի պահանջվում ոչ սարք, ոչ քիմիկատներ, ոչ էլ լրացուցիչ որևէ հարմարանք: Կաթն ուղղակի լցվում է փորձասարքը, իսկ տվյալներն արտահայտվում են ցուցատախտակին և միաժամանակ տպագրվում ժապավենի վրա:*